## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ






# ՀՆԳԱՄՅԱԿԸ՝ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայաստանի աշխատավորները, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, աշխատանքային և քաղաքական հսկայական խանդավառության պայմաններում անձնվիրաբար պայքարում են **ՍՄԿԿ XXIV** համագումարի որոշումների իրականացման, իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար:

**1973** թվականը սովետական ժողովրդի հերոսական գործերի տարեգրության մեջ մտավ որպես հարվածային աշխատանքի, մեծ ու բեղմնավոր գործունեության տարի՝ կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում:

Սովետական ժողովրդի խոր հավանությանն ու լիակատար պաշտպանությանն է արժանանում Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի, անձամբ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր **Լ. Ի. Բրեժնևի** նպատակասլաց և բեղմնավոր գործունեությունը՝ ուղղված մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունն ուժեղացնելու՝ ամբողջ աշխարհի խաղաղությունը ամրապնդելու, մեր երկրում կոմունիստական շինարարության բարենպաստ պայմաններ ստեղծելու նպատակին:

**Հայկական ՍՍՀ** աշխատավորները, ակտիվորեն շարունակելով մրցությունը **Ադրբեջանական ՍՍՀ**-ի և **Վրացական ՍՍՀ**-ի հետ, հնգամյակի վճռական տարին նշեցին պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ձեռք բերած նոր հաջողություններով:

Արդյունաբերական արտադրանքի իրացման ծավալի տարեկան պլանը կատարվել է **102,1** տոկոսով, արտադրության ծավալինը՝ **101,7** տոկոսով: Արդյունաբերական արտադրության ծավալի աճը, **1972** թվականի համեմատությամբ, կազմել է **5,7** տոկոս: Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվել է **101,3** տոկոսով: Յուրացվել է հարյուրավոր նոր արտադրատեսակների արտադրությունը: Հանրապետության շինարարական կազմակերպությունները կապալային աշխատանքների պլանը կատարել են **100,2** տոկոսով: Գործարկվել են **655** միլիոն ռուբլու հիմնական արտադրական ֆոնդեր, **985** հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, **28.760** աշակերտական տեղով դպրոցներ, **6830** տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ:

Նշանակալի հաջողությունների են հասել գյուղի աշխատավորները: Հան-

րապետության կոլտնտեսություններն ու սովխոզները գերակատարել են անասնապահական և հողագործական մթերքների արտադրության ու մթերումների առաջադրանքները: Պետությանը հացահատիկ վաճառելու պլանը կատարվել է 143,2 տոկոսով, բանջարեղենինը՝ 128,5 տոկոսով, պտուղներինը՝ 125,3 տոկոսով: 1973 թվականին, 1972 թվականի համեմատությամբ, վաճառվել է 5000 տոննայով ավելի միս, 5813 տոննայով ավելի կաթ, 81.950 հազար հատով ավելի ձու:

Պլանային առաջադրանքները կատարել են տրանսպորտի, կապի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները:

Հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքների հաջող կատարումը հանդիսացավ հանրապետության աշխատավորների անձնվեր աշխատանքի արգասիքը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու ուղղությամբ կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու մասսայական-քաղաքական մեծ գործունեության արգասիքը:

Մրցության ընթացքում հետագա տարածում ստացան առաջավոր կոլեկտիվների և արտադրության նորարարների արժեքավոր հայրենասիրական նախաձեռնություններ՝ «Հնգամյակը՝ չորս տարում», «Հնգօրյակը՝ չորս օրում», «Աշխատել առանց խոտանի», «Հնգամյա պլանը՝ 50 ամսում» և այլն:

Ձեռնարկություններում և կազմակերպություններում լայն կիրառություն գտան աշխատատեղերում աշխատանքի արտադրողականության բարձրացման կոմպլեքսային պլանների, արտադրության մասնագետների անձնական ստեղծագործական պլանների կազմումը, բրիգադային տնտհաշվարկը սոցիալիստական աշխատանքի հերոս Ն. Զլոբինի մեթոդով: 150 արդյունաբերական ձեռնարկություններում մշակվել և ընդունվել են 1974 թվականի լարված հանդիպական պլաններ:

Հանրապետության աշխատավորները հսկայական ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված դրույթներն ու հետևությունները: Ելնելով պլենումում առաջադրված խնդիրներից, Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատավորները մոբիլիզացնում են իրենց ջանքերը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պայքարում:

Հայկական ՍՍՀ-ին Ժողովուրդների բարեկամության շքանշանի հանձնումը աշխատանքային և քաղաքական ակտիվության նոր վերելք առաջացրեց հանրապետության բոլոր աշխատավորների մեջ:

Հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատավորները խորապես հասկանում են, որ 1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան հնգամյակը ամբողջությամբ վերցրած հաջողությամբ ավարտելու համար: Ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում մրցությունը՝ «Տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք, ավելի պակաս ծախսումներով» լոզունգով:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՆՊԱՏԱԿՆ Է ԼԻՆԵԼՈՒ ՋԳԱԼԻՈՐԵՆ ԱՐԱԳԱՑՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՏԵՄՊԵՐԸ, ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԱԳԱՑՆԵԼՈՒ, ԱՇԽԱՏԱՆՔԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ, ՄԵՔԵՆԱՆԵՐԸ, ՍԱՐՔԱՎՈՐՈՒՄՆԵՐՆ ՈՒ ԱՇԽԱՏԱԺԱՄԱՆԱԿԸ ԱՎԵԼԻ ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼՈՒ, ԹՈՂԱՐԿՎՈՂ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿՆ ՈՒ ՈՐԱԿԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՈԼՈՐՏՆԵՐՈՒՄ ՀՈՒՄՔԻ, ՆՅՈՒԹԵՐԻ, ՎԱՌԵԼԻՔԱՅԻՆ ԵՎ ԷՆԵՐԳԵՏԻԿ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՅՔԱՐԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ:

Ի պատասխան կուսակցության, սովետական ժողովրդին ուղղված



ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի, 1974 թվականին համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումների, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվները, գյուղատնտեսության աշխատավորները, գիտության ու կուլտուրայի, քաղաքային տնտեսության, սպասարկման ոլորտի աշխատողները, հանրապետության բոլոր աշխատավորները, զարգացնելով ավանդական մրցությունը Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների աշխատավորների հետ, մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, 1974 թվականի համար ստանձնում են հետևյալ սոցիալիստական պարտավորությունները:

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են արտադրանքի իրացման ծավալի և կարևորագույն առարկաների մեծամասնության թողարկման 1974 թվականի պետական պլանը կատարել դեկտեմբերի 28-ին: Պլանից ավելի թողարկել 60 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում ըստ հանդիպական պլանների՝ 27 միլիոն ռուբլու արտադրանք:

Աշխատանքի արտադրողականությունը պլանով նախատեսված 5,6 տոկոսի դիմաց բարձրացնել 6 տոկոսով:

Տարեկան պլանային առաջադրանքներից դուրս լրացուցիչ կերպով թողարկել 660 տոննա հանքային պարարտանյութ, 50 տոննա քիմիական թել, 240 տոննա պղնձարջասպ, 8000 տոննա ցեմենտ, 300 հազար կիլովոլտ-ամպեր կարողության ուժային տրանսֆորմատորներ, 200 շարժական էլեկտրակայան, մինչև 100 կիլովատ կարողության 3 հազար էլեկտրաշարժիչ, 600 հազար լուսավորման լամպ, 135 մետաղահատ հաստոց, 60 ավտոմոբիլ, 9 հազար ժամացույց, 500 հազար ռուբլու ավտոմատացման սարքեր և միջոցներ, 600 հազար ռուբլու շինանյութեր:

Մասսայական պահանջարկ վայելող ապրանքներ արտադրող ձեռնարկություններում տարեկան պլանից ավելի թողարկել 400 հազար ռուբլու կահույք, 530 հազար քառակուսի մետր գործվածք, 21 հազար քառակուսի մետր գորգ և գորգեղեն, 700 հազար հատ տրիկոտաժեղեն, 100 հազար զույգ կոշիկ, 100 հազար դեկալիտր խաղողի գինի, 1,5 միլիոն պայմանական տուփ պահածո, 500 կիլոգրամ խորդենու յուղ, 50 միլիոն հատ սիգարետ և գլանակ, 3000 տոննա մսամթերք:

Մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկություններում կուլտուրկենցաղային ապրանքների արտադրությունն ավելացնել 30 տոկոսով:

Շարունակել արդյունաբերական ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման աշխատանքները, յուրացնել 940 տոննա լիզինի, 100 հազար տոննա բենտոնիտային կավի, 500 տոննա ալյումինային մամլած պրոֆիլների արտադրության գործարկված կարողությունները: 1973 թվականի համեմատությամբ շամպայն գինիների արտադրությունն ավելացնել 3 անգամ, հանքային ջրինը՝ 60 տոկոսով, չափակշռված ձեթինը՝ 50 տոկոսով, գինունը՝ 30 տոկոսով:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրական կարողությունների ավելի լրիվ օգտագործման, աշխատանքային և նյութական ռեսուրսների կրճատման, արտադրանքի որակի բարելավման հիման վրա զգալիորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը: Իրագործել նոր տեխնիկայի ավելի քան 680 միջոցառում, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման ենթարկել 36 արտադրամաս և աշխատամաս, արմատավորել 57 ավտոմատ, հոսքային ու կոնվեյերային գիծ, 500 միավոր բարձր արտադրողական սարքավորում: Արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը իջեցնել 5 տոկոսով: Բարձրացնել սարքավորումների օգ-

տագործման արդյունավետությունը և մետաղամշակման հաստոցների հիմնական տեսակների աշխատանքի հերթափոխության գործակիցը ավելացնել 8—10 տոկոսով:

Պլանաչափ աշխատանք կատարել արտադրության հետ գիտության կապերի հետագա ամրապնդման, արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման, նոր տեխնիկայի ստեղծման ու յուրացման ժամկետների կրճատման ուղղությամբ: Հասնել այն բանին, որ արտադրանքի հիմնական տեսակները իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով համապատասխանեն գիտության ու տեխնիկայի արդի նվաճումներին: Պետական որականիշի ատեստավորման նախապատրաստել 90 նոր արտադրատեսակ:

Մշակել և յուրացնել արդյունաբերական արտադրանքի 250 նոր, կարևորագույն տեսակների արտադրությունը, այդ թվում՝ «Նաիրի 3—1», էլեկտրոնային հաշվիչ մեքենայի, մինչև 100 կիլովատ կարողության ընդհանուր միութենական շարքի գեներատորների, ալյումինային մամլած պրոֆիլների, 1000 ամպեր կարողության օդաղեղնային կտրման ապարատների, էլեկտրապոմպերի, նոր մոդելի ավտոբեռնիչի, Ե—30 էմուլգատորով ՆՏ նաիրիտի, լուսատեխնիկական և ռետինատեխնիկական տասնյակ արտադրատեսակների, հիդրավլիկ ապարատների, տարբեր տեսակի ռելեների, կապի ապարատների, ունիվերսալ-հավաքման հարմարանքների, գործիքների և այլ արտադրատեսակների արտադրությունը:

Ապահովել ժողովրդական սպառման ապրանքների որակի հետագա բարելավումը և տեսականու նորացումը: 1974 թվականին արտադրության մեջ արմատավորել գործվածքների, գորգերի, կոշիկի, կարվածքեղենի և տրիկոտաժեղենի, կաշվի-գալանտերեայի ավելի քան 1500 նոր տեսակ, մոդելներ և ստրուկտուրա:

Շարունակել արտադրության հետագա մասնագիտացման և համակենտրոնացման, արտադրության, աշխատանքի և կառավարման կազմակերպման կատարելագործումը:

Զգալիորեն նվազեցնել մետաղի, էներգառեսուրսների և վառելիքի նորմաները ու տեսակարար ծախսումները և դրա հաշվին տնտեսել առնվազն 1500 տոննա սև մետաղ, 200 տոննա գունավոր մետաղ, 110 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 20 հազար գկալ ջերմային էներգիա, 10 տոննա բնական բուրդ, 250 տոննա բամբակե թել, 60 տոննա կաշեհումք:

Ապահովել բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման ու նրանց տնտեսագիտական գիտելիքների բարձրացման, հարակից մասնագիտություններին տիրապետելու, աշխատանքի գիտական կազմակերպումն արմատավորելու աշխատանքների հետագա բարելավումը:

Հասնել աշխատանքի պայմանների, արդյունաբերական սանիտարիայի և անվտանգության տեխնիկայի զգալի բարելավման:

Նորարարների ջանքերն ուղղել արտադրության մշտական ռացիոնալացման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, արտադրության կազմակերպումը բարելավելու նպատակին:

## ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 28-ին: Շինանյութեր և շինարարական կոնստրուկցիաներ արտադրող սեփական ձեռնարկությունների ապրանքային արտադրանքի արտադրության և իրացման պլանը՝ դեկտեմբերի 26-ին: Հատկացված կապիտալ ներդրումները, նյութական և աշխատանքային ռեսուրսները գործարկվելիք ու կարևորագույն օբյեկտներում կենտրոնացնելու միջոցով ապահովել դրանց գործարկումը ժամանակին և ժամկետից շուտ:

Ժամկետից շուտ ավարտել բնակարանային-քաղաքացիական օբյեկտնե-



րի կառուցման պլանը և պլանից ավելի շահագործման հանձնել բնակելի տներ 15 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով:

Շինարարական արտադրության կազմակերպման սիստեմատիկ բարելավման, աշխատանքի և աշխատավարձի կազմակերպման նորագույն ձևերի արմատավորման, շինարարական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման միջոցով աշխատանքի արտադրողականությունը 1973 թվականի համեմատությամբ բարձրացնել 6,6 տոկոսով, հասնել շինարարության ինքնարժեքի նվազեցման և մյուս որակական ցուցանիշների զգալի բարելավման:

Շինարարության ինդուստրացման և մեքենայացման մակարդակը բարձրացնելու հաշվին 1973 թվականի համեմատությամբ ձեռքի աշխատանքի ծավալը կրճատել 3 տոկոսով:

Տարվա ընթացքում խնայել 10 հազար տոննա ցեմենտ, 2.500 տոննա մետաղ, 8 հազար խորանարդ մետր անտառանյութ, 7 հազար քառակուսի մետր ապակի:

Արտադրատեխնիկական ուսուցման մեջ ներգրավել 8 հազար աշխատողների, այդ թվում՝ պատրաստել 3400 նոր բանվոր, բարձրացնել 4 հազար բանվորի և 600 ինժեներատեխնիկական աշխատողի որակավորումը:

Բարելավել նախագծման որակը և ապահովել բնակելի շենքերի և քաղաքացիական ու արդյունաբերական այլ օբյեկտների կառուցման այնպիսի նախագծերի թողարկումը, որոնք լիովին համապատասխանեն տեխնիկայի, քաղաքաշինության և ճարտարապետության արդի պահանջներին:

**ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝** պլանից ավելի շահագործման հանձնել 8 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ: Ժամկետից 10 օր շուտ գործարկել թեթև, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության բոլոր պլանավորված օբյեկտները, այդ թվում՝ կաթի կոմբինատ և կարի ֆաբրիկա Երևանում, տրիկոտաժի ֆաբրիկա Սպիտակում և այլն: Մինչև տարեվերջ լրացուցիչ կերպով իրացնել 700 հազար ռուբլու շինարարական ինդուստրիայի արտադրանք և շինանյութ:

Կառուցվածքների ընդհանուր քանակից կուլտուր-կենցաղային օբյեկտների 80 տոկոսը և արդյունաբերական օբյեկտների 90 տոկոսը շահագործման հանձնել «լավ» և «գերազանց» գնահատականով:

Բրիգադային կապալով աշխատող բրիգադների թիվը հասցնել 70-ի և աշխատանքի վարձատրության առաջադիմական սիստեմների արմատավորման առաջադրանքը գերակատարել 2 տոկոսով:

Հասնել շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի և շինանյութերի արդյունաբերության ու շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների արտադրանքի ինքնարժեքի գերպլանային իջեցման:

**ԳՅՈՒՂԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝** գյուղատնտեսական, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության օբյեկտների շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 27-ին, սննդարդյունաբերության և սեփական շինարարության օբյեկտներինը՝ դեկտեմբերի 20-ին: Ժամկետից շուտ շահագործման հանձնել համակցված կերի արտադրամաս Սպիտակ քաղաքում, կահույքի ֆաբրիկա Հոկտեմբերյանի շրջանում:

Գերակատարել աշխատանքի արտադրողականության աճի և շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի իջեցման առաջադրանքները:

Տնտհաշվարկային բրիգադների թիվը հասցնել 50-ի, իսկ աշխատանքի վարձատրության ակորդային-պրեմիալ սիստեմի տեսակարար կշիռը՝ 42 տոկոսի: Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի փոխադրել № 1 և № 7 տրեստները:

**ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ԵՐԵՎԱՆԻ ՔԱՂԱՔԱՅԻՆ ՍՈՎԵՏԻ ԳՈՐԾԿՈՄԻ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԾՈՎ՝** ժամկետից շուտ, դեկտեմբերի 25-ին, կատարել շինմոնտաժային աշխա-

տանքների, ինչպես նաև շինարարական ինդուստրիայի իրերի արտադրության և իրացման տարեկան պլանը: Մինչև դեկտեմբերի 20-ը կատարել բնակարանային շինարարության տարեկան պլանը, մինչև օգոստոսի 20-ը կատարել դպրոցական շենքերը, մանկական, նախադպրոցական հիմնարկները շահագործման հանձնելու տարեկան պլանը, պլանից ավելի հանձնել 500 աշակերտական տեղով դպրոց և 280 տեղով մանկապարտեզ:

Մինչև Շինարարի օրը շահագործման հանձնել տրանսպորտային ճամփաբաժանը Զեյթունի շրջանի և Նորքի զանգվածի միջև: Արագացնել ստորերկրյա արագընթաց էլեկտրատրանսպորտի շինարարությունը: Ապահովել շինմոնտաժային աշխատանքների պլանի կատարումը 103 տոկոսով: Մինչև սեպտեմբերի 30-ը, ժամկետից մեկ տարի շուտ, շահագործման հանձնել Խաթունարխ—Երևան ջրատարի առաջին հերթը: Առավել արագ տեմպերով շարունակել քաղաքի ջրմուղի և կոյուղու գծերի ու ցանցերի վերակառուցումն ու ընդլայնումը, ժամկետից շուտ շահագործման հանձնել ջրի օրական կարգավորման ամբարը՝ 20 հազար խորանարդ մետր տարողությամբ:

ՄՈՆՏԱԺԱՅԻՆ ԵՎ ՀԱՏՈՒԿ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝ շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 23-ին, իսկ ենթակա ձեռնարկությունների արտադրանքի թողարկման և իրացման պլանը՝ դեկտեմբերի 27-ին: Թեթև, սննդի, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության բոլոր գործարկվելիք օբյեկտները շահագործման հանձնել դեկտեմբերի 20-ից ոչ ուշ, իսկ գյուղատնտեսության օբյեկտների գծով աշխատանքների պլանը ավարտել դեկտեմբերի 15-ին:

Բարձրացնել մոնտաժային աշխատանքների որակը և «լավ» ու «գերազանց» գնահատականով շահագործման հանձնել նոր կառուցվող բնակելի տների առնվազն 75 տոկոսը և կուլտուր-կենցաղային օբյեկտների 85 տոկոսը: Աշխատանքի արտադրողականությունը, 1973 թվականի համեմատությամբ, բարձրացնել 8 տոկոսով:

Արմատավորել ջերմային մեկուսացման ալյումինային ծածկույթի կիրառումը, ինչպես նաև էլեկտրակայանքների լրիվ հավաքովի ինդուստրիալ մոնտաժումը 48 օբյեկտներում՝ սարքավորումների կենտրոնացված պատրաստումն ու կոմպլեկտավորումը կազմակերպելով սեփական գործարաններում: Շահագործման հանձնել Մասիսի ոչ ստանդարտ սարքավորումների և խողովակային հանգույցների գործարանը:

«ԱՐՓԱ—ՍԵՎԱՆՇԻՆ» ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝ ապահովել 4100 գծամետր թունելի հորատանցումը և 8600 գծամետրի բետոնապատումը: Այդ թվում՝ № 7 թունելախորշի հորատումը ավարտել մինչև մարտի 8-ը և № 3 ու № 4 թունելախորշերի միացումը իրականացնել դեկտեմբեր ամսին:

Աշխատանքի արտադրողականությունը 1973 թվականի համեմատությամբ բարձրացնել 8 տոկոսով:

«ՀԱՅՀԻԴՐՈԷՆԵՐԳՈՇԻՆ» ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝ ժամկետից շուտ շահագործման հանձնել Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում 200 մեգավատ կարողությամբ 4-րդ էներգաբլոկը 1974 թվականի սեպտեմբերի 15-ին, Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարությունում՝ բնակելի տներ և հանրակացարաններ՝ 18,1 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով և Որոտանի կասկադի շինարարությունում՝ ժամկետից մեկ եռամսյակ շուտ ավարտել դրենաժային թունելի կառուցման աշխատանքները: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 8 տոկոսով և ապահովել շինարարական աշխատանքների ինքնարժեքի իջեցումը:

ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՇԱՀԱԳՈՐԾՄԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝ կառուցել 70 կիլոմետր և հիմնական նորոգման ենթարկել 300 կիլոմետր ավտոմոբիլային ճանապարհ, ընդ որում ժամկետից մեկ ամիս շուտ շահագործման հանձնել Սևան—Լճափ—Կամո նոր ճանապարհի 7,5 կիլոմետր երկարությամբ հատվածը, Լենինական—Իսահակյան ճանապարհի 3 կիլոմետրանոց հատվածը, Գորիս—Անգեղակոթ



—Բազարչայ ճանապարհի 10,6 կիլոմետրանոց հատվածը, Արտաշատ—Արարատ ճանապարհի 3,9 կիլոմետրանոց հատվածը, ինչպես նաև Երևան քաղաքի երկու կիլոմետրանոց մերձատար ճանապարհը: Հանրապետության ավտոճանապարհներին կառուցել և շահագործման հանձնել 40 տաղավար և հանգստի հրապարակ, որոնցից 5-ը՝ պլանից դուրս:

Ճանապարհների կառուցման, նորոգման և պահպանման բնագավառում աշխատողների աշխատանքի արտադրողականությունը առաջադրանքի դիմաց բարձրացնել մեկ տոկոսով և պլանից ավելի շինարարության ինքնարժեքը իջեցնել մեկ տոկոսով: Ենթակա ձեռնարկություններում թողարկել 150 հազար ռուբլու արտապլանային արտադրանք:

«ՀԱՅՏՐԱՆՍՇԻՆ» ՏՐԵՍՏԻ ԳԾՈՎ՝ շինմոնտաժային աշխատանքների տարեկան ծրագիրը և օժանդակ ձեռնարկությունների արտադրանքի իրացման պլանը կատարել դեկտեմբերի 25-ին:

Սահմանված պլանից ավելի շահագործման հանձնել 8 կիլոմետր ավտոմոբիլային ճանապարհ: Շինարարական արտադրության կազմակերպումը բարելավելու հաշվին շինարարության մեջ զբաղված աշխատողների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 7,2 տոկոսով: Ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկությունների արմատավորման միջոցով ստանալ տարեկան 300 հազար ռուբլու պայմանական տնտեսական էֆեկտ:

Կառուցել և շահագործման հանձնել բնակելի տներ 8,2 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են տարեկան պլանները կատարել նոյեմբերի 20-ին, հաշվի առնելով գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների մթերումների արտապլանային առաջադրանքը:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, 1973 թվականի համեմատությամբ, ավելացնել 13,4 տոկոսով:

Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտավարները և մեխանիզատորները կձգտեն ըստ ամենայնի բարձրացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը՝ նոր, բարձր բերքատու սորտեր արմատավորելու, հանքային պարարտանյութերն առավել լայնորեն կիրառելու, ցանքատարածությունների մշակման ագրոտեխնիկական աշխատանքները ժամանակին կատարելու, բերքը սեղմ ժամկետներում հավաքելու միջոցով և 1974 թվականին միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից կապահովեն 17 ցենտներ բերք, պետությանը կվաճառեն 60 հազար ցենտներով ավելի հացահատիկ, քան նախատեսված է պլանով և արտապլանային առաջադրանքով:

Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների այգեգործները պարտավորվում են բարելավել խաղողի այգիների մշակումը և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել խաղողի արտադրության հետագա ավելացման համար: Բազմամյա տնկարկների մշակության կուլտուրան բարձրացնելու, նոսրությունը վերացնելու, խաղողի հին այգիները վերակառուցելու, պարարտանյութերն ու մեքենայացման միջոցները լայնորեն կիրառելու հաշվին հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները կհասնեն պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի փոխհատուցման բարձրացմանը և կարտադրեն 194,1 հազար տոննա խաղող, 80,5 հազար տոննա պտուղ:

Կգցվեն 450 հեկտար խաղողի և 1500 հեկտար մրգատու այգիներ: Այգեգործության մեջ լայն կիրառում կգտնեն գիտության և առաջավոր փորձի նվաճումները, առանձնակի ուշադրություն կնվիրվի ձևավոր այգեգործության զարգացմանը:

1974 թվականին պետությանը կվաճառվի 262 հազար տոննա բանջարե-

դեն, կամ տարեկան պլանից 32 հազար տոննայով ավելի, 56,6 հազար տոննա կարտոֆիլ, 76,4 հազար տոննա բոստանային կուլտուրաներ:

Ծխախոտագործները կարտադրեն և պետությանը կվաճառեն ավելի քան 15 հազար տոննա բարձրորակ ծխախոտ:

Ծակնդեղագործները կարտադրեն 125,6 հազար տոննա և պետությանը կվաճառեն 117,8 հազար տոննա գործարանային շաքարի ճակնդեղ: Կարտադրվի և պետությանը կվաճառվի 39,3 հազար տոննա խորդենու կանաչ զանգված, որ 1,3 հազարով ավելի է պլանից:

Գյուղի աշխատավորները արդյունավետ միջոցներ կձեռնարկեն անասունների ցեղական կազմի հետագա բարելավման, անասնապահության կուլտուրայի բարձրացման ուղղությամբ, ընդլայնելով դաշտային կերարտադրությունը և բարձրացնելով կերերի կուլտուրաների բերքատվությունը, ինչպես նաև բարելավելով բնական հանդակների օգտագործումը:

Ընթացիկ տարում տնտեսությունների բոլոր կատեգորիաների գծով պետությանը կվաճառվի և կհանձնվի 64,1 հազար տոննա միս, 218 հազար տոննա կաթ, 155,9 միլիոն ձու, 4650 տոննա բուրդ: Հանրապետության անասնապահները պարտավորվում են յուրաքանչյուր կովից կթել 1700 կիլոգրամ կաթ, յուրաքանչյուր ոչխարից ստանալ 2,3 կիլոգրամ բուրդ, յուրաքանչյուր ածան հավից՝ 145 ձու:

Առավելագույն ուշադրություն կնվիրվի գյուղատնտեսական արտադրության մասնագիտացմանն ու հետագա համակենտրոնացմանը, միջտնտեսային նոր ձեռնարկությունների կազմակերպմանը, ֆերմաներում կերի արտադրամասերի կառուցմանը, անասնապահական ֆերմաների մեքենայացմանը և կուլտուր-տեխնիկական աշխատանքների որակին:

Կուտակվելու է 654 հազար տոննա խոտ, 540 հազար տոննա սիլոս, 229 հազար տոննա ծղոտ, 140 հազար տոննա սենաժ, 64 հազար տոննա կերի արմտիք և 12,3 հազար տոննա վիտամինային խոտալյուր: Հանրապետությունում համակցված կերերի արտադրությունը հասցնել 300 հազար տոննայի:

Գյուղատնտեսական շրջանառության մեջ կմտցվեն 11,5 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, այդ թվում՝ 500 հեկտար բազմամյա ոռոգելի մշակովի արոտավայրեր. կջրարբիացվեն 25 հազար հեկտար արոտավայրեր:

Հանրապետության մեխանիզատորները պարտավորվել են մինչև մարտի 1-ը կազմուպատրաստ վիճակի բերել կոլտնտեսությունների ու սովխոզների ամբողջ տեխնիկան, որ անհրաժեշտ է գարնան-դաշտային աշխատանքները հաջողությամբ անցկացնելու համար: Մասնագիտացման միջոցով նրանք կհասնեն տեխնիկայի նորոգման որակի զգալի բարձրացման և էժանացման: Հանրապետության գյուղատնտեսությունն ընդհանուր առմամբ կստանա 105 միլիոն ռուբլու նոր տեխնիկա, սարքավորումներ, մեքենաներ, հանքային պարարտանյութեր:

Անտառաբույծները պարտավորվել են անտառային կուլտուրաների 6 հազար հեկտար տնկարկումների պլանը կատարել մինչև մայիսի 1-ը և մինչև նոյեմբերի 20-ն աճեցնել 45 միլիոն տնկի, բույսերի հիվանդությունների և վնասատուների դեմ պայքար կազմակերպել 37 հազար հեկտար տարածության վրա:

## ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԵՎ ԿԱՊԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԵՐԿԱԹՈՒՂՈՒ ԵՐԵՎԱՆԻ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԸ ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 25-ին կկատարեն ժողովրդատնտեսական բեռների առաքման տարեկան պլանը, պլանից ավելի կբեռնեն 200 հազար տոննա բեռ:



Ցարժակազմի օգտագործումը բարելավելու միջոցով բեռնատար վագոնի շրջապտույտը նորմայի դիմաց արագացնել 0,5 ժամով և տարվա ընթացքում լրացուցիչ փոխադրումների համար ազատել առնվազն 2500 վագոն:

Մոբիլիզացնելով ներքին ռեզերվները, ձգտելով հասնել աշխատաժամանակի կորուստների վերացման, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 3 տոկոսով, պլանի դիմաց 0,5 տոկոսով իջեցնել փոխադրումների ինքնարժեքը:

Գնացքները վարելու առաջավոր փորձի և էլեկտրական արգելակման կիրառման միջոցով տարեկան խնայել առնվազն 200 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա:

Կոմպլեքսային մեքենայացման և արտադրական պրոցեսների ավտոմատացման հաշվին բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման մակարդակը հասցնել մինչև 85 տոկոսի:

Բարձրացնել ուղևորների սպասարկման կուլտուրան կայարաններում և գնացքներում:

ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ ժողովրդատնտեսական բեռների փոխադրման տարեկան պլանը կկատարեն ժամկետից շուտ՝ մինչև դեկտեմբերի 27-ը և պլանից դուրս կփոխադրեն 500 հազար տոննա ժողովրդատնտեսական բեռ:

Ցարժակազմի ռացիոնալ օգտագործման, պարապ վազքերի կրճատման և ռեզերվների օգտագործման շնորհիվ մեկ ավտոտոննայի արտադրողականությունը պլանից դուրս բարձրացնել 1 տոկոսով:

Տնտեսել 2 հազար տոննա շարժիչի վառելիք և 700 կոմպլեկտ ավտոդող:

Հասնել այն բանին, որ պլանից դուրս ստացվի 500 հազար ռուբլու շահույթ:

Մարդատար ավտոտրանսպորտի աշխատողները պարտավորվել են զգալիորեն բարձրացնել սպասարկման կուլտուրան և պլանից ավելի փոխադրել 1,5 միլիոն ուղևոր:

ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԱՎԻԱՑԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԸ պարտավորվել է հիմնական տեխնիկատնտեսական ցուցանիշների և կապիտալ շինարարության գծով տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ մինչև դեկտեմբերի 25-ը:

Պլանից դուրս թռչել 1 միլիոն ուղևորակիլոմետր, 1 միլիոն տեղամասային տոննա-կիլոմետր:

Պլանից դուրս ուղևորների փոխադրումները ավելացնել 10 հազար մարդով, փոստինը՝ 120 տոննայով, բեռներինը՝ 100 տոննայով:

Տալ 100 հազար ռուբլու արտապլանային շահույթ:

ԿԱՊԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԸ կբարելավեն աշխատանքի որակը և կբարձրացնեն կապի բոլոր տեսակի ծառայություններով բնակչությանը և ժողովրդական տնտեսությանը սպասարկելու կուլտուրան:

Արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման միջոցների արմատավորման, առաջավոր փորձի տարածման, աշխատանքի ավելի լավ կազմակերպման, աշխատողների որակավորման բարձրացման, հարակից պրոֆեսիաների և աշխատատեղերի յուրացման հաշվին աշխատանքի արտադրողականության տարեկան առաջադրանքը գերակատարել 10 տոկոսով:

1973 թվականի համեմատությամբ ապահովել տարիֆային եկամուտների աճ 8,4, արտադրանքի ծավալի աճ՝ 7,3, շահույթների աճ՝ 12,8 տոկոսով: Աշխատանքի արտադրողականության աճի հաշվին ապահովել արտադրանքի ծավալի աճ 65 տոկոսով:

Քաղաքային հեռախոսացանցերի աբոնենտների աճի պլանը գերակատարել 1000, գյուղական հեռախոսացանցերինը՝ 500 համարով:

Պլանից դուրս շահագործման հանձնել 3 հազար համար կարողությամբ ավտոմատ հեռախոսակայաններ, որից 1000 համարը՝ գյուղական վայրերում:
Կապի ծառայությունների սպասարկումը բարելավելու և դրանք բնակչությանը մոտեցնելու համար կբացվի կապի 26 բաժանմունք, որից 13-ը գյուղական վայրերում:

## ԿՈՄՈՒՆԱԼ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 25-ին կատարել կապալային շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը, որոնք իրականացվում են աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների շինարարական ու նորոգման կազմակերպությունների կողմից: Զգալիորեն բարելավել բնակարանային ֆոնդի, ջրմուղների, կոյուղիների, ջեռուցման սիստեմների, ինչպես նաև էլեկտրամատակարարման և գազամատակարարման ցանցերի ու հարմարանքների շահագործման վիճակը:
Է՛լ ավելի ընդլայնել ջրամատակարարման մագիստրալային և բաշխիչ գծերն ու ցանցերը, ապահովել այդ կառուցվածքների շինարարության պլանների կատարումը ժամկետից շուտ:

Կոմունալ տնտեսության մինիստրության ձեռնարկությունները կգերակատարեն բնակչությանը կոմունալ ծառայությունների բոլոր ձևերով ապահովելու տարեկան պլանները: Կնվազեցնեն բնակչության կոմունալ սպասարկման ինքնարժեքը և կապահովեն 150 հազար ռուբլու արտապլանային կուտակումների ստացումը: Կբարելավեն հանրապետության քաղաքների և շրջանային կենտրոնների սանիտարական վիճակը:

Կբարձրացնեն պետական բնակարանային ֆոնդի տեխնիկական շահագործման մակարդակը: Կապահովեն բնակելի տների ընթացիկ և հիմնական նորոգման տարեկան պլանի կատարումը մինչև 1974 թվականի դեկտեմբերի 15-ը:

Շիննորոգման աշխատանքների տարեկան պլանը կկատարեն մինչև դեկտեմբերի 20-ը: Պլանից դուրս Արտաշատում, Կամոյում և Հոկտեմբերյանում շահագործման կհանձնեն հյուրանոցներ՝ 490 տեղով: Շիննորոգման աշխատանքներում 3 տոկոսով կգերակատարեն աշխատանքի արտադրողականության պլանը:

Ենթագերատեսչական ձեռնարկություններում արդյունաբերական արտադրանքի թողարկման և իրացման պլանը կգերակատարեն 2 տոկոսով, լրացուցիչ կտան 90 հազար ռուբլու արտադրանք: Մարդատար էլեկտրատրանսպորտի քաղաքային ձեռնարկությունների կոլեկտիվները կբարելավեն բնակչության տրանսպորտային սպասարկումը: 1974 թվականին տրոլեյբուսի գծերի երկարությունը կավելանա 18 կիլոմետրով: Շարժական պարկը կմեծանա 30 միավորով:

ԳԱԶԻՖԻԿԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝ բնական գազի իրացման սահմանված տարեկան պլանները կատարել դեկտեմբերի 28-ին, հեղուկ գազինը՝ դեկտեմբերի 25-ին:
Հանրապետության գազիֆիկացման շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարել դեկտեմբերի 25-ին և պլանից դուրս գլխավոր կապալառուի գծով կատարել 250 հազար ռուբլու աշխատանք: 1974 թվականին ժամկետից շուտ ավարտել գազամուղների, գազաբաշխման կետերի շինարարության, կաթսայատների գազավորման և հեղուկ գազով բնակարանների գազավորման հնգամյա պլանը: Ավարտել Երևան—Գառնի և Վարդենիս—Ջերմուկ գազամուղների շինարարությունը:
Բարձրացնել գազի տնտեսության շահագործման կազմակերպման կուլտուրան ու մակարդակը, նվազեցնել վթարայնությունը ցանցերում ու կայանքներում: Ապահովել 13 միլիոն խորանարդ մետր գազի խնայողություն: Նախագծա-հետախուզական աշխատանքների պլանը կատարել դեկտեմբերի



20-ին, իսկ ենթակա տնտեսությունների կապիտալ նորոգման և գործարկման-կարգաբերման աշխատանքներինը՝ նոյեմբերի 15-ին:

## ԱՌԵՎՏՐԻ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՆՆԴԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Ապահովել պետական առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության, ներառյալ հասարակական սննդի, տարեկան պլանի կատարումը դեկտեմբերի 30-ին և սեփական արտադրության արտադրանքի իրացման պլանը՝ դեկտեմբերի 29-ին, բնակչությանը պլանից ավելի վաճառել 3,5 միլիոն ռուբլու ապրանքներ:
Շահագործման հանձնել 16,2 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ մանրածախ առևտրի ձեռնարկություններ, 2750 տեղով հասարակական սննդի ձեռնարկություններ, 7500 քառակուսի մետր տարածությամբ ընդհանուր ապրանքային պահեստներ, 8130 տոննա ընդհանուր տարողությամբ պտուղ-բանջարեղենի պահեստներ և սառնարաններ:
Լայնորեն արմատավորել առևտրի առաջադիմական ձևերը, բարձրացնել սպասարկման կուլտուրայի մակարդակը: Ինքնասպասարկման խանութների ապրանքաշրջանառության տեսակարար կշիռը հասցնել ընդհանուր ապրանքաշրջանառության 35 տոկոսին: Ապահովել մանր փաթեթավորմամբ պարենային ապրանքների թողարկման առաջադրանքների ժամկետից շուտ և որակյալ կատարումը, տեղակայել 3700 միավոր սառնարանային և առևտրատեխնիկական սարքավորումներ:
Առևտրական ցանցն ամրապնդել մասսայական պրոֆեսիաների որակյալ կադրերով, առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների համար պատրաստել 630 վաճառող ու խոհարար, բարձրացնել մասսայական պրոֆեսիաների 2100 աշխատողների որակավորումը:
ՍՊԱՌՈՂԱԿԱՆ ԿՈՈՊԵՐԱՑԻԱՅԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ ապրանքաշրջանառության տարեկան պլանը կկատարեն ժամկետից շուտ, դեկտեմբերի 29-ին և կապահովեն երեք միլիոն ռուբլու ապրանքների արտապլանային վաճառք բնակչությանը, այդ թվում հասարակական սննդի գծով՝ 220 հազար ռուբլու, կիսաֆաբրիկատների արտադրության պլանը կկատարեն 105 տոկոսով: Ապրանքների գերնորմատիվ մնացուկները լրացուցիչ կիջեցնեն 500 հազար ռուբլով:

Գյուղատնտեսական մթերքների և հումքի մթերումների ու գնումների պլանը կկատարեն նոյեմբերի 29-ին և կկատարեն չորս միլիոն ռուբլու արտապլանային գնումներ, այդ թվում՝ 10 հազար տոննա բանջարեղեն, հինգ հազար տոննա բոստանային կուլտուրա, 500 տոննա պտուղ:
Սննդարդյունաբերության ձեռնարկությունների համախառն արտադրանքի իրացման պլանը կկատարեն 102 տոկոսով և կթողարկեն 622 հազար ռուբլու արտապլանային ապրանք: Մինչև դեկտեմբերի 25-ը կկատարեն արտադրական պլանները տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով: Շահույթների պլանը կգերակատարեն 300 հազար ռուբլով: Միջոցներ կձեռնարկեն, որպեսզի 1974 թվականին սպառողական կոոպերացիայի սիստեմում չլինեն վնասով աշխատող ձեռնարկություններ: Պլանից ավելի ինքնասպասարկման կփոխադրեն հինգ խանութ:

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Բնակչության կենցաղային սպասարկումների իրացման ծավալի տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 30-ին, սպասարկումների ծավալը մեծացնելով 18,2 տոկոսով, այդ թվում գյուղական վայրերում՝ 24 տոկոսով:
Տարվա ընթացքում բնակչության կենցաղային սպասարկման օբյեկտների ցանցը ընդլայնել 47 միավորով, որտեղ կազմակերպել 175 արհեստանոց և արտադրամաս:

Ցահագործման հանձնել 650 միավոր մեքենաներ ու տեխնոլոգիական սարքավորումներ, արտադրության մեջ արմատավորել սպասարկման 14 նոր ձև, կարվածքեղենի, տրիկոտաժեղենի և կոշկեղենի 400 նոր մոդել: Պատրաստել մասնագիտական պրոֆեսիաների 1950 բանվոր, բարձրացնել 1500 բանվորի որակավորումը:

**ԱՎՏՈՏԵԽՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝** ապահովել տարեկան պլանի կատարումը դեկտեմբերի 25-ին, լրացուցիչ կատարել ավտոմոբիլների 54 հազար ռուբլու տեխնիկական սպասարկման աշխատանքներ, բնակչությանը ցույց տալ 105 հազար ռուբլու կենցաղային սպասարկումներ: Աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի բարձրացնել երկու տոկոսով: Սպասարկումների ինքնարժեքն իջեցնել 1,5 տոկոսով:

## ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

**ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ** վերահսկողության ու տնտեսական վերլուծության կատարելագործման ու բարելավման, լրացուցիչ ռեզերվների հայտնաբերման հաշվին պլանից ավելի հանրապետության պետական բյուջեն կմուծեն 20 միլիոն ռուբլի, այդ թվում 10,5 միլիոն ռուբլի՝ մինիստրության կենտրոնական ապարատի ուժերով:

**ՍՍՀՄ ՊԵՏԲԱՆԿԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐԱՍԵՆՅԱԿԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ** կապահովեն կասսային պլանների կատարումն ու գերակատարումը մուտքի գծով և կհասնեն չավագույն էմիսիոն արդյունքի: Կբարելավեն վարկային հարաբերությունները տնտեսությունների հետ, կուժեղացնեն վերահսկողությունը ռուբլով, կբարձրացնեն վարկի դերը հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման ու ինտենսիվացման գործում, ակտիվորեն կնըպաստեն աշխատանքի արտադրողականության աճին, կուտակումների ավելացմանը և տնտեսական կազմակերպությունների աշխատանքի շահութաբերության բարձրացմանը:

Կընդլայնեն ձեռնարկություններին վարկերի տրամադրումը բնակչության շրջանում լայն պահանջարկ վայելող ապրանքների արտադրությունն ավելացնելու, տեսականին ընդլայնելու և որակը բարելավելու արդյունավետ միջոցառումների անցկացման նպատակով:

Կամրապնդեն ֆինանսական ու վճարային կարգապահությունը, ապահովելով անվճարույթների իջեցում 1973 թվականի դիմաց առնվազն 25—30 տոկոսով:

**ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԳՆԵՐԻ ԿՈՄԻՏԵԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ** լրացուցիչ միջոցառումներ կիրականացնեն արդյունաբերական նշանակություն ունեցող մի շարք արտադրատեսակների և ժողովրդական սպառման ապրանքների գործող մեծածախ գների կատարելագործման նպատակով: Որոշ գյուղատնտեսական մթերքների գործող գնման գների կիրառման տնտեսական արդյունքների ուսումնասիրության հիման վրա միջոցառումներ կմշակեն ապահովելու գների ազդեցությունը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը և արտադրանքի որակի բարձրացումը խթանելու վրա: Լրացուցիչ միջոցառումներ կձեռնարկեն լայն սպառման ապրանքների պետական մանրածախ գների կայունության հետագա ապահովման ուղղությամբ, մասսայական պահանջարկ վայելող ապրանքների արտադրության ծավալի սիստեմատիկ մեծացման, տեսականու նորացման և որակի բարձրացման գործում ձեռնարկություններին խթանելու վրա գների ունեցած տնտեսական ներգործության ուղղությամբ: Աշխատանք կտանեն հասարակական սննդի մթերքների գնագոյացումը կատարելագործելու, ժողովրդական տնտեսությանը և բնակչությանը ցույց տրվող սպասարկումների գների ու տարիֆների կիրառման, պետական կարգապահության հետագա ամրապընդման ուղղությամբ:

**ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱՏԱԿԱՐԱՐՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ՝** հանրապետության



ձեռնարկություններն ու կազմակերպությունները ապահովել նյութատեխնիկական անհրաժեշտ նյութերով՝ 1974 թվականի պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար: Գերնորմատիվ և ավելորդ պաշարների մոբիլիզացման հաշվին տնտեսական շրջանառության մեջ մտցնել ավելի քան 32 միլիոն ռուբլի գումարի արտադրա-տեխնիկական նյութեր: Առաջին եռամսյակում շահագործման հանձնել Սևանի մթերակայանը: Ապահովել աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացում 1 տոկոսով: Բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման մակարդակը հասցնել 73 տոկոսի: Երկրորդային հումքի կուտակման և վերամշակման տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 20-ին, պլանից ավելի մատակարարել 500 տոննա երկրորդային հումք:

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Ապահովել առողջապահության նյութատեխնիկական բազայի հետագա ընդլայնումն ու ամրապնդումը, բնակչությանը ցույց տրվող մասնագիտացված բժշկական օգնության զարգացումը: Ցահագործման հանձնել 360 նոր հիվանդանոցային մահճակալ, 1200 այցելությամբ մասնագիտացված պոլիկլինիկա և սանիտարա-առողջապահական կայան Երևան քաղաքում:

Միջոցառումներ իրականացնել է՛լ ավելի ամրապնդելու գյուղական տեղամասային հիվանդանոցները, մեծացնելու քաղաքային, շրջանային ու միջշրջանային հիվանդանոցներում գործող բաժանմունքների կարողությունները, բժշկական հիմնարկությունները կոմպլեկտավորելու որակյալ բժշկական կադրերով:

Ապահովել բնակչության մանկական կոնտինգենտի սպասարկման հետագա բարելավման, երեխաների հիվանդությունների ու մահացության իջեցման միջոցառումներ:

Վարակիչ հիվանդությունները կանխելու նպատակով անհրաժեշտ միջոցառումներ իրականացնել սանիտարա-համաճարակաբանական ծառայության հետագա կատարելագործման ուղղությամբ:

**ԴԵՂԱՏՆԱՅԻՆ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅԲՈՒԺՏԵԽՆԻԿԱՅԻ ԳԾՈՎ** ապահովել ապրանքաշրջանառության և արտադրանքի իրացման տարեկան պլանի կատարումը դեկտեմբերի 25-ին:

Ապահովել սոցիալական ապահովության մարմինների աշխատանքի հետագա բարելավումը կենսաթոշակառուների սպասարկման ուղղությամբ:

Սոցիալական ապահովության արդյունաբերական ձեռնարկությունների գծով արտադրանքի թողարկման ու իրացման պլանը կատարել դեկտեմբերի 20-ին, պլանից ավելի թողարկել 0,5 միլիոն ռուբլու արտադրանք:

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հայաստանի գիտնականների գործունեությունը նպատակամղված կլինի ֆունդամենտալ գիտությունների հետագա զարգացմանը, գիտական հետազոտությունների կենտրոնացմանը գիտատեխնիկական առաջադիմության առավել կարևոր պրոբլեմների վրա, գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացմանը, արտադրության հետ գիտության կապի ամրապնդմանը, ժողովրդական տնտեսության պրակտիկայի մեջ գիտական հետազոտությունների արդյունքների արմատավորմանը:

Հանրապետության գիտությունների ակադեմիայի գիտնականները պարտավորվել են թեմատիկ պլանից դուրս մշակել Ղափանի պղնձահանքային կոմբինատի կրի արտադրամասի լրիվ ավտոմատացման սիստեմը: Խարկովի «Պրոմստրոյնիիպրոյեկտ» ինստիտուտի հետ համատեղ 1974 թվականին ավարտել բետոնի սողքի լայնակի դեֆորմացիայի գործակցի որոշման հետազոտությունը: Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի հետ հա-

մատեղ հետազոտություններ անցկացնել՝ մշակելու շրջակա միջավայրի համար վնասակար գազերի չեզոքացման եղանակներ, որոնք մթնոլորտ են թափանցում արտադրության մնացուկների հետ: Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի հետ մշակել վինիլացետատի արտադրամասի գազային արտազատուկների կոմպլեքսային ուտիլիզացման ուղիներ, նպատակ ունենալով խնայել նյութական ռեսուրսները և լուծել կենսոլորտը աղտոտումից պահպանելու պրոբլեմը:

Մշակել օրգանական ինգիբիտորների նոր տեպերի սինթեզ՝ մետաղե խողովակաշարերը բարձր ջերմաստիճանների դեպքում թթվային կոռոզիայից պաշտպանելու համար:

Հանրապետության տոհմաբուծական տնտեսություններին գիտամեթոդական օգնություն ցույց տալ թռչունների մթերատվությունը բարձրացնելու գործում, իսկ Աբովյանի բիոքիմիական պրեպարատների գործարանին՝ էնտոբակտերինի արտադրության համար ցանքանյութի պատրաստման գործում: Կալինինոյի և Ստեփանավանի շրջաններում փորձարկել սիլոսային նոր կուլտուրա՝ հանրապետությունում հետագայում այն լայնորեն արմատավորելու համար:

**ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ** ընդհանուր միջնակարգ կրթության անցնելու գործն ավարտելու նպատակով լայն հասարակայնության, ընտանիքի, աշխատավորների դեպուտատների տեղական սովետների օգնությամբ հասնել այն բանին, որ ութերորդ դասարաններն ավարտածները հարյուր տոկոսով ընդգրկվեն ցերեկային հանրակրթական դպրոցների իններորդ դասարաններում, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, երեկոյան (հերթափոխային) դպրոցներում և միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում:

Հասնել այն բանին, որ ցերեկային հանրակրթական դպրոցներում վերացվեն սովորողների մաղումները, խիստ կրճատվի երկտարեցիների թիվը, բարձրացվի սովորողների ուսուցման ու դաստիարակման որակը:

Արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հետ համատեղ երեկոյան (հերթափոխային) և հեռակա դպրոցների ցանցի մեջ լրացուցիչ ընդգրկել 5 հազար պատանիներ և աղջիկներ՝ աշխատող երիտասարդության թվից:

Ընդարձակել երկարօրյա դպրոցների ու խմբերի ցանցը և նրանց կոնտինգենտը ավելացնել լրացուցիչ 4 հազար աշակերտով:

Աշակերտների, մանկավարժական կազմի ուժերով և շեֆ ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների օգնությամբ դպրոցներում լրացուցիչ ստեղծել ֆիզիկայի 120 կաբինետ, քիմիայի 190 կաբինետ, կենսաբանության 250 կաբինետ, 115 ուսումնական արհեստանոց, 150 ուսումնափորձնական հողամաս, 120 մարզահրապարակ:

Առևտրական կազմակերպությունների հետ համատեղ դպրոցներում արմատապես բարելավել սովորողների հասարակական սննդի կազմակերպումը, լրացուցիչ կազմակերպել բուֆետներ ու ճաշարաններ՝ 6 հազար տեղով:

Քաղաքային, գյուղական և միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ 23.560 սովորողներ ընդունելու տարեկան պլանը կատարել մինչև 1974 թվականի սեպտեմբերի 1-ը:

Ժողովրդական տնտեսություն ուղարկել 18.670 որակյալ երիտասարդ բանվոր, այդ թվում 1400 բանվոր միջնակարգ կրթությամբ:

Ապահովել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շրջանավարտների տեսական ու պրոֆեսիոնալ գիտելիքների մակարդակի հետագա բարձրացումը:

1973 թվականի համեմատությամբ, բուհերի ուսանողների և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների սովորողների առաջադիմությունը բարձրացնել 4—5 տոկոսով:

Բարձրացնել բուհերում կատարվող գիտահետազոտական աշխատանք-



ների տնտեսական արդյունավետությունը: Մեծացնել տնտեսական պայմանագրերով կատարվող գիտահետազոտական աշխատանքների ծավալը:

Է՛լ ավելի բարելավել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների համար կադրերի պատրաստման մակարդակը: Միջոցներ ձեռնարկել ապահովելու ասպիրանտների ավարտումն ու դիսերտացիաների պաշտպանությունը սահմանված ժամկետներում:

Բուհերի և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների համար շահագործման հանձնել 10.500 քառակուսի մետր ուսումնալաբորատոր շենքեր և 8750 քառակուսի մետր հանրակացարաններ:

* * *

Սովետական Հայաստանի աշխատավորների սոցիալիստական պարտավորությունների հաջող իրականացումը կախված կլինի յուրաքանչյուր բանվորի և կոլտնտեսականի, արտադրության մասնագետների ու հրամանատարների աշխատանքային առավելագույն ավանդից: Կպահանջվի է՛լ ավելի բարձրացնել աշխատանքային և պետական կարգապահությունը, բարելավել կազմակերպչական գործունեության մակարդակը, բարձրացնել աշխատանքային կոլեկտիվների դերը, զարգացնել մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը:

Այդ նպատակներին ենթարկված կլինի մասսայական-քաղաքական աշխատանքի միջոցների ամբողջ գործունեությունը: Մամուլում, հեռուստատեսությամբ ու ռադիոյով, կինոյի միջոցով լայնորեն կլուսաբանվեն համամիութենական սոցիալիստական մրցության ընթացքը, աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության, աշխատանքային ու պետական կարգապահության բարձրացման պրոբլեմները, կառավարման ու տնտեսավարման բարելավման, առաջավոր փորձի փոխանակման հարցերը, ավելի խորն ու ցայտունորեն կպրոպագանդվեն գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմները:

Կուլտուրայի հիմնարկների աշխատողները ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների ոգով կստեղծեն գաղափարա-գեղարվեստական բարձր մակարդակ ունեցող երկեր, իրենց ջանքերը ի սպաս կդնեն սովետական մարդկանց հերոսական աշխատանքի արտացոլմանը:

Արվեստի գործիչները է՛լ ավելի կընդլայնեն ու կամրապնդեն համագործակցությունը արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտի, սովխոզների, կոլտնտեսությունների կոլեկտիվների և զորամասերի հետ:

* * *

Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինժեներա-տեխնիկական աշխատողները, գիտնականները, ծառայողները, բոլոր աշխատավորները Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին հավաստիացնում են, որ իրենց բոլոր ուժերը, գիտելիքները, կարողությունն ու եռանդը կգործադրեն 1974 թվականի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար, աշխատանքային նոր նվաճումներով կնշանավորեն հնգամյակի որոշիչ տարին, իրենց ավանդը կներդնեն մեր երկրում կոմունիստական շինարարության ծրագրի կատարման գործում:

**ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԸՆԴՈՒՆՎԵԼ ԵՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ, ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ, ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ, ՔԱՂԱՔԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ, ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐՈՒՄ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՃՅՈՒՂԵՐԻ, ՔԱՂԱՔՆԵՐԻ, ՇՐՋԱՆՆԵՐԻ ԱԿՏԻՎՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ, ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ 1974 Թ. ՓԵՏՐՎԱՐԻ 12-Ի ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ:**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԱՎԱՆԳԱՐԴԸ

## Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ «ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱԿՏՈՒԱԼ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ» ԳՐՔԻ ԼՈՒՅՍԸՆԾԱՅՄԱՆ ԱՌԻԹՈՎ

Վերջերս «Հայաստան» հրատարակչությունը հայերեն լույս ընծայեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի **Կուսակցական շինարարության ակտուալ պրոբլեմների մասին** գիրքը: Այս ժողովածուում, ամբողջությամբ կամ հապավումներով, զետեղված են ընկեր Բրեժնևի 1964—1972 թթ. ճառերը, հոդվածները, ելույթները, որոնցում լուսաբանվում են կուսակցական շինարարության հրատապ պրոբլեմները: Ուսումնասիրելով ժողովածուի նյութերը, ընթերցողները կրկին ու կրկին համոզվում են, որ ՍՄԿԿ լենինյան քաղաքականությունը, նրա գլխավոր կուրսը անսասան են, գիտականորեն հիմնավորված ու հետևողական, որ մեր կուսակցությունը վիթխարի ավանդ է ներդրել ու ներդնում է մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման ու կիրառման գործում: Գրքում բացահայտված են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու ձևավորման ասպարեզում ՍՄԿԿ համակողմանի գործունեությունը:

ԻՐ ԳՐՔՈՒՄ Լ. Ի. Բրեժնևը, հենվելով պատմական զարգացման փաստերի վրա, համոզիչ կերպով բացահայտում է երկրի հասարակական-քաղաքական կյանքում կուսակցության ղեկավար դերի վերաբերյալ լենինյան հիմնարար դրույթի կարևորությունն ու կենսունակությունը: Գրքում լուսաբանվում է այն հսկայածավալ գործունեությունը, որ լենինյան կուսակցությունը՝ բանվոր դասակարգի, սովետների երկրի բոլոր աշխատավորների գաղափարական ոգեշնչողը, քաղաքական առաջնորդն ու կազմակերպիչը, յոթանասուն տարի շարունակ հաստատակամորեն ծավալում է աշխարհի հեղափոխական վերակառուցման ասպարեզում: «Կուսակցության՝ որպես հեղափոխական մասսաների առաջնորդի, որպես նոր հասարակարգի ղեկավար ուժի մասին լենինյան գաղափարները,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները, որոնք ստուգված և հաստատված են ՍՄԿԿ փորձով, ներկայումս ոչ միայն ՍՄԿԿ-ի, այլև եղբայրական կոմունիստական կուսակցությունների սեփականությունն են: Փաստերը վկայում են, որ կոմունիստները հաղթում են այնտեղ, որտեղ կուսակցությունը հետևողականորեն կատարում է բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ավանգարդի իր դերը, որտեղ սրբորեն են կիրառվում կուսակցական կյանքի լենինյան նորմերը, որտեղ կուսակցությունը պահպանում և անդուլ կերպով ամրապնդում է իր քաղաքական, կազմակերպական ու գաղափարական միասնությունը: Եվ, ընդհակառակը, կուսակցության դերի ամեն մի նսեմացում, կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներից կատարվող նահանջ հանգեցնում են լուրջ անհաջողությունների և կարող են սպառնալիք ստեղծել ժողովուրդների սոցիալիստական նվաճումների համար» (**Կուսակցական շինարարության ակտուալ պրոբլեմների մասին**, էջ 379—380):

Կուսակցության ղեկավար դերին հատկացվող նման սևեռուն ուշադրությունը պատահական չէ, որովհետև դա, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, հեղափոխական շարժման, նոր հասարակարգի կառուցման արմատական պրոբ-



լեմներից մեկն է, մարքսիստ-լենինյանների և ռևիզիոնիզմի տարբեր ձևերի ներկայացուցիչների միջև մղվող պայքարի հանգուցակետը: ՍՄԿԿ սկզբունքային դիրքորոշումը, կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի անաղարտության համար նրա անհաշտ պայքարը միջազգային նշանակություն ունեցան կոմունիստների և միլիոնավոր աշխատավորների ճիշտ կողմնորոշման համար:

Լենինյան կուսակցության վեհ նպատակն է՝ հավատարմորեն ծառայել ժողովրդին, ամրապնդել մեր մեծ հայրենիքի հզորությունը, պայքարել նրա փառքի ու հեղինակության բարձրացման, մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարների հետևողական ու անշեղ կենսագործման համար: Ահա թե ինչու, ասում է Լ. Ի. Բրեժնևը, սովետական ժողովուրդը լիովին վստահում է կոմունիստական կուսակցությանը, նրան համարում այն միակ ուժը, որն ունակ է միավորելու միլիոնավոր մարդկանց ստեղծագործական եռանդը, կազմակերպելու և ոգեշնչելու նրանց, ապահովելու սովետական հասարակության անընդհատ առաջընթացը: «Կոմունիստական կուսակցությունից բացի, մեզ մոտ չկա և չի կարող լինել մի այլ քաղաքական կազմակերպություն, որը հաշվի առներ մեզանում գոյություն ունեցող դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների, բոլոր սերունդների շահերն ու առանձնահատկությունները, իր քաղաքականության մեջ զուգորդեր այդ շահերը» (էջ 220): Հիրավի, իր բազմամյա գործունեության ընթացքում լենինյան կուսակցությունը պատվով է կատարել ղեկավարի, ավանգարդի դժվարին պարտականությունները: Նա իրեն միշտ պատասխանատու է համարել էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման, մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման, միջազգային գործերում ՍՍՀՄ արտաքին-քաղաքական ճիշտ կուրսի համար: Մի խոսքով, չի եղել և չկա որևէ կարևոր պրոբլեմ, ասում է Լ. Ի. Բրեժնևը, որի լուծման գործում կուսակցությունը ներդրած չլինի իր միտքը, իր կամքը, իր անսպառ եռանդը:

Նոր հասարակարգի կառուցման պրակտիկան լիովին ապացուցում է, որ որքան բարդ ու հոյակապ են կոմունիստական շինարարության ընթացքում լուծվող խնդիրները, այնքան ավելի մեծ է գիտակից, կազմակերպող ավանգարդի դերը հասարակության կյանքում: Դա օրինաչափ պրոցես է, որը ինչպես շեշտում է Լ. Ի. Բրեժնևը, բխում է մեր սոցիալիստական հասարակության էությունից, սերտորեն կապված է նրա զարգացման հետ և արտացոլում է նրա օբյեկտիվ պահանջմունքները:

«Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում կատարվում են հեղափոխական ամենաբարդ հասարակական վերափոխումներ: Եվ դրանք կատարվում են ո՛չ թե տարերայնորեն, այլ գիտակցաբար, հասարակության զարգացման օրենքները ճանաչող մարդկանց կամքով: Միայն ժողովրդի քաղաքական ավանգարդը՝ կոմունիստական կուսակցությունն է ունակ հետևողականորեն ու նպատակասլաց կերպով միավորել միլիոնավոր մարդկանց ջանքերը նոր հասարակարգի ստեղծման խնդիրները լուծելու համար, այդ վիթխարի աշխատանքին տալ գիտականորեն հիմնավորված ու պլանաչափ բնույթ» (էջ 242—243):

Բուրժուական գաղափարախոսները, սոցիալիզմի ամեն տեսակի թշնամիները ճգնում են ապացուցել, թե սոցիալիստական երկրներում կուսակցությունների ղեկավար դերի աճը սահմանափակում է մասսայական մյուս կազմակերպությունների իրավունքները: Գրքում հետևողականորեն մերկացվում են նման հերյուրանքները, որոնց նպատակն է գցել կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հեղինակությունը, նսեմացնել նրանց ղեկավար դերը նոր հասարակարգի կառուցման գործում: Կոմունիստական շինարարության պայմաններում, ասում է Լ. Ի. Բրեժնևը, բարձրանում է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունների պատասխանատվությունը: ՍՄԿԿ-ն միավորում և ուղղություն է տալիս պետական և հասարակական բոլոր կազմա-

կերպությունների գործունեությանը: «Կուսակցության ղեկավար դերի աճը և սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, աշխատավորների մասսայական բոլոր կազմակերպությունների դերի բարձրացումը փոխադարձաբեն կապված և փոխպայմանավորված պրոցես է, որն արտացոլում է մեր սոցիալիստական հասարակարգի խորապես դեմոկրատական բնույթը» (էջ 251—252): Այդ պրոցեսը, միաժամանակ, սերտորեն կապված է այն, հիրավի մեծ պատասխանատվության հետ, որ մեր կուսակցությունը կրում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների նկատմամբ: «Եվ երբ մենք ասում ենք, որ կուսակցության դերի մեծացումը կոմունիզմ կառուցող հասարակարգի օրինաչափությունն է, ապա խոսքը վերաբերում է ոչ այլ ինչի, քան կուսակցության, կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության բարձրացմանը այն ամենի համար, ինչ տեղի է ունենում երկրում, նրա հաջողությունների, նրա ապագայի համար» (էջ 275—276):

Մեր կուսակցությունը ժողովրդի ամենակենսական շահերից բխող իր տիտանական գործունեության շնորհիվ վայելում է սովետական բազմազգ աշխատավորների անհուն հարգանքն ու վստահությունը: Ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, տասնամյակներ շարունակ սովետական մարդիկ համոզվել են, որ չկա ժողովրդի շահերի ավելի աննկուն և հմուտ պաշտպան, քան կոմունիստական կուսակցությունը: Այդ քաղաքական ճշմարտությունը սեփական փորձով սովորում են սոցիալիստական բոլոր երկրների ժողովուրդները: Կոմունիստները թանկ են գնահատում այդ վստահությունը և ըստ ամենայնի ամրապնդում կուսակցության ու բոլոր աշխատավորների միասնությունը:

«Կոմունիստական կուսակցության ղեկավար դերը,— շեշտում է Լ. Ի. Բրեժնևը,— սովետական ժողովրդի պատմական նվաճումների հուսալի երաշխիքն է, կոմունիզմի կառուցման գործում մեր ներկա և ապագա հաղթանակների գրավականը» (էջ 243):

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ Կենտկոմի գլխավոր քարտուղարի հրապարակված ճառերը, հոդվածներն ու ելույթները համակողմանի պատկերացում են տալիս ներքին և արտաքին քաղաքականության ասպարեզում ՍՄԿԿ քաղաքական գծի մշակման և գիտական հիմնավորման մասին:

Գրքում բազմակողմանի լուսաբանվում է կոմունիստական կուսակցության ներքին քաղաքականությունը, որի գլխավոր խնդիրն է մեր հասարակության արտադրաուժերի զարգացումը, դրա հիման վրա սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացումը, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալումը: «Մեր կուսակցությունն ուզում է, որ սովետական մարդիկ տարեցտարի ավելի լավ, ավելի ապահովված, ավելի կուլտուրական ապրեն, որ աղբյուրի պես հորդի ժողովրդական նախաձեռնությունը» (էջ 5):

Ժողովածուում հատկապես զգալի տեղ է հատկացված կուսակցության տնտեսական քաղաքականությանը: Հատկանշական է, որ տնտեսական քաղաքականությունը, նույնիսկ այն դեպքում, երբ խոսքը ժողովրդական տընտեսության կոնկրետ ճյուղերի մասին է, միշտ կապվում է սոցիալ-քաղաքական, կուսակցական շինարարության, միջազգային հարաբերությունների ասպարեզում կուսակցության վարած կուրսի հետ: Զարգացած սոցիալիզմի պրոբլեմներին նման համակողմանի մոտեցումը մեր կուսակցության բնորոշ հատկանիշներից է: Հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, քաղաքական ճիշտ գիծը մշակելիս կուսակցությունը միշտ ելնում է ժողովրդի արմատական շահերից, հենվում մարքս-լենինյան տեսության գիտական վերլուծության վրա:

Սովետական բոլոր մարդիկ մեծ շահագրգռությամբ ու հաստատակամորեն պայքարում են, որպեսզի հաջողությամբ լուծվեն կուսակցության առաջադրած տնտեսական կենսական խնդիրները: Իրականացնելով ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները, մեր բազմազգ երկրի աշխատավորները հսկայական հաջողությունների են հասել տնտեսական ու կուլտու-



րական շինարարության բոլոր բնագավառներում: Տարեցտարի աճում է ՍՍՀՄ տնտեսական հզորությունը, բարձրանում սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական մակարդակը: Կուսակցության կոչով ողջ երկրում ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունն առավել խորությամբ է բացահայտում թաքնված ռեզերվներն ու հնարավորությունները, ավելի է բորբոքում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության ստեղծագործական եռանդը՝ հնգամյակի վիթխարի կանխագծումների իրականացման համար մղվող պայքարում:

ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությանը նվիրված բոլոր նյութերում առանձնապես շեշտվում է այն միտքը, որ «Մեր պլանային ու տնտեսական ամբողջ գործունեությունը պետք է խարսխվի օբյեկտիվ գնահատականների, ճշգրիտ ինֆորմացիայի ամուր հիմքի, սոցիալիզմի տնտեսական օրենքների և գիտության նվաճումների ճիշտ օգտագործման վրա: Կյանքն արդեն բազմիցս ցույց է տվել, որ այնտեղ, որտեղ գործի նկատմամբ գիտական մոտեցումը ենթափոխվում է սուբյեկտիվիզմով, կամայական որոշումներով, այնտեղ անխուսափելի են ձախողումները և սխալները» (էջ 9):

Կուսակցության տնտեսական քաղաքականության գիտականորեն հիմնավորված մշակման վառ օրինակներ են գրքում զետեղված՝ Լ. Ի. Բրեժնևի զեկուցումներն ու ելույթները՝ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1968 թ.), սեպտեմբերյան (1965 թ.), մայիսյան (1966 թ.), հոկտեմբերյան (1968 թ.), հուլիսյան (1970 թ.) պլենումներում, ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարներում: Վերոհիշյալ նյութերում, ինչպես նաև Լ. Ի. Բրեժնևի մյուս ելույթներում ու զեկուցումներում, գիտականորեն մշակվում և բազմակողմանի քննարկվում են ՍՍՀՄ արդյունաբերության կառավարումը բարելավելու, գյուղատնտեսության զարգացման, արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի կենսամակարդակի առավել բարձրացման հրատապ հարցերը:

Սոցիալիստական էկոնոմիկայի առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար, ինչպես ասում է Լ. Ի. Բրեժնևը, «...շեշտը դնել տնտեսավարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը: Խոսքը վերաբերում է այն բանին, որ տնտեսական աճը ավելի ու ավելի մեծ չափով տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացման ու գիտատեխնիկական առաջընթացի արագացման, գործող արտադրակարողությունների լրիվ օգտագործման միջոցով, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը բարձրացնելու միջոցով» (էջ 587—588):

Հիմնավորելով կուսակցության քաղաքական կուրսը էկոնոմիկայի բնագավառում՝ Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ սոցիալական առաջադիմության հիմքում ընկած է հանրային արտադրության զարգացումը: Բայց դա բնավ չի նշանակում, թե կարելի է երկրորդ պլան մղել սոցիալական ու քաղաքական մյուս կարևոր պրոբլեմների լուծումը: Կոմունիստական շինարարության բոլոր կողմերը սերտորեն կապված են միմյանց: Քաջ հայտնի է, որ սոցիալ-քաղաքական խնդիրների լուծումը կախված է տնտեսական նվաճումներից: Տնտեսական զարգացումն իր հերթին մեծապես կախված է սոցիալ-քաղաքական խնդիրների հաջող լուծումից: Սոցիալական քաղաքականության բնագավառում, ասված է գրքում, կուսակցությունը վարում է սովետական հասարակության միասնության հետագա ամրապնդման, սովետական հասարակությունը կազմող դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների հետագա մերձեցման, սոցիալիստական դեմոկրատիայի հետևողական զարգացման, հասարակական ու պետական գործերի լուծմանն առավել լայն մասսաների ներգրավման գիծ. բոլոր աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման, գիտության ու կուլտուրայի առավել զարգացման, սովետական մարդու հոգևոր ծաղկման, երկրում բարոյա-

քաղաքական այն իրադրության ամրապնդման գիծ, որտեղ մարդիկ թեթև են շնչում, հանգույքով աշխատում, հանգիստ ապրում (տե՛ս էջ 535—536)։

Ամենաարդար հասարակարգը՝ կոմունիզմը, կառուցվում է միլիոնավոր աշխատավորների հերոսական ջանքերով։ Ուստի, որքան բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը, այնքան ավելի ակնբախ է դրսևորվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիստական շինարարության վեհ ծրագրերի իրականացման գործում, այնքան ավելի հաջող են իրականացվում կուսակցության հոյակապ կանխագծումները։ «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի» (էջ 490—491)։

Ահա թե ինչու կուսակցությունը գաղափարա-դաստիարակչական իր ողջ աշխատանքի միջուկը համարում է աշխատավորության հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, նրանց տոգորումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով։

Կուսակցության գաղափարախոսական գործունեության մեջ առաջնակարգ տեղ է հատկացվում սովետական մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակմանը։ Մեր երկրում, հիրավի, լայն թափ է ստացել աշխատանքային մրցությունը։ Կուսակցությունը, ասված է գրքում, իր խնդիրն է համարում պաշտպանել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մասսայական շարժումը, համակողմանիորեն խրախուսել սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը։

«Սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով։ Չի կարող կոմունիստական բարոյականության հաղթանակ լինել, առանց վճռական պայքար մղելու նրա այնպիսի հակապատկերների դեմ, ինչպիսիք են շահամոլությունը, կաշառակերությունը, պորտաբուծությունը, զրպարտությունը, անանուն նամակները, հարբեցողությունը և այլն։ Պայքարն այն բանի դեմ, ինչը մենք անվանում ենք անցյալի մնացուկներ մարդկանց գիտակցության և արարքների մեջ, այնպիսի գործ է, որը պահանջում է կուսակցության, մեր հասարակության բոլոր առաջավոր, գիտակից ուժերի մշտական ուշադրությունը» (էջ 493—494)։

Կուսակցությունը մեծ գործ է արել մարդկանց վարքագծից և գիտակցությունից անցյալի մնացուկների հաղթահարման, նոր մարդու ձևավորման ասպարեզում։ Սակայն, ինչպես նշվում է գրքում, պետք է ուժեղացնել մեր ամբողջ գաղափարախոսական աշխատանքը և ամենից առաջ ավելի ակտիվ, նպատակասլաց դարձնել կոմունիստական իդեալների, մեր շինարարության կոնկրետ խնդիրների պրոպագանդումը։ Պետք է կարողանալ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության հիմքը, ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակությանը։

Գաղափարախոսական աշխատանքի ուժեղացումը թելադրվում է նաև արդի միջազգային դրությամբ։ Բուրժուական գաղափարախոսները ներկայումս հասկանում են, որ սոցիալիստական երկրներին հնարավոր չէ ծնկի բերել ռազմական, տնտեսական միջոցներով։ Ուստի, կապիտալիզմի պաշտպանները, իրենց նպատակներին հասնելու համար, ճգնում են սեփական ուժերը կենտրոնացնել գաղափարախոսական ճակատում։ Մենք ապրում ենք, ասում է Լ. Ի. Բրեժնևը, գաղափարախոսական անդադրում կռվի պայմաններում, որը մեր երկրի դեմ, սոցիալիզմի աշխարհի դեմ մղում է իմպերիալիստական պրոպագանդան՝ օգտագործելով ամենանրբին եղանակներ ու տեխնիկական հզոր միջոցներ։ Մտքերի վրա ներգործելու բուրժուազիայի ձեռքին գտնվող գործիքները՝ մամուլը, կինոն, ռադիոն, մոբիլիզացված են, որպեսզի



մոլորության մեջ գցեն մարդկանց, զրպարտեն սոցիալիզմը։ Ռեակցիոն, հակակոմունիստական ուժերը գաղափարախոսական դիվերսիաների միջոցով փորձում են ազդել գաղափարապես անկայուն տարրերի վրա և դրանով իսկ թուլացնել սովետական ժողովրդի միասնությունը։ Միջազգային ասպարեզում երկու սիստեմների գաղափարախոսական այս բախումը դասակարգային սուր և անհաշտ պայքարի դրսևորումն է։ Մեր պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական ճակատի աշխատողների պարտքն է, նշված է գրքում, ժամանակին վճռական և արդյունավետ հակահարված հասցնել գաղափարախոսական այդ հարձակումներին, հարյուր միլիոնավոր մարդկանց համոզիչ, մատչելի և ցայտուն կերպով պարզաբանել ճշմարտությունը սոցիալիստական հասարակարգի, սովետական ապրելակերպի, մեր երկրում կոմունիզմի կառուցման մասին (տե՛ս էջ 504)։

ՍՄԿԿ ներքին քաղաքականությունն անխզելիորեն կապված է նրա արտաքին քաղաքականության հետ։ Եթե առաջինն ապահովում է էկոնոմիկայի կայուն զարգացումը, սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական խնդիրների հաջող լուծումը, միջազգային ասպարեզում բարձրացնում ՍՍՀՄ տնտեսական, քաղաքական և բարոյական հեղինակությունը, ապա արտաքին քաղաքականությունը բարենպաստ պայմաններ է ստեղծում կոմունիզմի կառուցման, սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի ուժեղացման համար։ Արտաքին քաղաքականության բնագավառում «կուսակցության գիծը խաղաղության և միջազգային անվտանգության, սոցիալիզմի երկրների եղբայրության և ամբողջ աշխարհի ազատագրական հակաիմպերիալիստական ուժերի հետ դաշինքի ամրապնդման գիծն է» (էջ 536)։ Կյանքը ցույց է տալիս, որ կուսակցությունը և սովետական կառավարությունը հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը։

ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականությունը բխում է սովետական ժողովրդի կենսական շահերից, լիովին համապատասխանում մեր հասարակարգի զարգացման օբյեկտիվ պահանջներին։ «Կուսակցության մարքս-լենինյան ճիշտ քաղաքականությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեր երկրի բոլոր աշխատավորների կողմից այդ քաղաքականության խրախուսումն ու պաշտպանությունը՝ ահա անցյալում սոցիալիզմի բոլոր նվաճումների գլխավոր աղբյուրը, ահա՛ մեր գալիք բոլոր հաղթանակների անհրաժեշտ պայմանը» (էջ 180)։

ՍՄԿԿ-ն, իր գլխավոր կուրսը մշակելիս, միշտ հենվում է մարքս-լենինյան ուսմունքի վրա, ժամանակակից պայմաններից ելնելով, տեսականորեն հարստացնում այն։ Խոսելով այդ մասին՝ Լ. Ի. Բրեժնևն ասում է. «Դիմելով Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգությանը, կուսակցությունը իր կարևորագույն խնդիրն է համարում լենինյան մտքերի, լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա գտնել կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմների լուծումը» (էջ 522)։

Արդի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարում է կոմունիստական շինարարության հոյակապ պլանները, տեսական աշխատանքի մասշտաբներն ու խնդիրներն ավելի են աճում։ «Ոչ մի հասարակարգ,—ասված է գրքում,—այնքան կարիք չի զգացել գիտական տեսության, որքան սոցիալիստական հասարակարգը։ Ուստի և տեսությունն այսուհետև էլ պետք է հարթի պրակտիկայի ճանապարհը, ապահովի խիստ գիտական մոտեցում սովետական ժողովրդի տնտեսական ու կուլտուրական կյանքի ղեկավարմանը։ Լայն հիմքերի վրա դրված տեսական աշխատանքը կոչված է վառ փարոսի պես լուսավորելու մեր կուսակցության ուղին։ Մարքս-լենինյան տեսության ստեղծագործական հետագա զարգացումը կուսակցությունը դիտում է որպես կարևորագույն խնդիր, որպես կոմունիզմի կառուցման հաջողության անհրաժեշտ պայման» (էջ 120—121)։ Մարքս-լենինյան տեսության մեջ մեծ ավանդ են կուսակցության XXIII և XXIV համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների նյութերը, մեծ Հոկտեմբերի

50-ամյակին, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված նյութերը և ՍՄԿԿ տեսական գործունեության հետ առնչվող մյուս փաստաթղթերը: Դրանցում ամփոփվել և համակողմանի բացահայտվել են ՍՍՀՄ կեսդարյա պատմության արդյունքները, հիմնավորվել կոմունիստական շինարարության արդի խնդիրները: ՍՄԿԿ-ն իր ավանդն է մուծում սոցիալիզմի սիստեմի զարգացման, համաշխարհային հեղափոխական շարժման սկզբունքային հարցերի մշակման, ժամանակակից կապիտալիզմի նոր երևույթների, աշխարհի ոչ սոցիալիստական մասի վրա սոցիալիզմի ազդեցության նոր ուղիների ու ձևերի վերլուծության ասպարեզում:

«Տեսական աշխատանքը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեր ընդհանուր ինտերնացիոնալ, հեղափոխական պարտքի կարևոր մասն է: Համաշխարհային ասպարեզում կապիտալիզմի և սոցիալիզմի ուժերի հակամարտությունը, ինչպես նաև հեղափոխական ուսմունքը ամլացնելու, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկան խեղաթյուրելու զանազան տեսակի ռևիզիոնիստների փորձերը մեզանից պահանջում են այսուհետև էլ ավելի մեծ ուշադրություն նվիրել տեսության պրոբլեմներին, նրա ստեղծագործական զարգացմանը: Հին ֆորմուլաների կրկնությունը, այնտեղ, որտեղ դրանք արդեն իրենց սպառել են, նոր պրոբլեմներին նորովի մոտենալ չկարողանալը կամ չցանկանալը՝ այս ամենը վնաս է բերում գործին, լրացուցիչ հնարավորություններ ստեղծում մարքսիզմ-լենինիզմի անվան տակ զանազան ռևիզիոնիստական խեղաթյուրումներ տարածելու համար: Մեր տեսության ու պրակտիկայի վրա կատարվող բուրժուական և ռևիզիոնիստական հարձակումների քննադատության համոզչությունը հսկայական չափով ուժեղանում է այն ժամանակ, երբ դա հենվում է հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության ակտիվ և ստեղծագործական զարգացման վրա»:

Մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացումը, այդ վեհ ուսմունքի անմահ գաղափարներով կոմունիստներին, սովետական բոլոր մարդկանց զինումը, մարքս-լենինյան տեսության անաղարտության պաշտպանումը՝ մեր կուսակցության սրբազան պարտքն է, նրա անշեղ սկզբունքը:

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցության մշակած քաղաքական կուրսը, մեր հասարակարգի տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման հոյակապ ծրագիրն իրականացնելու համար անհրաժեշտ է՝ ուժեղացնել կուսակցական-կազմակերպական, քաղաքական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքը, շարունակ կատարելագործել ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման ձևերն ու մեթոդները: Կուսակցության քաղաքական ճիշտ գիծը, նշում է Լ. Ի. Բրեժնևը, միշտ պետք է զուգորդել կազմակերպչական հմուտ աշխատանքի հետ: «Միայն այդ պայմանով կուսակցությունը կարող է հաջողությամբ իրականացնել ղեկավար և ուղղություն տվող ուժի իր դերը երկրի զարգացման գործում» (էջ 221):

Կուսակցական շինարարության բնագավառում ՍՄԿԿ գիծը «դա հասարակության կուսակցական ղեկավարման մեթոդները կատարելագործելու, կուսակցական կյանքի լենինյան նորմերը խստիվ կիրառելու, մեր կուսակցության շարքերն ավելի համախմբելու գիծն է. դա բազմազգ դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի հետ կուսակցության կապերն ըստ ամենայնի ամրապնդելու գիծն է» (էջ 536):

Գրքում մեծ ուշադրություն է նվիրվում կուսակցական կազմակերպությունների և նրանց ղեկավար օրգանների աշխատանքի մեթոդները կատարելագործելու կոնկրետ ուղիների քննարկմանը: Կուսակցության կազմակերպական գործունեության մեջ կարևոր են կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման հարցերը: Հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարման, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, անխզելիորեն կապված է կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության բարելավման հետ:



Ներկայումս մեր երկրում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում գործում են հմուտ աշխատողներ: Սակայն «Կյանքը անընդհատ բարձրացնում է կադրերին ներկայացվող պահանջները: Մեզ հարկավոր են մարդիկ, որոնք քաղաքական բարձր գիտակցականությունը զուգորդում են պրոֆեսիոնալ լավ պատրաստության հետ, որոնք ընդունակ են գործիմացությամբ լուծել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հարցերը, որոնք տիրապետում են կառավարման ժամանակակից մեթոդներին» (էջ 518):

Ղեկավարվելով կուսակցության որոշումներով, կուսակցական օրգանները կատարելագործում են կադրերի հետ տարվող աշխատանքը: Այս ասպարեզում ստեղծվել է այնպիսի պրակտիկա, նշում է Լ. Ի. Բրեժնևը, երբ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են սկզբունքային պահանջկոտության հետ: Այս ամենը գործարար, ընկերական մթնոլորտ է ստեղծում, աշխատողներին հնարավորություն է ընձեռում առավել լրիվ դրսևորել իրենց ունակությունները:

Կադրերի աճի ու դաստիարակության, մեր ամբողջ աշխատանքի ճիշտ կազմակերպման անհրաժեշտ պայմանը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, ղեկավարության կոլեկտիվությունը հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության հետ զուգորդելն է: Աշխատողների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու գործում կարևոր դեր է խաղում կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման ստուգումը: Կուսակցությունը պահանջում է, որ կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական յուրաքանչյուր աշխատող լինի իր կոչման բարձրության վրա, արդարացնի կոլեկտիվի վստահությունը, ունենա բարոյական բարձր հատկանիշներ, ուշադիր ու հոգատար լինի մարդկանց նկատմամբ, հետևողականորեն, պատասխանատվության խոր գիտակցությամբ իրականացնի կուսակցության և կառավարության որոշումները: «Կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է: Ընդ որում, մենք նկատի ունենք այն կարգապահությունը, որը խարսխված է ո՛չ թե վախի, ո՛չ թե կոպիտ վարչարարության մեթոդների վրա, որոնք մարդկանց զրկում են վստահությունից, նախաձեռնությունից, ծնում են ինքնապահովագրում և անազնվություն: Խոսքը վերաբերում է այն կարգապահությանը, որը խարսխված է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա: Իսկ ինչ վերաբերում է այն աշխատողներին, որոնք խախտում են կարգապահությունը, քննադատությունից հետևություններ չեն անում, ճիշտ վարքագիծ չեն դրսևորում, ապա նրանց նկատմամբ պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռք առնվեն: Մեզանում ղեկավար պոստերը ոչ ոքի ընդմիշտ չեն տրվում: Սոցիալիստական կարգապահությունը այն կարգապահությունն է, որը միանական է հասարակության բոլոր անդամների համար, պարտադիր է բոլորի և ամեն մեկի համար» (էջ 520):

ՍՈՎԵՏԱԿԱՆ երկրի զարգացման, նրա ներկայի ու ապագայի համար կոմունիստական կուսակցության ծավալած գործունեությունը ավելի է մեծացնում նրա պատասխանատվությունը կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում: «Իսկ դա նշանակում է, որ կուսակցությունը պետք է ինքը զարգանա, բարձրացնի իր շարքերի մարտունակությունը, ամրապնդի դրանց գաղափարական ու կազմակերպական միասնությունը» (էջ 323):

Ժողովածուում զետեղված նյութերը վկայում են, թե ինչպիսի մեծ նշանակություն է տալիս կուսակցությունը իր ներքին կյանքի կազմակերպմանն ու կատարելագործմանը, կուսակցական շարքերի մարտունակության ամրապնդմանը: Այս նպատակով ՍՄԿԿ-ն նախ հոգում է իր շարքերի որակական կազմի բարելավման մասին: Մեր կուսակցության շարքերում հերոսաբար ու անհուն նվիրվածությամբ, գաղափարական աներեր համոզվածությամբ գործում են միլիոնավոր կոմունիստներ, որոնք կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում ընթանում են առջևից, իրենց օրինակի ուժով նորանոր սխրանքների մղելով բազմամիլիոն աշխատավորներին: Կուսակցությունն իր

անդամներին միշտ ներկայացնում է բարձր պահանջներ, որովհետև, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, «Կոմունիստի կոչումը շատ բանի է պարտավորեցնում: Կոմունիստները ոչ մի արտոնություն չունեն, բացի մի բանից՝ ավելի, քան մյուսները ընդհանուր գործին նվիրաբերել լավագույնը, ավելի, քան մյուսները պայքարել ու աշխատել հանուն նրա հաղթանակի: Կոմունիստները ոչ մի առանձնահատուկ իրավունք չունեն, բացի մի բանից՝ միշտ լինել առջևում, միշտ լինել այնտեղ, ուր ավելի դժվար է» (էջ 222): Կոմունիստի վեհ կոչումը բարձրացնելու առաջնահերթ ու կարևոր պայմանը պահանջկոտությունն է ՍՄԿԿ շարքերն ընդունվողների նկատմամբ: Դա նպաստում է կուսակցական կազմակերպությունների հեղինակության ու մարտունակության հետագա բարձրացմանը:

Անշուշտ, կուսակցությունը չի կարող նորմալ գործել, եթե իր շարքերը չհամալրի սովետական ժողովրդի ծոցից ելած գիտակից, գաղափարական, տոկուն ու գործիմաց մարդկանցով: Ուստի, կարևոր է նաև կուսակցության քանակական կազմի հարցը, չմոռանալով սակայն, որ կուսակցությունն առաջնայինը միշտ համարել է ու համարում է իր անդամների որակական կազմը: ՍՄԿԿ XXIV համագումարում այդ մասին Լ. Ի. Բրեժնևն ասել է. «...անհրաժեշտ է մեկ անգամ ևս ընդգծել, որ կուսակցության կարևորագույն հոգսը այսուհետև ևս պետք է լինի իր շարքերի որակական կազմի բարելավումը: Նոր անդամների ընդունելությամբ չափից ավելի տարվելը, այդ գործում անպահանջկոտությունը, որ, ցավոք սրտի, դեռ հանդիպում է առանձին կազմակերպություններում, հակասում է կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներին: Մեր խնդիրն է կարգավորիչ ներգործություն ունենալ կուսակցական շարքերի աճի վրա, դրանք, անհատական ընտրության հիման վրա, համալրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի առավել արժանավոր ներկայացուցիչներով, հասնել այն բանին, որ ՍՄԿԿ-ի կազմը կուսակցությանը թույլ տա լավագույն ձևով լուծել իր առջև ծառացած խնդիրները» (էջ 507):

ՍՄԿԿ ծրագրում, ինչպես նաև սույն գրքում հիմնավորվում է լենինյան այն միտքը, որ կուսակցության սոցիալական կազմում առաջատար տեղը պետք է այսուհետև ևս պատկանի բանվոր դասակարգին: Մենք, ասում է Լ. Ի. Բրեժնևը, կշարունակենք այդ գիծը, որովհետև այն լիովին համապատասխանում է մեր կուսակցության բնույթին, մեր սովետական հասարակության մեջ բանվոր դասակարգի տեղին ու դերին (տե՛ս էջ 506): Այս առումով հատկանշական է, որ 1972 թվականին ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 57,3 տոկոսը կազմել են բանվորները:

Ուշագրավ է, որ ՍՄԿԿ անդամների գրեթե երեք քառորդը զբաղված է նյութական արտադրության ոլորտում: Իսկ մնացածների մեծ մասը՝ գիտության, լուսավորության, առողջապահության, կենցաղային սպասարկման բնագավառներում: Կոմունիստներն ակտիվորեն ու նվիրվածությամբ գործում են ժողովրդական տնտեսության պատասխանատու և դժվարին տեղամասերում, իրենց անձնուրաց աշխատանքով օրինակ ծառայելով աշխատավորական հոծ զանգվածների համար: Կոմունիստները, նշվում է գրքում, պետք է շարունակ բարձրացնեն իրենց ավանգարդային դերը, լինեն քաղաքական մարտիկներ, լիովին գիտակցեն իրենց պատասխանատվությունը կուսակցության ու ժողովրդի հանդեպ: Եթե դու կոմունիստ ես, ասում է Լ. Ի. Բրեժնևը, քո պարտքն է չընկրկել դժվարությունների առջև, հավանություն չտալ հետամնաց տրամադրություններին, այլ լինել կուսակցության գիտակից և ակտիվ մարտիկը: Մեր կուսակցությունն ուժեղ է կոմունիստների գաղափարայնությամբ, ակտիվությամբ, անձնվիրությամբ: Կուսակցության բարոյական հեղինակությունը նույնքան բարձր կլինի, որքան բարձր գաղափարական ու բարոյական հատկանիշներ ունենա յուրաքանչյուր կոմունիստ (տե՛ս էջ 512):

Ժողովածուի նյութերը լուսաբանում են դեմոկրատական ցենտրալիզմի, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման լենինյան սկզբունքի հետևողական իրականացման հարցերը: Կուսակցության ուժը, նրա գործունեու-



թյունը մեծապես որոշվում է նրանով, ասված է գրքում, թե որքան հետևողականորեն և ճշտորեն է կենսագործվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որը յուրաքանչյուր կոմունիստի համար լայն պայմաններ է ստեղծում գործնականորեն մասնակցելու կուսակցության քաղաքականության, նրա որոշումների մշակմանն ու իրականացմանը: Ուստի, ասում է Լ. Ի. Բրեժնևը, «Մենք այսուհետև էլ կկատարելագործենք ներկուսակցական դեմոկրատիան, կամրապնդենք կոլեկտիվ ղեկավարման սկզբունքները, կզարգացնենք կուսակցության անդամների նախաձեռնությունը, կհասնենք այն բանին, որպեսզի բոլոր կոմունիստները ակտիվորեն մասնակցեն կուսակցության գծի քննարկմանը, մշակմանն ու իրագործմանը, կամրապնդենք կուսակցական շարքերի կարգապահությունը: Մենք ունենք այդ աշխատանքի հուսալի հիմքը՝ դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը, կուսակցական կյանքի լենինյան նորմերը: Այդ նորմերի պահպանումը մեզ համար անխախտ օրենք է» (էջ 221):

Գրքում հիմնավորվում է քննադատության և ինքնաքննադատության ծավալման կարևորությունը, շեշտվում այն գլխավոր հանգամանքը, որ կոմունիստների քննադատական դիտողությունները և առաջարկությունները պետք է ամենայն ուշադրությամբ քննարկվեն կուսակցական ղեկավար օրգաններում: «...Նա, ով թերագնահատում է քննադատությունը, անտեսում այն, վաղօրոք իրեն դատապարտում է ձախողման: Սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացումը կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության, նրա կողմից կուսակցության հանդեպ, ժողովրդի հանդեպ իր պարտքի ճիշտ ըմբռնման նշան է» (էջ 510):

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, միաժամանակ ենթադրում է ըստ ամենայնի ամրապնդել կարգապահությունը կուսակցության ներսում: Այս երկու կողմերը անխզելիորեն կապված են: Լիակատար դեմոկրատիա, կարծիքների ազատության ամեն տեսակի հարցեր քննարկելիս ու երկաթյա կարգապահություն այն բանից հետո, երբ մեծամասնության կամքով որոշումն ընդունված է. ահա՛ կուսակցության անհողդողդ օրենքը: «Մարքս-լենինյան կուսակցության համար հավասարապես վնասակար են ինչպես անարխիստական անկարգապահությունը, որը ներկայացվում է դեմոկրատիայի փոխարեն, այնպես էլ բյուրոկրատական կենտրոնացումը, որը կասեցնում է կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումը» (էջ 511):

Ներկա ժողովածուում զգալի տեղ է հատկացված սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությանն առնչվող հարցերին: Եվ դա բնական է: Սկզբնական կուսակցական կազմակերպությունները, նշված է գրքում, կուսակցության հիմքն են: Դրանք վճռական դեր են խաղում կուսակցության քաղաքականության կենսագործման, կոմունիստների դաստիարակության ասպարեզում, կուսակցության ղեկավար օրգանները շաղկապում են մասսաների հետ, գործում են այնտեղ, ուր տեղի է ունենում կառուցման ու ստեղծարար աշխատանքի անմիջական պրոցեսը:

Լ. Ի. Բրեժնևի՝ կոմունիստական գաղափարայնությամբ և կուսակցականությամբ տոգորված երկերը կոմունիստներին, մեր երկրի բոլոր աշխատավորներին կօգնեն՝ առավել խորությամբ ըմբռնելու ՍՄԿԿ զարգացման և նրա ղեկավար դերի անման օրինաչափությունները, կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմերը, տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման եղանակներն ու մեթոդները:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՏԱԳԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՄԱՐ

Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ

*Մեր հանրապետությունում ավարտվեցին քաղաքային և շրջանային կուսակցական կոնֆերանսները, որոնք ամենուրեք անցան քաղաքական ու կազմակերպական բարձր մակարդակով, գործարարության և հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի օբյեկտիվ գնահատման իրադրության պայմաններում։*

*Անցած՝ 1973 թվականը լարված աշխատանքի տարի էր։ Հանրապետության աշխատավորները, ընդգրկվելով հնգամյակի վճռական տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, որոշակի հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, գիտության և կուլտուրայի հետագա զարգացման ասպարեզում։ 1972 թվականի համեմատությամբ ազգային եկամուտն աճեց 3,7 տոկոսով։ Հանրապետության արդյունաբերությունը իրացման տարեկան պլանը կատարեց 1973 թվականի դեկտեմբերի 27-ին։ Արդյունաբերական արտադրության ծավալի աճը նախորդ տարվա համեմատությամբ կազմեց 5,7 տոկոս, պլանից դուրս թողարկվեց 64 մլն ռուբլու արտադրանք։*

*Հնգամյակի վճռական տարում գյուղատնտեսական արտադրանքի թողարկումն ավելացավ 11,6 տոկոսով, կամ, նախորդ տարվա համեմատությամբ, համախառն արտադրանքն աճեց 50 մլն ռուբլով։ Գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը կազմեց 482 մլն ռուբլի, որը 24,2 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի տարեկան միջին արտադրությունից։ Իրականացվեց կապիտալ շինարարության մեծ ծրագիր, գործարկվեցին 655 մլն ռուբլու հիմնական արտադրական ֆոնդեր։*

*Կոնֆերանսների պատգամավորները խորը և համակողմանիորեն քննարկեցին կուսակցության քաղկոմների և շրջկոմների գործունեությունը, կոնկրետ միջոցներ նշեցին քաղաքների և շրջանների տնտեսական և կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարության ուժեղացման և կատարելագործման, կուսակցական կազմակերպությունների կուսակցական-կազմակերպական և գաղափարախոսական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման համար։*

*Կուսակցական կոնֆերանսների ուշադրության կենտրոնում էին ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները, այն մեծ ու պատասխանատու խնդիրները, որոնք դրել է կոմունիստների ու բոլոր աշխատավորների առջև ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը պլենումում ունեցած իր ելույթում։*

*Կոնֆերանսներում նշվեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի նպատակասլաց և արդյունավետ գործունեությունը, որն ուղղված է մեր հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման նպատակին, արժանանում է Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների ընդհանուր հավանությանն ու լիակատար պաշտպանությանը։*

*Կուսակցական կազմակերպությունները տնտեսական բնագավառում չունեն ավելի կարևոր խնդիր, քան ըստ պատշաճի ղեկավարել ժողովրդական շարժումը՝ աշխատանքի բարձր արտադրողականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, բոլոր ռեզերվների առավել լրիվ օգտագործման, և, որ գլխավորն է, բնակչության կենսամակարդակի բարձրացման համար։ Այս գործում առանձնահատուկ դեր է պատկանում կուսակցության շրջկոմներին և քաղկոմներին։ Չէ՛ որ տեղական կուսակցական ղեկավար մարմինները մասսաների մեջ քաղաքական աշխատանքի կազմակերպման կարևորագույն կենտրոններն են, որոնք կոչված են ընտրելու և դաստիարակելու ղեկավար կադրեր, շրջանի բոլոր կազմակերպությունների գործունեությունն ուղղելու տնտեսական և կուլտուրական շինարարության պլանների պրակտիկ կենսագործմանը։*

*Հաշվետու զեկուցումներում և պատգամավորների ելույթներում գերիշխող տեղ էին գրավում այն հարցերը, որոնք կապված են հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրանքի որակի բարձրացման և նրա ինքնարժեքի իջեցման հետ, ինչպես նաև մի շարք այլ հարցեր, որոնք անմիջականորեն բխում են այնպիսի քաղաքական հրատապ փաստաթղթերից, ինչպիսիք են «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումը կուսակցությանը, սովետական ժողովրդին», ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» և «1974 թվականին հողագործության և անասնապահության մթերքների արտադրությունը և մթերումները ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին»։*

*Կոնֆերանսներն առանձնապես շեշտը դրեցին կուսակցական սկզբնական կազմակերպությունների դերի բարձրացման վրա, հանրապետության կառավարչական և գործադիր մարմինների բոլոր օղակներում կուսակցական և պետական կարգապահության հետագա ամրապնդման անհրաժեշտության, աշ-*

խատանքային կոլեկտիվների նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության զարգացման վրա։

Կոնֆերանսների մասնակիցները, արտահայտելով Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների կարծիքը, միահամուռ հավանություն տվեցին բացասական իրողությունների ու երևույթների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու համար Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ձեռնարկած քայլերին, ինչպես նաև հաստատ համոզմունք հայտնեցին, որ հետևողականորեն իրականացվելու է կուսակցական և սովետական մարմինների վերցրած կուրսը։

Հարկավոր է նշել, որ տեղի ունեցած կոնֆերանսների հատկանշական կողմն այն էր, որ բարձրացել են պահանջները կուսակցական կոմիտեների աշխատանքի նկատմամբ, որոնց գործունեությունը գնահատվում էր ամենից առաջ այն տեսակետից, թե շրջկոմը, քաղկոմը որքանո՞վ են ապահովում հնգամյակի խնդիրների իրականացման համար ծավալված պայքարի հաջողությունը, կազմակերպում քաղաքական աշխատանքը մասսաների մեջ, շրջանի, քաղաքի բոլոր կազմակերպությունների գործունեությունն ուղղում տնտեսական և կուլտուրական շինարարության պլանների պրակտիկ կենսագործմանը։ Կոնֆերանսների մասնակիցները գոհունակությամբ նշեցին նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների բարերար ազդեցությունը կուսակցական կազմակերպությունների կյանքի վրա. այդ որոշումները մեծապես նպաստեցին իրենց կոլեկտիվների գործերի վիճակի համար սկզբնական կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի ակտիվության զարգացմանը և պատասխանատվության բարձրացմանը։

Դրա հետ մեկտեղ հաշվետու զեկուցումներում և պատգամավորների ելույթներում արտահայտվեց լուրջ մտահոգություն հանրապետության ժողովրդական տնտեսության գործերի վիճակի, ամբողջ հնգամյակի բախտի համար։ Հնգամյակի անցած երեք տարում ՀՍՍՀ ազգային եկամտի աճը կազմեց 19,9 տոկոս, հնգամյա պլանով նախատեսված 22 տոկոսի փոխարեն, արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը՝ 19,7 տոկոս, 31,2 տոկոսի փոխարեն, աշխատանքի արտադրողականության աճը արդյունաբերության մեջ կազմեց 11,3 տոկոս, 18,4 տոկոսի փոխարեն, իսկ շինարարության մեջ՝ 19,4 տոկոս, 23,3 տոկոսի փոխարեն։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճի տեմպերը, 14,5 տոկոսի փոխարեն, կազմեցին ընդամենը 8,2 տոկոս։

1973 թվականին հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների 12 տոկոսը չի կատարել տարեկան պլանները, պետությանը պակաս է տվել 42,7 միլիոն ռուբլու արտադրանք։ 151 ձեռնարկություն չի կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։ Դեռևս ցածր է թողարկվող արտադրանքի շատ տեսակների որակը. 3400 տեսակ ատեստավորված ապրանքներից միայն 36-ն են արժանացել պետական որականիշի։ Կիրովական քաղաքում, օրինակ, արտադրանքի 58 տեսակներից միայն երկուսն են արժանացել որականիշի։

Լուրջ կշտամբանքներ եղան Երևան քաղաքի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների հասցեին. այստեղ է կենտրոնացված ամբողջ հանրապետության արդյունաբերության 55 տոկոսը։ Ինչպես նշվեց Երևանի կուսակցական կոնֆերանսում, միայն նուրբ բրդի կոմբինատը երեք տարում պակաս է տվել 32 միլիոն ռուբլու արտադրանք։ Կուսակցական կոնֆերանսը



նշեց նաև Երևանի ավտոդողերի գործարանի, Կիրովի անվան փայտամշակման կոմբինատի, կոշիկի № 4 ֆաբրիկայի և մի քանի այլ ձեռնարկությունների անբավարար աշխատանքը։

Կուսակցական կոնֆերանսների պատգամավորները քննադատեցին շինարարության բնագավառում եղած լուրջ թերությունները։ Շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքի, արտադրական օբյեկտներն ու կարողությունները ժամանակին շահագործման չհանձնելու հետևանքով տարեցտարի ավելանում է միաժամանակ կառուցվող օբյեկտների քանակը, հաճախ ձգձգվում են շինարարության տևողության նորմատիվային ժամկետները։ Երբեմն կատարվում են շեղումներ նախագծերից, շինարարության նորմաների խախտումներ, նրա թանկացում։

Նշվեց նաև, որ հանրապետության գյուղատնտեսության զարգացմանը լուրջ վնաս հասցրեց խաղողագործության նման առաջատար ճյուղի ետ մնալը։

Վնասներով են աշխատում Ամասիայի, Աշտարակի, Կրասնոսելսկի, Նաիրիի, Էջմիածնի, Մարտունու և մի քանի այլ շրջանների գրեթե բոլոր սովխոզները։

Ինչպես նշվեց կոնֆերանսներում, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի անբավարար գործունեության հիմնական պատճառը համարվում են արտադրական և աշխատանքային ցածր կարգապահությունը, աշխատանքի կազմակերպման բնագավառում եղած լուրջ թերություններն ու բացերը, արտադրական կարողությունների, նյութատեխնիկական ռեսուրսների, բանվորական ուժի ոչ ռացիոնալ օգտագործումը, հանձնարարված գործի համար պատշաճ պատասխանատվության բացակայությունը և անտնտեսվարությունը։ Ինչպես նշվեց Հոկտեմբերյանի շրջանային կուսակցական կոնֆերանսում, աշխատանքային կարգապահության տարբեր մակարդակով միայն կարելի է բացատրել այն փաստը, որ շրջանի խաղողագործական մի քանի սովխոզներ կլիմայական անբարենպաստ պայմաններում կարողացան գյուղատնտեսական տարին ավարտել նվազագույն կորուստներով, այն ժամանակ, երբ մյուս սովխոզները զգալի վնասներ կրեցին։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառներում եղած թերությունները պատգամավորներն անմիջականորեն կապեցին այն բանի հետ, որ քաղաքային և շրջանային կոմիտեներն անհրաժեշտ աշխատանք չեն ծավալում արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների ակտիվությունը զարգացնելու, արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերն ապահովելու, կուսակցության առաջադրած խնդիրների կատարման նպատակով աշխատանքային կոլեկտիվներին մոբիլիզացնելու համար, հարկ եղած չափով չեն բարձրացնում տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը։

Միաժամանակ պատգամավորները մի շարք քննադատական դիտողություններ և կոնկրետ առաջարկություններ արեցին վերադաս կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների հասցեին։

Մի շարք կոնֆերանսների, մասնավորապես, Վարդենիսի, Կալինինոյի, Սպիտակի շրջանի կոնֆերանսների պատգամավորները պահանջեցին ավելի շատ ուշադրություն նվիրել գյուղում անասնապահական համալիրների շինարարության ընդլայնմանը, դաշտավարության և անասնապահության աշխա-

տատար պրոցեսների մեքենայացմանը, արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների արմատավորմանը, գիտության և արտադրության կապի ամրապնդմանը և այլ կարևոր հարցերի լուծմանը։ Լուրջ քննադատության ենթարկվեց գյուղական շինարարության մինիստրությունը, որը հաճախ ձգձգում է առաջնահերթ օբյեկտների գործարկումը, իսկ մի շարք դեպքերում դրանք շահագործման հանձնում ցածր մակարդակով (Սպիտակի, Ապարանի, Թալինի և այլ կոնֆերանսներ)։ Նշվեց նաև, որ գյուղատնտեսության մինիստրությունն անհրաժեշտ ուշադրություն չի նվիրում գործող համալիրների մեքենայացման և նորոգման հարցերին՝ միջոցները հատկացնելով միայն նոր համալիրների շինարարությանը։

Հանրապետության Պետպլանի հասցեին կշտամբանք եղավ այն կապակցությամբ, որ հաճախ պլանավորման մեջ լինում են վրիպումներ և անհամաձայնություններ։

Պատգամավորները նշեցին, որ հանրապետության լուսավորության մինիստրությունը դեռևս անհրաժեշտ միջոցներ չի ձեռնարկում գյուղական դպրոցները ուսուցիչների բարձրորակ կադրերով և ուսումնա-զննական միջոցներով ապահովելու համար։ Թալինի շրջանի կուսակցական կոնֆերանսում առաջարկություն արվեց՝ ընդլայնել գյուղական երիտասարդության արտոնությունները բուհեր ընդունվելու համար՝ նպատակ ունենալով ավելացնել տեղերից մասնագետներ պատրաստելու հնարավորությունը։

Որպես արված առաջարկությունների կենսագործմանն ուղղված միջոցառում, ցանկություն հայտնվեց, որ Կենտկոմի բաժիններն ուժեղացնեն վերահսկողությունը մինիստրությունների և գերատեսչությունների գործունեության նկատմամբ, բարձրացնեն նրանց պատասխանատվությունը՝ իրենց առջև ծառացած խնդիրների լուծման համար։

Ստեփանավանի, Ամասիայի, Մեղրիի, Սևանի շրջանների կուսակցական կոնֆերանսների պատգամավորները լուրջ դիտողություններ արեցին առողջապահության և կուլտուրայի մինիստրությունների հասցեին այն կապակցությամբ, որ դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան հիվանդանոցներում և պոլիկլինիկաներում, չի կատարվում առողջապահության և կուլտուրայի օբյեկտների շինարարության պլանը։

Երևանի քաղաքային և շրջանային կոնֆերանսներում սկզբունքային քննադատության ենթարկվեց աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների գործունեությունը։ Պատգամավորները խորհուրդ տվեցին գործուն միջոցներ ձեռնարկել՝ հատկապես բնակարանների բաշխման ժամանակ պետական կարգը պահպանելու, քաղաքային տրանսպորտի, առևտրի և բնակչության սպասարկման ամբողջ ոլորտի աշխատանքը բարելավելու համար։ Ցանկություն հայտնելով է՛լ ավելի բարձրացնել բնակչության սպասարկման մակարդակը, կոնֆերանսների պատգամավորներն ամենուրեք նշեցին հանրապետության առևտրի կազմակերպման գործում կատարված նպաստավոր փոփոխությունները, բնակչությանը պարենային ապրանքների, թարմ բանջարեղենի, մասսայական պահանջարկ ունեցող ապրանքների մատակարարման նկատելի բարելավումը։ Դրա հետ մեկտեղ ուշադրություն հրավիրվեց մատակարարման բարձր մակարդակի և առևտրի ցածր կուլտուրայի միջև եղած զգալի անհամամասնության վրա։ Առևտրի բնագավառում



նկատելի դարձած փոփոխությունները ամենուրեք ընկալվեցին որպես մի էական գործոն, որը հաստատում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի վերցրած կուրսի հետևողականությունն ու նպատակասլացությունը՝ արմատախիլ անելու այնպիսի բացասական երևույթները, ինչպիսիք են դրամաշորթությունը, կաշառակերությունը և սպեկուլյացիան առևտրի և բնակչության սպասարկման ոլորտում։

Քաղաքային և շրջանային կոնֆերանսներում քննադատական դիտողություններ արվեցին նաև ավտոտրանսպորտի, ներքին գործերի մինիստրությունների, «Հայգյուղտնտեխնիկա» հանրապետական միավորման, «Հայկոոպի» վարչության և մի քանի այլ գերատեսչությունների հասցեին։

Կուսակցական կոնֆերանսների պատգամավորները միաժամանակ մի շարք առաջարկություններ և դիտողություններ արեցին Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի հասցեին։ Միահամուռ հավանություն տալով և պաշտպանելով Կենտկոմի հետևողական գործունեությունը հանրապետությունում պետական օրինակելի կարգ ու կանոն հաստատելու, կուսակցական կարգապահությունը է՛լ ավելի բարձրացնելու, իններորդ հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքների կատարման համար հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու ասպարեզներում, կոնֆերանսների մասնակիցները ցանկություն հայտնեցին՝ ավելի ակտիվորեն շարունակել սկսած գործը, անշեղորեն հետևել վերցրած կուրսին։ Նշելով Կենտրոնական կոմիտեի ձեռնարկած միջոցների անհրաժեշտությունն ու հրատապությունը՝ նրանք այդ ամենը համարում են միայն սկիզբը այն մեծ ու երկարատև աշխատանքի, որ դեռ կատարելու են հանրապետության կուսակցական և սովետական մարմինները։

Նշվեց նաև, որ հանրապետությունում նկատելիորեն բարելավվել է ներկուսակցական ինֆորմացիայի դրվածքը, որն ապահովում է կուսակցական մարմինների աշխատանքի լայն հրապարակայնությունը, մեծ չափով խթանում աշխատավորների ակտիվությունը, որոնք պատրաստակամություն են հայտնում՝ օգնել և աջակցել կուսակցական և սովետական մարմիններին՝ իրականացնելու մշակված ու նախատեսվող միջոցառումները։

Ինչպես ցույց է տալիս հաշվետու զեկուցումներում և պատգամավորների ելույթներում արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների նախնական մշակումը, դրանցում արտահայտված է կոմունիստների հարաճուն հետաքրքրասիրությունը այն ամենի նկատմամբ, ինչ վերաբերում է կուսակցության կյանքին ու գործունեությանը, նրանց անկասելի ձգտումը՝ ապահովել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, հնգամյակի որոշիչ տարվա և կուսակցության Կենտրոնական կոմիտեի՝ 1973 թվականի դեկտեմբերյան պլենումի պահանջների անվերապահ կատարումը։

Կուսակցական կոնֆերանսներում մեծ ուշադրություն նվիրվեց նաև գաղափարախոսական գործունեության վիճակին, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կուսակցական ուսուցման և քաղաքական լուսավորության սիստեմի պարապմունքների գաղափարական մակարդակի, պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի արդյունավետության, կոլեկտիվներում քաղաքական աշխատանքի բազմազան ձևերի ու մեթոդների լայն օգտագործման, դեռևս տեղ-տեղ պատահող ազգային սահմանափակության դրս-

սևորումների դեմ մղվող պայքարի պրոբլեմներին։ Առանձին սրությամբ դրվեց բանվորական և ուսանող երիտասարդության հետ տարվող աշխատանքը լայնորեն ծավալելու, նրան սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, սովետական ժողովրդի հեղափոխական, աշխատանքային ու մարտական ավանդույթներով դաստիարակելու հարցը։

Երևանի, Լենինականի և մի շարք այլ կոնֆերանսներում մասնավորապես նշվեց, որ անհրաժեշտ է ուժեղացնել գրողների ու նկարիչների միությունների կապը արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների հետ, քննադատաբար վերաբերվել հրատարակվող գրականությանը։ Ինչպես իր ելույթում ասաց Լենինականի երկաթուղային հանգույցի կուսակցական կոմիտեի քարտուղար Գ. Ամբարդարյանը. «...Հարկավոր է, որ մեր գրողները, բանաստեղծները, կոմպոզիտորները, նկարիչները ավելի խորը մշակեն բանվորական թեմատիկան, աշխատանքի մարդու կերպարը արտացոլեն նրա ամբողջ գեղեցկությամբ, ստեղծեն մեր հերոսական ժամանակին արժանի արվեստի ստեղծագործություններ»։

Պատգամավորների, ինչպես նաև հանրապետության ղեկավար աշխատողների, մասնավորապես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամների ու անդամության թեկնածուների և Կենտկոմի անդամների ելույթներում զգալի տեղ էր հատկացվել աշխատավորական լայն զանգվածների շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանքը ամեն կերպ ուժեղացնելու, նրանց սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու անհրաժեշտությանը։ Կոնֆերանսներում ելույթ ունեցած ղեկավար ընկերները պատգամավորների ուշադրությունը հրավիրեցին կազմակերպական-կուսակցական և քաղաքական աշխատանքի մակարդակը ամեն կերպ բարձրացնելու հարցերի վրա։ Այդ աշխատանքն ուղղված է տնտեսական և կուլտուրական շինարարության, հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվության բարձրացման, ընդունված որոշումների կատարման նկատմամբ վերահսկողության բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրների կատարմանը։

Ներկայումս Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, կուսակցության քաղկոմներում և շրջկոմներում ընդհանրացվում են պատգամավորների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ինչպես նաև կոնֆերանսների ընթացքում կուտակված կազմակերպական և քաղաքական աշխատանքի դրական փորձը, որը լրիվ չափով կօգտագործվի կուսակցական կազմակերպությունների դերն ու մարտունակությունը է՛լ ավելի բարձրացնելու, նրանց աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու, կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների ամբողջ կազմակերպչական գործունեությունը բարելավելու նպատակով։

Կոնֆերանսների աշխատանքին մասնակցել 13.633 մարդ, որոնցից զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցել 507-ը։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների կազմում ընտրվել է 4158 մարդ։ Նախորդ ընտրությունների համեմատությամբ, զգալիորեն նորացվել է կոմիտեների անդամների և անդամության թեկնածուների կազմը։ Այդ կազմում ընտրվել են նաև առաջավոր բանվորներ ու կոլտնտեսականներ, որոնք ունեն կուսակցական, քաղաքական աշխատանքի փորձ և աչքի են ընկ-



նում կազմակերպչական ընդունակություններով։ Կուսակցության Երևանի քաղկոմի բյուրոյի անդամության թեկնածու է ընտրվել էլեկտրալամպերի գործարանի առաջավոր բանվորուհի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ե. Եփրեմյանը, Հոկտեմբերյանի շրջկոմի բյուրոյի անդամ՝ Նալբանդ գյուղի կոլտնտեսուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Գ. Կարապետյանը, կուսակցության Հրազդանի շրջկոմի բյուրոյի անդամության թեկնածու՝ «Հրազդանշին» տրեստի մոնտաժողների բրիգադավար Շ. Գյուլմիսարյանը և շատ ուրիշներ։

Կոնֆերանսների ընթացքում փոխարինվել են կուսակցության շրջանային կոմիտեների 11 առաջին, 6՝ երկրորդ և 5 քարտուղարներ։ Նրանց մի մասը ազատվել է կուսակցական տույժով կամ երաշխավորված չի եղել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անցկացրած ստուգումների պատճառով, որոնք նրանց գործունեության մեջ բացահայտեցին լուրջ թերություններ, կադրերի ընտրության տեղաբաշխման ու դաստիարակության լենինյան սկզբունքների խախտումներ, ինչպես նաև պաշտոնական դիրքը չարաշահելու փաստեր։ Հարկավոր է նշել, որ կոնֆերանսների պատգամավորները, շրջանների կուսակցական ակտիվը ամբողջապես հավանություն տվեցին կադրերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի ձեռնարկած միջոցներին, միահամուռ պաշտպանեցին Կենտկոմի հանձնարարած թեկնածությունները՝ նրանց կուսակցության համապատասխան շրջկոմների քարտուղարներ ընտրելու համար։

Կոնֆերանսները համակողմանիորեն ընդհանրացրին կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և քաղաքական աշխատանքի կոլեկտիվ փորձը, նպաստեցին տնտեսական և կուլտուրական շինարարության նրանց ղեկավարման մակարդակի բարձրացմանը։

Կոնֆերանսում ընդունվեցին կարևոր որոշումներ, հայտնվեցին շատ արժեքավոր մտքեր, արվեցին քննադատական ուսանելի դիտողություններ ու առաջարկություններ։ Դրանց մեջ արտահայտված են կոմունիստների հետաքրքրասիրությունը այն ամենի նկատմամբ, ինչ վերաբերում է կուսակցության կյանքին ու գործունեությանը, նրանց անհողդողդ կամքը՝ ժամկետից շուտ ապահովել հնգամյա պլանի կատարումը։

Կուսակցական կոնֆերանսները շատ հարուստ նյութ տվեցին հնգամյակի երեք տարվա ընթացքում կուտակված փորձը, կուսակցական աշխատանքի նոր ձևերն ու մեթոդները ուսումնասիրելու և տարածելու համար, պրակտիկան քննադատաբար վերլուծելու, միջոցառումներ մշակելու և թերությունները վերացնելու համար։

Կոնֆերանսների որոշումների կատարման կազմակերպումը մեծ կարևորություն ունեցող գործ է, դրանով պետք է ամեն օր զբաղվեն կուսակցական կոմիտեների բոլոր աշխատողները։ Կազմակերպելով կոնֆերանսների որոշումների, կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների կատարումը՝ կուսակցական ղեկավար մարմինները պետք է առանձնացնեն այն գլխավորը, որ պետք է շարունակ լինի իրենց ուշադրության կենտրոնում։ Ընդ որում, հարկավոր է միշտ հիշել, որ ամեն մի գործի հաջողություն պայմանավորված է նրա կատարման ստուգմամբ։ Ուստի, անհրաժեշտ է ամեն կերպ ուժեղացնել վերահսկողությունը ընդունված որոշումների կատարման

նկատմամբ։ Սա կոնֆերանսների գլխավոր պահանջներից մեկն է։ Հետևաբար պետք է հասնել այն բանին, որ որոշումների կատարման ստուգմանը ամենաանմիջական ու ակտիվ մասնակցություն ունենան բոլոր կոմունիստները։

Հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն նվիրել սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության բարելավմանը, քանի որ ամեն մի խնդրի կատարման հաջողություն վճռվում է ամենից առաջ այնտեղ, ուր նրանք գործում են՝ ձեռնարկությունում, կառույցում, կոլտնտեսությունում, սովխոզում, հիմնարկությունում։ Կուսակցության քաղկոմների և շրջկոմների խնդիրն է՝ օգնել սկզբնական կուսակցական կազմակերպություններին, ինչպես հարկն է, ծավալելու ընդունված որոշումների կենսագործման աշխատանքը։

Կուսակցության նորընտիր քաղկոմներն և շրջկոմները վիթխարի անելիքներ ունեն։ Նախանշված պլանների իրականացումը զգալի չափով կախված կլինի տնտեսական և կուլտուրական շինարարության արմատական հարցերի վրա ջանքերը կենտրոնացնելու նրանց ունակությունից, այն բանից, թե ինչպես իրենց կդրսևորեն կոմիտեների անդամները, ամբողջ կուսակցական ակտիվը։

Կուսակցությանը և սովետական ժողովրդին ուղղված դիմումում ՍՄԿԿ Կենտկոմը 1974 թվականը համարեց իններորդ հնգամյակի որոշիչ տարի։ «1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը,— ասված է դիմումում,— որոշիչ նշանակություն կունենան ոչ միայն այս հնգամյակի հաջող ավարտման համար, այլև կարևոր ֆայլ կլինեն եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ամուր հիմք ստեղծելու համար»։

Այս խնդրի լուծման գործում ՍՄԿԿ Կենտկոմը վճռական դեր է հատկացնում կուսակցական կազմակերպություններին։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն իր դիմումով կոչ է անում կուսկազմակերպություններին և բոլոր կոմունիստներին՝ գլխավորել հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքների հաջող կատարման համար սովետական մարդկանց ծավալած հզոր շարժումը, ավելի լրիվ օգտագործել կուտակված փորձը, կատարելագործել իրենց գործունեությունը, միշտ լինել առջևում, տնտեսական պլանները հուսալիորեն ամրապնդել կազմակերպչական, քաղաքական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքով։

Կուսակցությանը և սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը, ինչպես նաև արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները արժանացան նաև կուսակցական կոնֆերանսների ուշադրությանը, դրանց պահանջները տեղ գտան շրջանային ու քաղաքային կուսկազմակերպությունների բարձրագույն օրգանների մշակած միջոցառումներում։ Հետևաբար, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների պարտքն է՝ հետևողականություն հանդես բերել կուսակցության ու կառավարության առաջադրած



նոր խնդիրների իրականացման գործում, կյանքի կոչել այդ կապակցությամբ կոնֆերանսների ընդունած որոշումները։

Ինչպես ամբողջ Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում, աշխատավորական կոլեկտիվները մշակել են հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա սոցիալիստական պարտավորությունները։ Սոցիալիստական մրցության գլխավոր նպատակը հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն է, աշխատանքային, նյութական ավելի քիչ ծախսումներով առավել շատ բարձրորակ արտադրանքի թողարկումը, հետևաբար՝ ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։ Այս ամենը բխում է կուսակցության XXIV համագումարի պահանջներից։ Ուստի, կոնֆերանսներում մշակված միջոցառումները պետք է ամեն կերպ նպաստեն կուսակցության XXIV համագումարի որոշումների հետևողական իրականացմանը, իններորդ հնգամյակի պլանների կատարմանն ու գերակատարմանը, կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումի մեջ առաջադրված խնդիրների կենսագործմանը։

---

# ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

**Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ XXIV համագումարը նշանակալի տեղ հատկացրեց կուսկազմակերպությունների դերի բարձրացման, նրանց կառուցվածքային կատարելագործման և իրավունքների ընդլայնման խնդիրներին։ Դրանց պատշաճ լուծումը կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման վճռական պայմանն է։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Կուսակցության քաղաքականությունն իրականացնելու ասպարեզում կարևորագույն տեղերից մեկը գրավում են սկզբնական կուսակցական կազմակերպությունները։ ...Անհրաժեշտ է այսուհետև ևս ուժեղացնել սկզբնական կուսկազմակերպությունների ազդեցությունը ձեռնարկությունների ու հիմնարկությունների աշխատանքի վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 128, 129)։

Սա կարևոր խնդիր է, որովհետև սկզբնական կուսկազմակերպությունն այն հիմքն է, որի վրա բարձրացել է Սովետական Միության բազմամիլիոնանոց կոմունիստական կուսակցությունը։ Հենց սկզբնական կուսկազմակերպությունն է այն օղակը, որը կոմունիստին հնարավորություն է ընձեռում խորհել ու լուծել կուսակցության առջև ծառացած խնդիրները։

Կուսակցության դերի ու մարտունակության բարձրացումը ենթադրում է նրա յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության ակտիվ գործունեություն, յուրաքանչյուր կոմունիստի անձնուրաց աշխատանք։ Դա նշանակում է, որ կուսակցությունը միայն իր կազմակերպությունների միջոցով կարող է ապահովել հասարակական-քաղաքական և տնտեսական ամբողջ կյանքի, կոմունիստական շինարարության բոլոր ոլորտների վրա կուսակցական ազդեցության տարածումը և խորացումը։

Կուսկազմակերպությունների աշխատանքի մեթոդների ու ձևերի կատարելագործման, նրանց մարտունակության բարձրացման վերոհիշյալ խնդիրները միշտ եղել են ՀԿԿ Լենինականի քաղաքային կոմիտեի ուշադրության կենտրոնում։ Աշխատանքի հիմքում ունենալով ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումն այն մասին, որ ձեռնարկություններում և հիմնարկություններում կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը ներկա էտապում ամենակարևոր խնդիրն է, կուսքաղկոմը դրա լուծումը համարում է իր առաջնակարգ պարտականությունը և գործունեության առանցքը։ Մենք պարբերաբար անդրադառնում ենք կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման հարցերին, դրանք քննարկում քաղկոմի պլենումում և բյուրոյի նիստերում։ Վերջին երեք տարում, օրինակ, քննարկել ենք էլեկտրատեխնիկական, թեթև, մեքենաշինական արդյունաբերության ձեռնարկությունների, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի, մետաղյա իրերի և ավտոբուսների նորոգման գործարանների կուսկազմակերպությունների հաշվետվությունը կուսակցական կյանքի մի շարք հրատապ խնդիրների վերաբերյալ, որոնք սերտորեն առնչվում են նրանց մարտունակության բարձրացման հետ։

Այդ քննարկումները նպաստել են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության իններորդ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը, պետական և կուսակցական կարգապահության ամրապնդմանը, սոցիալիստական սեփականության պահպանմանը։ Դրանց անմիջական արդյունքն են հնգամյակի անցած երեք տարիներին քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ձեռք բերած տեխնիկատնտեսական բարձր արդյունքները։ Հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա արտադրական ծրագիրը նրանք կատարեցին դեկտեմբերի 25-ին և պլանից ավելի իրացրին մոտ 6,5 մլն ռուբլու արտադրանք, թողարկվող արտադրանքի ծավալը մեծացնելով 9 տոկոսով։ Իսկ անցած երեք տարիների արտապլանային իրացումը հասնում է ավելի քան 16,5 մլն ռուբլու։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը մեծ չափով նպաստում են կուսքաղկոմի կողմից անցկացվող հրահանգավորման միջոցառումները և կուսակցական աշխատանքի լավագույն փորձի փոխանակումն ու տարածումը։ Արդեն մի քանի տարի է, ինչ քաղկոմին կից գործում է կուսակցական-կազմակերպական աշխատանքի մեթոդկաբինետը։ Դրա հիմնական նպատակը սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի ուսումնասիրության ու նրանց դրական փորձի տարածումն է, քարտուղարներին ցույց տրվող գործնական օգնությունը։ Մեթոդկաբինետն իր գործունեությամբ նպաստում է կոմունիստների ակտիվության զարգացմանը, կուսկազմակերպությունների աշխատանքի աշխուժացմանը։ Անցած տարի մեթոդկաբինետի նախաձեռնությամբ քաղաքի կուսկազմակերպությունների քարտուղարներն ուսումնասիրեցին զուլպայի ֆաբրիկայի կուսկազմակերպության աշխատանքի փորձը և հենց տեղում կազմակերպված սեմինար-խորհրդակցությունում պատմեցին իրենց տպավորությունների մասին։ Ինձ թվում է, որ դա ներկուսակցական աշխատանքի առաջավոր փորձի տարածման արդյունավետ մեթոդ է։

ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. նոյեմբերյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանն ասաց. «Տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի և պատասխանատվության բարձրացումը աներևակայելի է առանց ներկուսակցական աշխատանքի համակողմանի բարելավման»։

Հենց այսպիսի պահանջները նկատի ունենալով՝ քաղաքային կոմիտեն սկսել է ավելի խորությամբ վերլուծել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, բացահայտել թերությունները, խորհրդակցել կոմունիստների, լայն մասսաների հետ, ի մի բերել դրական աշխատանքի ար-

դյունքները, դրանք մասսայականացնել բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում։

Դրական փորձը կարող է ներգործուն և արժեքավոր լինել միայն այն դեպքում, երբ դառնա բոլոր կուսկազմակերպությունների սեփականությունը։ Քաղաքային կոմիտեն այդ նպատակով օգտագործում է աշխատանքի բազմապիսի ձևեր ու մեթոդներ. կոմունիստներին սիստեմատիկ ինֆորմացիա է տալիս իր գործունեության, քաղկոմի պլենումների ու բյուրոյի նիստերի որոշումների կատարման արդյունքների մասին, անցկացնում կուսկազմակերպությունների քարտուղարների հրահանգչական խորհրդակցություններ, գիտապրակտիկ կոնֆերանսներ, ստեղծում մշտական գործող սեմինարներ ու դպրոցներ։ Կուսակցական կադրերի դաստիարակության գործը բարելավելու համար քաղկոմին կից ստեղծվել և հաջողությամբ գործում է կուսկազմակերպությունների քարտուղարների մեկամյա դպրոցը, որտեղ նրանք բարձրացնում են իրենց որակավորումը։

Կուսկազմակերպությունների մարտունակությունը, վերջին հաշվով, կախված է այն բանից, թե ինչպես է քաղաքային կոմիտեն ղեկավարում և օգնում սկզբնական կուսկազմակերպություններին։ Քաղկոմը կազմակերպական կոնկրետ աշխատանքով ուղղություն է տալիս կուսկազմակերպությունների միջոցառումներին։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման և պետական առաջադրանքների անթերի կատարման կարևոր միջոց են քաղաքային կոմիտեի ցուցաբերած հոգատար վերաբերմունքը քննադատական դիտողությունների ու առաջարկությունների նկատմամբ, ընդունված որոշումների կենսագործումը։ Կատարման ստուգումն ապահովելու համար մենք լայնորեն օգտագործում ենք կուսակցական ակտիվի ուժը։ Մեկ-երկու ամիսը մեկ անգամ քաղկոմի անդամները, անդամության թեկնածուները, վերստուգիչ հանձնաժողովի անդամները հանձնարարություն են ստանում ստուգելու քաղկոմի բյուրոյի կամ պլենումի որոշումների կատարումը։ Այս մեթոդը բարերար ազդեցություն է թողնում գործերի վիճակի և կուսկազմակերպությունների մարտունակության վրա։ Կատարման ստուգման ճիշտ կազմակերպման շնորհիվ առևտրական կազմակերպությունները լուրջ բեկում մտցրին իրենց գործունեության մեջ և անցած տարի հասան որոշակի հաջողությունների. ապրանքաշրջանառության 8 ամսվա պլանը գերակատարելու համար, արժանացան ՀՍՍՀ Մինիստրների սովետի ու ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին և դրամական պարգևին։

Բոլոր դեպքերում կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման համար անհրաժեշտ է, որ նրանց կազմակերպական ու քաղաքական գործունեությունը, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման ձևերն ու մեթոդները, որքան կարելի է, լրիվ համապատասխանեն մեր ժամանակի ոգուն, այն մեծ խնդիրներին, որ կուսակցության ու երկրի առջև դրել է ՍՄԿԿ XXIV համագումարը։ Այս առումով ուսանելի փորձ են կուտակել երկաթուղու հանգույցի, տեքստիլ կոմբինատի, կարի ֆաբրիկայի, ռեգիստրների և շինարարական մեքենաների գործարանների, № 2 ավտոձեռնարկության կուսկազմակերպությունները։

Տեքստիլ կոմբինատի կուսկոմիտեի գործունեության մեջ ուշագրավն այն է, որ նա հենվում է ո՛չ միայն կոմունիստների վրա, այլև օգտվում է անկու-



սակցական ակտիվի մտահղացումներից, խորհուրդներից, նրան մասնակից դարձնում կուսկոմիտեի գործունեությանը։ Կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի կուսբյուրոյի և նրա քարտուղար Ա. Գրիգորյանի ջանքերով կուսկազմակերպությունը, որը միավորում է 200 կոմունիստների, դարձել է կոլեկտիվի ղեկավար կորիզը։ Այստեղ կուսաշխատանքը դրված է գիտական հիմքերի վրա։ Կուսբյուրոյի ուշադրության կենտրոնում է արտադրությունում, հասարակական կյանքում յուրաքանչյուր կոմունիստի ավանգարդային դերի ապահովման հարցը։ Կուսբյուրոն կազմել է ՍՄԿԿ անդամների ու թեկնածուների արտադրական ցուցանիշների գիրք, որտեղ գրանցվում են նրանց աշխատանքային ու հասարակական գործունեությանը վերաբերող բոլոր տվյալները։ Կոմունիստներից 185-ն ունի կուսակցական հանձնարարություն։ Կուսկազմակերպության անմիջական նախաձեռնությամբ ստեղծվել և հաջողությամբ գործում է «Բանվորական փառքի խորհուրդը»։

Ֆաբրիկայի կուսբյուրոն կուսխմբերի հետ աշխատելու դրական փորձ է կուտակել։ Կուսբյուրոն, ղեկավարվելով քաղաքային կոմիտեի 1973 թ. մարտի 15-ի «Տեքստիլ կոմբինատի կուսկազմակերպությունների օգնությունն ու ղեկավարությունը կուսակցական խմբերին» որոշմամբ, մշակեց կուսխմբերի գործունեությունը բարելավելու միջոցառումներ։ Այնուհետև կուսկազմակերպություններում քննարկվեց այն հարցը, թե կուսխմբերն ինչպես են օգնում կոմունիստներին՝ արտադրության մեջ իրենց ավանգարդային դերն ապահովելու, ՍՄԿԿ կանոնադրական պարտականությունները և կուսակցական հանձնարարությունները կատարելու գործում։ Այդ միջոցառումների հաջող իրականացմամբ պետք է բացատրել, որ վերջին շրջանում նկատելիորեն բարելավվել է կուսխմբերի գործունեությունը։ Նրանք իրենց ժողով-խորհրդակցություններում քննարկում են պետական պլանների կատարմանը, արտադրության կուլտուրայի բարձրացմանը, մեքենա-սարքավորումների խնամքի և թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը վերաբերող հարցեր։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման համար կուսկոմիտեի գործադրած ջանքերը դրական ազդեցություն են ունենում նաև տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վրա։ ՍՄԿԿ XXIV համագումարից և Կենտկոմի դեկտեմբերյան պլենումից հետո կոմբինատի կուսկազմակերպությունը սևեռուն ուշադրություն նվիրեց արտադրության ընդլայնմանն ու վերակառուցմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Կոմբինատի կուսկազմակերպության և կոլեկտիվի ջանքերով իններորդ հնգամյակի անցած տարիներին տեղադրվել է 1354 միավոր (6,5 մլն ռուբլու) բարձրարտադրողական մեքենա-սարքավորում։ Արտադրության մեջ ներդրվել է 1600 առաջարկություն՝ 1,8 մլն ռուբլի տնտեսական արդյունավետությամբ։ Ասես, թե այս աշխատասեր կոլեկտիվի անդամների մասին է ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ բոլոր բանվորները պիտի դառնան կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գիտակից մարտիկներ, գործեն որպես պետական մարդիկ, լիովին դրսևորելով իրենց ընդունակությունները, նախաձեռնությունը, տնտեսական ձեռներեցությունը։

Մարտունակության բարձրացման չափանիշ են կուսակցական ժողովների ժամանակին հրավիրումը և դրանց քաղաքական բարձր մակարդակով անցկացումը։ Միայն մարտունակ կազմակերպությունում ժողովը կարող է կատարել

իր դաստիարակիչ դերը։ Քաղաքի կուսկազմակերպությունները, ելնելով Յարոսլավլի քաղաքային կուսկազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից, լուրջ պատասխանատվություն են դրսևորում ժողովների օրակարգերի ընտրության, հարցերի քննարկման և որոշումների ընդունման ու կատարման նկատմամբ։ Նրանք ժողովները դիտում են ո՛չ միայն որպես դաստիարակության դպրոց, այլև կուսկազմակերպությունները կազմակերպչորեն ամրապնդելու կարևորագույն միջոց։

Այս ասպարեզում ուսանելի փորձ ունի Չկալովի անվան կարի ֆաբրիկայի կուսկազմակերպությունը։ Կուսբյուրոն ամեն կերպ ձգտում է, որպեսզի հարցերը նախապատրաստվեն խնամքով, ժողովներում դրանք քննարկվեն կազմակերպված, կարծիքների ազատ և գործարար փոխանակության, բարձր սկզբունքայնության և փոխադարձ պահանջկոտության մթնոլորտում։ Հարցերի նախապատրաստմանը և քննարկմանն այստեղ մասնակցում են մեծ թվով կոմունիստներ։ Ելնելով ֆաբրիկայի արտադրական պայմաններից ու առանձնահատկություններից՝ կուսբյուրոն մշակում է մեկ տարվա հեռանկարային պլան, որն ուղեցույց է դառնում կուսկազմակերպության ընթացիկ գործունեության համար։ Արտադրամասերում դրված են արկղեր՝ կուսկազմակերպությանն ուղղված հարցերի, առաջարկությունների, բողոքների և նամակների համար։ Տեղյակ լինելով առաջիկայում հրավիրվող ժողովի օրակարգին՝ կոմունիստներն իրենց առաջարկություններով, դիտողություններով օգնում են տվյալ հարցը նախապատրաստող հանձնաժողովին՝ այն մանրազնին և հանգամանորեն ուսումնասիրելու համար։

Կուսակցական ժողովները խնամքով նախապատրաստելու շնորհիվ ապահովվում է ո՛չ միայն կոմունիստների ներկայությունը, այլև նրանց ակտիվ մասնակցությունը հարցերի քննարկմանը։ Դա հնարավորություն է ընձեռում՝ լսելու ավելի շատ կոմունիստների, նրանց առաջարկությունների հիման վրա մշակելու խելամիտ որոշումներ։ 1973 թ. առաջին եռամսյակում կարի ֆաբրիկայում ստացվել էին բավականաչափ բողոքներ արտադրանքի որակի կապակցությամբ։ Շուտով կուսբյուրոյի նիստում, այնուհետև դռնբաց կուսժողովում, ի կատարումն ՀԿԿ Լենինականի քաղկոմի 1973 թ. ապրիլի 5-ի որոշման, քննարկվեցին արտադրանքի որակի բարձրացման նպատակով կատարված աշխատանքի վիճակը և կուսկազմակերպության խնդիրները։ Ելույթներում հանգամանորեն բացահայտվեցին այն պատճառները, որոնք արգելակում էին բարձրորակ արտադրանքի թողարկմանը։ Քննարկման արդյունքը եղավ այն, որ մինչև օրս ոչ մի բողոք չի ստացվել արտադրանքի ցածրորակության կապակցությամբ։

Լավ նախապատրաստված և անցկացված ժողովն ամեն մի լուրջ նախաձեռնության նախորդող, աշխատողներին նպատակամղող և նրանց մտքերն ի մի բերող միջոցառում է։ Այսպիսի մի ժողովում ծնվեց կարի ֆաբրիկայի կուսկազմակերպության հայրենասիրական նախաձեռնությունը. ֆաբրիկայի կոլեկտիվը կոչ ուղղեց քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններին և առաջարկեց մշակել հանդիպական պլաններ, ստանձնել լրացուցիչ պարտավորություններ և , սոցիալիստական գործարար մրցության ծավալման, բոլոր ուժերի մոբիլիզացման, ներքին ռեզերվների և հնարավորությունների ացխնալ օգ-



տագործման միջոցով, ժամկետից շուտ կատարել հնգամյակի վճռական տարվա պետական առաջադրանքները։

Ի դեպ, ինչպես այս, այնպես էլ քաղաքի ուրիշ կազմակերպություններում լայնորեն կիրառվում է դռնբաց ժողովներ անցկացնելու պրակտիկան։ Դռնբաց ժողովներում ոչ-կուսակցական մասսան իրազեկ է դառնում տվյալ շրջանում կուսկազմակերպության առջև դրված լուրջ ու կարևոր խնդիրներին և իր առաջարկություններն է անում դրանց կենսագործման համար։ Փորձը ցույց է տվել, որ միայն մարտունակ կուսկազմակերպությունը կարող է վճռականորեն ազդել ձեռնարկության տնտեսական գործունեության վրա, գլխավորել կոլեկտիվի անդամների աշխատանքային խանդավառությունը, ծավալել սոցիալիստական գործարար մրցություն։ Ներկուսակցական և քաղաքական աշխատանքների աշխուժացմանը զուգահեռ, Լենինականի երկաթուղային հանգույցի կուսկազմակերպությունը լայն թափ է հաղորդել սոցիալիստական մրցությանը։

Հնգամյակի վճռական տարում, համամիութենական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման կենսագործման նպատակով, հանգույցի կուսկոմիտեի նախաձեռնությամբ ստեղծվեց սոցիալիստական մրցությունը գլխավորող հանձնաժողով՝ էներգամատակարարման ուղեմասի պետ, կուսկոմիտեի անդամ Լ. Պանյանի նախագահությամբ։ Հանձնաժողովն արտադրական ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների հետ յուրաքանչյուր ամիս ամփոփում էր պլանային առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները և ամեն եռամսյակ ներկայացնում հանգույցի կուսկոմիտեի քննարկմանը։ Այդ հանձնաժողովի արդյունավետ գործունեության շնորհիվ զգալիորեն բարելավվեց սոցիալիստական մրցության կազմակերպումը հանգույցի ձեռնարկություններում, զարգացավ կոմունիստների ակտիվությունը։ Հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար հայրենասիրական նախաձեռնությամբ հանդես եկան կոմունիստ մեքենավարներ Ջ. Հարությունյանի, Վ. Գրիգորյանի, Գ. Սարգսյանի ղեկավարած բրիգադները, կայարանի մանևրային դիսպետչեր Ա. Մովսիսյանի, վագոնների զննման կետի Ստ. Մկրտչյանի հերթափոխությունները։ Նրանք ինչպես և առաջատար մասնագիտության տեր շատ կոմունիստներ պարտավորվել են հնգամյակը կատարել չորս տարում։

Երկաթուղային հանգույցի, «Լենշին» տրեստի կուսակցական կոմիտեները հարուստ փորձ ունեն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկցիայի իրականացման ասպարեզում։ Այդ ֆունկցիայի ճիշտ և հետևողական կատարումը ևս կուսկազմակերպության մարտունակության բարձրացման արտահայտությունն է։

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման գործում զգալի դեր խաղացին վերջին երկու տարիների ընթացքում կուսկազմակերպությունների պրակտիկայում ի հայտ եկած բազմապիսի նոր, օգտակար մեթոդներն ու ձևերը, ինչպես աշխատանքի հեռանկարային պլանավորումը, կոմունիստների հաշվետվությունների քննարկումը, անհատական զրույցների կազմակերպումը։ Ավելի բազմազան են դարձել կոմունիստներին հասարակական աշխատանքում ներգրավելու ձևերը, ուժեղացել է հսկողությունը կոմունիստ-

ների կողմից կանոնադրական պահանջների կատարման նկատմամբ, ամուր հիմքերի վրա է դրվել կուսակցական ինֆորմացիան։

Ջնայած կուսկազմակերպությունների մարտունակությունը հետևողականորեն բարձրացնելու համար քաղաքային կոմիտեի կողմից կատարած զգալի աշխատանքին, քաղաքի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպությունների գործունեության մեջ դեռևս կան զգալի թերություններ ու բացեր։

Քաղաքում դեռևս ունենք կուսակցական կազմակերպություններ, որոնք բավականաչափ մարտունակ չեն, անբավարար են զբաղվում արտադրական խնդիրներով, սոցիալիստական մրցության կազմակերպմամբ, չեն պայքարում արտադրանքի որակի բարելավման, ներքին ռեզերվների հայտաբերման ու օգտագործման, աշխատանքի առաջավոր փորձի արմատավորման համար։ Այդ խնդիրները պատշաճ կերպով լուծելու գործում կուսկազմակերպություններին հսկայական ծառայություն են մատուցում կուսակցական ժողովները։ «Կուսակցական ժողովը,— ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. նոյեմբերյան պլենումում ասաց Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանը,— հանդիսանում է կոմունիստների կյանքի ղեկավարման կոլեգիալ օրգանը, նրանց միջև կարծիքների գործարար ու սկզբունքային փոխանակման տրիբունան»։ Մինչդեռ առանձին կուսկազմակերպություններում ժողովները չեն կատարում իրենց այդ ֆունկցիան, ինչպես նաև կոմունիստների դաստիարակության դպրոցի իրենց դերը, չեն օգնում վերացնելու եղած թերությունները։ Կահույքի ֆաբրիկայի կուսկազմակերպությունը, օրինակ, ժողովներում հաճախ է անդրադարձել արտադրական պլանների կատարմանը, սակայն աչքաթող է արել կոլեկտիվին հուզող այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ արտադրության ներքին ռեզերվների հայտաբերումը, կոմունիստների քննադատական դիտողությունների կենսագործումը, արտադրության մեջ կոմունիստների ուժերի տեղաբաշխումը և այլն, որոնք կենսական մեծ կարևորություն ունեն ձեռնարկության վերելքի համար։

Մի շարք կուսկազմակերպություններում ժողովներն անցնում են միապաղաղ, կոմունիստների պասիվության պայմաններում։ Պարզ է, նման դեպքերում լինում են նաև շեղումներ ՍՄԿԿ կանոնադրական պահանջներից։ Հեծանիվի գործարանում կատարված ստուգումները պարզեցին, որ առանձին ղեկավար աշխատողներ և կոմունիստներ վատ են զբաղվում նյութական արժեքների և սոցիալիստական ունեցվածքի պահպանության հարցերով, մինչդեռ կուսկազմակերպությունը հաշտվել էր նման վիճակի հետ և անտարբերություն էր դրսևորում։ Ճիշտ է, քաղաքային կոմիտեի բյուրոն ժամանակին բացահայտեց գործարանում տիրող իրավիճակը և մեղավորներին պատժեց, սակայն այդ բանը կարող էր անել կուսկազմակերպությունը իր ժողովում։

Որոշ կուսկազմակերպությունների բյուրոներ և նրանց քարտուղարները ճիշտ չեն օգտագործում իրենց տրված վերահսկողության ֆունկցիան։ Այդ է պատճառը, որ անխուսափելի են դառնում լուրջ վրիպումներն ու թերությունները։ Այսպես, հղկող հաստոցների գործարանի կուսբյուրոյի անբավարար հսկողության և պահանջկոտության, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկցիան չիրականացնելու հետևանքով, գործարանում տեղի ունեցան հավելագրման և ֆինանսական կարգապահության կոպիտ խախտման դեպքեր։

Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ եղած թույլ հսկողության



պատճառով անօրինականություններ ու չարաշահումներ տեղի ունեցան նաև հակաժանտախտային կայանում և № 1 հիվանդանոցում։ Կուսկազմակերպությունները ժամանակին չխորացան հիմնարկությունների ֆինանսատնտեսական գործունեության մեջ, համարձակություն չունեցան բացահայտել եղած լուրջ խախտումները, որի համար քաղաքային կոմիտեի բյուրոն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց և պաշտոնից ազատեց գլխավոր բժիշկներ Վ. Գալոյանին և Ա. Դավթյանին։

Հացամթերումների իրացման բազայի, հանքերի վարչության, գազի շինարարության, թեթև, սննդի արդյունաբերության ձեռնարկությունների կուսկազմակերպություններում ևս թերություններ կան կուսակցական ժողովների նախապատրաստման և անցկացման պրակտիկայում։ Նրանք երբեմն քննարկում են երկրորդական, աննշան հարցեր, իսկ ամբողջ կոլեկտիվին հուզող կենտրոնական, պրոբլեմային խնդիրները դեռևս մնում են տեսադաշտից դուրս։ Հաճախ են ընդունվում ընդհանուր, կոնկրետությունից զուրկ, ոչ ոքի չպարտավորեցնող որոշումներ։

Լինում են դեպքեր, երբ կոմունիստի դատապարտելի արարքները վրիպում են կուսկազմակերպության տեսադաշտից, մնում են անհետևանք, վնասում տվյալ կոմունիստին և գցում կուսկազմակերպության մարտունակությունը։ Կոմունիստների անձնական գործի քննարկման ժամանակ երբեմն էլ ընդունվում են միանգամայն մեղմ, երևույթների ու փաստերի իրական գնահատականը չարտահայտող որոշումներ։ Կուսակցության քաղաքային կոմիտեի բյուրոն, դատապարտելով նման լիբերալ վերաբերմունքը, ՍՄԿԿ շարքերից հեռացրել է կաթի գործարանի, երկաթգծի օրսի (մատակարարման, կարգավորման բաժին), № 3 շինվարչության, «Լենշինտրեստի» № 6 շինվարչության, արտադրական կոմբինատի կուսկազմակերպությունների անդամներ Ջ. Բոյաջյանին, Ս. Ազատյանին, Հ. Ոսկանյանին, Շ. Հակոբյանին, Կ. Հովհաննիսյանին, Ս. Բերնեցյանին, Մ. Նազարեթյանին և ուրիշների։

Այժմ, երբ քաղաքի կուսկազմակերպությունը զբաղված է իններորդ հնգամյակի որոշիչ տարվա տնտեսական խնդիրների լուծմամբ, քաղաքային կոմիտեն ավելի հետևողականորեն է զբաղվում սկզբնական կուսկազմակերպությունները կազմակերպչորեն ամրապնդելու, նրանց մարտունակությունը բարձրացնելու և կոմունիստների ակտիվությունը զարգացնելու հարցով։ Կուսակցության ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի և համամիութենական սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշման պահանջների անթերի կատարումը լուրջ քննություն կլինի կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների համար, և որքան մարտական լինեն նրանք, այնքան հաջողությամբ կլուծվեն իններորդ հնգամյակի որոշիչ տարվա արտադրական խնդիրները։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ս. Վ. ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

*ՍՍՀՄ ժողովուրդների ազգային-պետական զարգացումը, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, հանգեցրեց սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների ձևավորմանը։ Մեծ Հոկտեմբերը կործանեց ցարական Ռուսաստանի կապիտալիստական հիմքերը, վերացրեց սոցիալական կեղեքումն ու ազգային ճնշումը և ստեղծեց սովետական հանրապետությունների ժողովուրդների հանրությունը՝ ՍՍՀ Միությունը, որը հանդիսացավ կոմունիստական հասարակարգի կառուցման համար պայքարող ազատ ժողովուրդների պետական միավորման և եղբայրական համագործակցության առաջին մարմնավորումը մարդկության պատմության մեջ։ «ՍՍՀՄ ստեղծումը,— նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը* ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մասին *իր զեկուցման մեջ,— մարդկության զարգացման նոր դարագլուխ բացած մեծ Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունն է, ազատ ազգերի կամավոր դաշինքի վերաբերյալ մեծ Լենինի գաղափարի պրակտիկ մարմնավորումը»։*

*Սովետական պետությունը համաշխարհային-պատմական նվաճումներ ձեռք բերեց ազգային հարցի՝ մեր բազմազգ երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցման արմատական հարցերից մեկի լուծման գործում. այս հարցի ճիշտ լուծումից մեծապես կախված էր նոր հասարակարգի բախտը։ Սոցիալիստական շինարարության տարիներին կոմունիստական կուսակցությունը և սովետական իշխանությունը սոցիալիստական վերափոխումներ իրականացրին երկրի նախկին ազգային ծայրամասերում, քաղաքական և կուլտուրական առումով վերացրին նրանց փաստական անհավասարությունը, հասան Սովետական Միության բոլոր ժողովուրդների զարգացման մակարդակների հավասարեցման։ Սովետական բազմազգ սոցիալիստական պետությունում ձևավորվեցին նոր՝ սոցիալիստական ազգեր ու ազգություններ, որոնք հիմք հանդիսացան սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության կազմավորման համար։*

*ՍՍՀՄ սոցիալիստական ազգերի և նրանց ազգամիջյան ընդհանրության ձևավորման պատմական պրոցեսը մեծապես կախված էր սովետական բազմազգ պետության ամրապնդումից ու զարգացումից։ Սոցիալիստական շինարարության արմատական խնդիրները, այդ թվում և ժողովուրդների փաստական անհավասարության վերացման անհրաժեշտությունը, կարելի էր և իրոք հաջողությամբ լուծվեցին ՍՍՀՄ կազմի մեջ մտնող միութենական և ինքնավար բոլոր հանրապետությունների ըստ ամենայնի ամրապնդման ու զարգացման բազայի վրա։ Սովետական հանրապետությունների ժողովուրդները սովետական ֆեդերացիայի հիման վրա ազգային սուվերեն պետականություններ ստեղծելու իրենց իդեալները կապեցին ընդհանուր պետական դաշինքի, ռուս մեծ ժողովրդի շուրջը իրավահավասար և կամավոր սկզբունքով միավորելու ձգտման հետ։ Ազգային ազատության՝ ազգային սուվերենության գաղափարը չէր հակասում սովետական բոլոր ազգերի ու ազգությունների համար հզոր պատվար դարձած կամավոր, իրավահավասար ՍՍՀ Միության կազմավորման ու զարգացման գաղափարին։ Այդ գաղափարները անխզելի միասնության մեջ էին, համապատասխանում էին բոլոր ժողովուրդների կենսական շահերին, ուստի դրանց իրականացումը գործուն միջոց հանդիսացավ ՍՍՀՄ ժողովուրդների առավել սերտ մերձեցման և ազգամիջյան ընդհանրության հիմքերի ձևավորման գործում։*

*Սովետական պետությունը սոցիալիստական շինարարության մեջ ներգրավեց սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման տարբեր աստիճաններին կանգնած սովետական բոլոր ազգերին ու ազգություններին։ Ամրապնդվում էր ընդհանուր միութենական պլանային տնտեսությունը, ստեղծվում էր սովետական բոլոր հանրապետությունների իսկական տնտեսական միասնություն։ Նախկին հետամնաց ժողովուրդների արագ առաջադիմելու հետ մեկտեղ տեղի էր ունենում միութենական սովետական պետության կարևորագույն ֆունկցիաների կենտրոնացում։ Սովետական պետության այդ ստեղծարար գործունեության մեջ վճռական նշանակություն ունեցավ ՍՍՀՄ-ում առավել զարգացած և կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող ռուսական բանվոր դասակարգի համակողմանի օգնությունը։*

*ՍՍՀՄ սոցիալիստական ազգերի և նրանց ազգամիջյան ընդհանրության հիմքերի ձևավորումն ընթանում էր հաջողությամբ, քանի որ այդ պրոցեսը տեղի էր ունենում սոցիալիզմի կառուցման, սովետական ազգերի ու ազգությունների հետամնացության վերացման, բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների դասակարգային ինքնագիտակցության բարձրացման, սովետների գործունեության մեջ նրանց համախմբման ու ստեղծագործական ակտիվության զարգացման, սոցիալիստական շինարարության համար նրանց ջանքերի մոբիլիզացման պայմաններում։ Նախկինում ճնշված ժողովուրդների սովետական ազգային պետականության ստեղծումն ու ամրապնդումը, քաղաքական, տնտեսական և կուլտուրական առումով նրանց փաստական անհավասարության վերացումը պատմական այդ սխրանքում որոշիչ դեր ունեցան։*

*Սոցիալիզմի կառուցման ամենադժվարին խնդիրները սերտորեն կապված և փոխադարձաբար պայմանավորված էին բոլոր ազգային ու ինքնավար հանրապետություններում սովետական կարգի ամրապնդման և զարգացման հետ։ Սովետական իշխանության ամրապնդման, քաղաքական ու տնտեսական-կուլտուրական զարգացման հետ միասին տեղի էր ունենում ՍՍՀՄ ժողովուրդների հետագա ազգային-պետական զարգացում՝ միութենական նոր հանրապետությունների, ինքնավարությունների և ազգային օկրուգների ստեղծում ու ամրա-*

պնդում։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական իշխանությունը սովետական շինարարության մեջ հանգամանորեն հաշվի էին առնում տեղական ազգային առանձնահատկությունները, մասնավորապես այն ժողովուրդների մոտ, որոնք դեպի սոցիալիզմ էին ընթանում շրջանցելով զարգացման կապիտալիստական փուլը։ Սովետական ապարատի կատարելագործումը և դրա մերձեցումը բոլոր ազգությունների աշխատավորական զանգվածներին, ՍՍՀՄ բանվոր դասակարգի ազգային հզոր ջոկատների կազմավորումը, կանանց, հատկապես Արևելքի կանանց ազատագրումը, ինտելիգենցիայի ազգային կադրերի պատրաստումը, դասակարգային թշնամիների դիմադրության և մեծապետական շովինիզմի ու տեղական նացիոնալիզմի դրսևորումների հաղթահարումը, ՍՍՀՄ ժողովուրդների ընդհանուր միատիպ սոցիալական կառուցվածքի ձևավորումը, ազգային զարգացման, բոլոր ազգությունների աշխատավորների նախաձեռնության և ինքնագործունեության լիակատար ապահովումը, սովետական դեմոկրատիայի զարգացումը կարևորագույն գործոններ հանդիսացան ո՛չ միայն սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների ձևավորման և բազմազգ սովետական պետության ամրապնդման, այլև ժողովուրդների ազգամիջյան ընդհանրության կազմավորման պրոցեսի համար։

ՍՍՀՄ սոցիալիստական զարգացմանն օբյեկտիվորեն նպաստեց սովետական հանրապետությունների ժողովուրդների՝ գնալով ուժեղացող ընդհանրությունը, նրանց հարաճուն համախմբումը սոցիալիստական շինարարության ընթացքում։ Քաղաքի ու գյուղի վերջին շահագործողների՝ նէպմանների և կուլակների վերացումն ապահովեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի վերջնական հաղթանակը ՍՍՀՄ-ում, որտեղ ընդմիշտ վերացվեցին շահագործող դասակարգերը, մարդու շահագործումը մարդու կողմից։ Արմատական փոփոխություններ կատարվեցին ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների սոցիալ-տնտեսական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքում. նրանք հիմնականում արդեն հավասարեցրին իրենց ընդհանուր զարգացման մակարդակը, ձեռք բերին միատիպ սոցիալ-դասակարգային հասարակական կառուցվածք։ Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում պայմանավորեց նաև սովետական դեմոկրատիայի հետագա զարգացումը, ընդլայնվեցին սովետական քաղաքացիների իրավունքները։

Սոցիալիզմի կառուցման ընդհանուր պրոցեսում ընդլայնվում և ամրապնդվում էին ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների տնտեսական-կուլտուրական և պետական-քաղաքական կապերը, տեղի էր ունենում փոխադարձ մերձեցում, նրանց ինտերնացիոնալ կապերի ամրապնդում։ Բոլոր հանրապետություններում սովետական մարդիկ դարձան սոցիալիստական հասարակության լիիրավ, գիտակից, կուլտուրական անդամներ։ Այս էր բազմազգ սովետական պետության մեծ առաքելություններից մեկը։ ՍՍՀՄ ազգային հարաբերությունների զարգացումը հանգեցրեց ժողովուրդների սովետական հանրության կազմավորմանը և սոցիալիստական նոր ազգերի ձևավորմանը։

Սոցիալ-տնտեսական խոր վերափոխումները, շահագործող դասակարգերի վերացումը, սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կուլտուրական հեղափոխությունը, նոր, ժողովրդական ինտելիգենցիայի ստեղծումը՝ գլխավորապես բանվորներից ու գյուղացիներից, ժողովուրդների միատիպ սոցիալական կառուցվածքի ձևավորումը և արմատական փոփոխությունները ազգային հարաբերությունների բնույթի մեջ, մեր երկրի ժողովուրդների ան-



խախտ բարեկամությունը վճռական նշանակություն ունեցան ՍՍՀՄ նոր, սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների ձևավորման համար։

Սոցիալիստական ազգերի պետական-քաղաքական, սոցիալ-տնտեսական, կուլտուրական և հոգևոր էությունը խորապես ինտերնացիոնալ է, քանի որ այն բխում է սոցիալիզմի՝ հիրավի ինտերնացիոնալ հասարակական ու պետական կարգից։ Սոցիալիստական ազգերն իրենց ազգային ձևով պայքարում են ինտերնացիոնալ խնդիրների ու նպատակների համար, այսինքն՝ սոցիալիստական ազգերի հատկանիշները ձևով ազգային են, բովանդակությամբ՝ ինտերնացիոնալ։

Սոցիալիստական ազգի հատկանիշներից մեկը լեզվի ընդհանրությունն է։ Այն սոցիալիստական հասարակության մարդկանց հաղորդակցման և նրանց հոգևոր կերտվածքի արտահայտման միջոց է, որն անընդհատ զարգանում ու հարստանում է սոցիալիստական ազգերի սերտ շփման պայմաններում։

Սոցիալիստական ազգի տերիտորիայի ընդհանրությունը արտահայտված է ազգային ձևով, քանի որ այն տնօրինում է սուվերեն սովետական ազգային պետականությունը՝ ազգային լեզվով, հաշվի առնելով սոցիալիստական յուրաքանչյուր ազգի ազգային առանձնահատկություններն ու յուրահատկությունները։ Բայց միութենական հանրապետությունների սահմանները միմյանց միջև ունեն ոչ թե պետական, այլ վարչական բաժանման նշանակություն։ Դրանով իսկ յուրաքանչյուր սոցիալիստական ազգի տերիտորիայի ընդհանրությունը ՍՍՀՄ-ում իր բովանդակությամբ կրում է սոցիալիստական բնույթ։

Տնտեսական ընդհանրությունը, որպես սոցիալիստական հատկանիշ, իր բովանդակությամբ ինտերնացիոնալ է և ձևով ազգային։ Այն հիմնված է սոցիալիստական արտադրահարաբերությունների վրա, որոնք ի հակադրություն կապիտալիստականի, բացառում են մի դասակարգի և մի ազգի որևէ տիրապետություն մեկ ուրիշի նկատմամբ։ Այդ ընդհանրությունը միասնական է ՍՍՀՄ բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների համար, քանի որ նրանց հիմքը ՍՍՀ Միության միասնական սոցիալիստական էկոնոմիկան է։ Մեծ Հոկտեմբերը և սոցիալիստական շինարարությունը ՍՍՀՄ-ում հանգեցրին սոցիալիզմի հաստատմանը՝ որպես միասնական հասարակական-քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական կարգ ամբողջ սովետական հանրության, բոլոր սովետական ազգերի ու ժողովուրդների համար՝ այդ նոր, միասնական հասարակական կարգի հաստատման ու զարգացման ազգային ձևերի պայմաններում։ Սոցիալիզմի ինտերնացիոնալ էության շնորհիվ զարգացան ու ծաղկեցին Սովետական Միության սոցիալիստական ազգերն ու ազգությունները։

Սոցիալիստական ազգի հոգեկան նկարագիրը նրա ամբողջ հոգևոր կյանքն է, որը կազմվում է ազգի հասարակական հոգեբանությունից, նրա մարքս-լենինյան գաղափարախոսությունից, որը որոշում է այդ հոգեկան նկարագրի բովանդակությունը և նրա զարգացման ուղղությունը։ Սոցիալիստական ազգերի ձգտումների, զգացումների, պատկերացումների, մտքերի ու խոհերի ամբողջությունը, որոնք կազմում են տվյալ ազգի հասարակական հոգեբանությունը, ընձյուղվում են նրա սոցիալիստական հասարակական կեցությունից։ Սոցիալիստական ազգի հասարակական հոգեբանությունն իր արտահայտությունն է գտնում նրա ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի մեջ, որն արտացոլում է սոցիալիստական ազգի սոցիալ-

տնտեսական և գաղափարական-քաղաքական կյանքի միասնությունը։ Այդ պատճառով էլ սոցիալիստական ազգի հոգեկան նկարագիրը, հանդիսանալով ձևով ազգային, դրա հետ մեկտեղ ինտերնացիոնալ է իր բովանդակությամբ. այն արտահայտում է շահագործումից զերծ և սոցիալիզմ, կոմունիզմ կառուցող ժողովրդական զանգվածների առավել էական հոգեկան գծերը, այսինքն՝ համաժողովրդական է, իրոք ազգային։

Այսպիսով, ՍՍՀՄ-ում ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման առաջին էտապը, որն սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, հանգեցրեց ամեն մի ազգային ճնշման վերացման, սովետական պետությունում ազգային զարգացման իսկական ազատության ապահովման, ոչ միայն իրավական, այլև փաստական հավասարության հիման վրա սոցիալիստական ազգային հարաբերությունների հաստատման։ Տեղի ունեցան ազգային կյանքի բոլոր կողմերի և ազգային հարաբերությունների որակական խոր վերափոխումներ։ ՍՍՀՄ-ում ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման գլխավոր առանձնահատկությունն ու պայմանը նրանց զարգացման երկրորդ էտապում՝ զարգացած սոցիալիզմի ձևավորման էտապում, երբ սոցիալիզմը հաղթանակեց լրիվ ու վերջնականապես, պետք է լինեին և իրոք եղան սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների ծաղկումն ու մերձեցումը արդեն բուն սոցիալիստական հիմքի վրա, լրիվ չափով դրսևորվեցին, ամրապնդվեցին ու շարունակեցին զարգանալ բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների ընդհանուր գծերը, ամենից առաջ՝ ժողովուրդների բարեկամությունը, որպես սովետական հասարակության զարգացման շարժիչ ուժ։

Սոցիալիստական ազգի բնորոշ հատկանիշներն ու գծերը, Սովետական Միության սոցիալիստական ազգերի համագործակցությունը հիմք հանդիսացան սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության, ձևավորման համար։ Ազգայինի և ինտերնացիոնալիստականի ճիշտ հարաբերակցության շնորհիվ առավել սերտորեն կապվեցին միմյանց սոցիալիստական ազգերն ու ազգությունները։ Հենց սոցիալիստական ազգերն ու ազգությունները հիմք հանդիսացան սովետական ազգամիջյան հանրության և պատմական նոր կատեգորիայի՝ սովետական ժողովրդի ձևավորման համար։

Սոցիալիստական բոլոր ազգերն ու ժողովուրդները ձևավորվել են միասնական սովետական պետությունում, որտեղ սոցիալիստական ազգային հարաբերությունների հիմքում դրվել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության սկզբունքները, այսինքն՝ տեղի են ունեցել արմատական փոփոխություններ ՍՍՀՄ ազգային հարաբերությունների բնույթի մեջ։ Մարքս-լենինյան գաղափարախոսությունը, ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականությունը կռել ու կռում են բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների շահերի ու նպատակների միասնությունը։ Սոցիալիստական ազգերի ու ազգությունների բնույթի մեջ ձևավորվել և աճել են համասովետական և համապետական գծեր, որոնք արտահայտում են սովետական մարդկանց առավել ընդհանուր և էական շահերը՝ սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Այս ամենը վճռականորեն ազդեց սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության, ձևավորման վրա։ Սովետական ժողովուրդը ձևավորվել է որպես



բազմազգ երկրի բանվորների և գյուղացիների դասակարգային դաշնադրության, որպես սոցիալ-քաղաքական ինտերնացիոնալ հանրություն։

Սոցիալիստական ազգերի հատկանիշները իրենց զարգացման մեջ ձեռք են բերել սոցիալիստական բոլոր ազգերի համար ընդհանուր գծեր։ ՍՍՀՄ տերիտորիայի ընդհանրությունը, նրա սոցիալ-տնտեսական, կուլտուրական և քաղաքական կյանքի միասնությունը, հոգևոր ու հոգեկան կերտվածքի ընդհանուր գծերը, սոցիալիստական ազգերի ու ազգությունների սովետական հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը պայմանավորեցին նրանց ծաղկումն ու միաժամանակ մերձեցումը իրար հետ։ Այսպիսով, սոցիալիզմի պայմաններում սովետական ժողովուրդը ձևավորվեց ժողովուրդների սովետական հանրության ըստ ամենայնի զարգացման, ՍՍՀՄ-ում նոր, սոցիալիստական ազգերի ու ազգությունների կազմավորման և ոչ թե նախորդ հանրությունների բացասման բազայի վրա, ինչպես դա տեղի է ունենում շահագործողական հասարակարգում։ Սովետական ժողովուրդը, որպես ազգամիջյան, ինտերնացիոնալ կարգի սկզբունքորեն նոր պատմական հանրություն, որակապես նոր է սոցիալ-տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական իմաստով՝ որպես ՍՍՀՄ աշխատավորների կյանքի բոլոր ոլորտների սոցիալիստական դաշնադրություն։

Սոցիալիստական պետության պայմաններում ազգերի ու ազգությունների ազգային-պետական զարգացումը և մերձեցումը ընթանում է նրանց սուվերենության ըստ ամենայնի պահպանման հիման վրա, որը և կանխորոշեց մեծ ու փոքր ժողովուրդների իրավահավասարությունը և նրանց համախմբումը միասնական սովետական պետության՝ կամավոր սոցիալիստական ֆեդերացիայի մեջ։ Այդ պատճառով սովետական ազգերն ու ազգությունները երբեք միմյանց և ամբողջ ՍՍՀՄ-ին չեն հակադրել իրենց ազգային-պետական զարգացումը և իրենց ազգային սուվերենությունը։ Ընդհակառակը, ի դեմս ՍՍՀՄ-ի նրանք տեսնում են իրենց բարգավաճման հիմքը և ամեն կերպ շահագրգռված են ինչպես առանձին-առանձին բոլոր սովետական հանրապետությունների, այնպես էլ ամբողջ ՍՍՀ Միության ամրապնդմամբ ու զարգացմամբ։

ՍՍՀՄ-ում գնալով ավելի է ծաղկում սովետական հայրենասիրությունը։ Նրա քաղաքական հիմքը սովետական հասարակական և պետական կարգն է, որը աշխատավորներին տվել է իսկական հայրենիք։ Սովետական հայրենասիրության սոցիալ-տնտեսական հիմքը արտադրության սոցիալիստական եղանակն է, որը լրիվ հաղթանակել է ՍՍՀՄ-ում։ Սովետական հայրենասիրության գաղափարախոսական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է։ Սովետական հայրենասիրության արմատական առանձնահատկություններից մեկն այն է, որ հայրենիքի նկատմամբ աշխատավորների տածած սերը զուգակցվում է գոյություն ունեցող հասարակական ու պետական կարգի նկատմամբ նրանց ունեցած սիրո հետ։ Այդ կարևորագույն հանգամանքը եղել և մնում է սովետական մարդկանց ստեղծագործական ակտիվության հիմքը։

Անհրաժեշտ է հաշվի առնել նաև ՍՍՀՄ-ում սոցիալիստական ազգերի ձևավորման ու զարգացման մի քանի շատ էական առանձնահատկություններ, որոնք զգալի չափով ազդել են սովետական ժողովուրդ հանրության ձևավորման պրոցեսի վրա։ Այսպես, 1941 թվականին ուկրաինական, բելոռուսական սոցիալիստական ազգերի առջև ծառացան իրենց վերամիավորված եղբայրների ու քույրերի՝ Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի աշխա-

տավորական զանգվածների շրջանում սոցիալիստական շինարարություն ծավալելու խնդիրները։ Սոցիալիզմի քուրան պետք է կարճ ժամանակում միասնական ուկրաինական ու բելոռուսական սոցիալիստական ազգերի մեջ միաձուլեր արևմտյան ուկրաինացիներին ու բելոռուսներին։ Առավել բարդ խնդիր էր վերամիավորված մոլդավական ժողովրդի վերափոխումը սոցիալիստական ազգի, քանի որ նախկինում բոյարական Ռումինիայում էր ապրում այդ ժողովրդի մեծ մասը։ Նոր էր սկսվել նաև լատիշական, լիտվական, էստոնական սոցիալիստական ազգերի ձևավորման պրոցեսը։ Այս բոլոր խնդիրների արագ լուծմանը պետք է նյութապես ու բարոյապես աջակցեր ՍՍՀՄ ժողովուրդների միավորված ընտանիքը։ Սոցիալիստական նոր ազգերի ձևավորումը և նրանց սոցիալիստական ազգային փոխհարաբերությունների հաստատումը Սովետական Միության սոցիալիստական մյուս ազգերի ու ժողովուրդների հետ և, ամենից առաջ, ռուս սոցիալիստական ազգի հետ լրիվ ավարտվեցին ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիզմի կառուցման հետ միաժամանակ։

Այսպիսով, ժողովուրդների սովետական հանրությունը զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման հետ վերափոխվեց սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության։ Լ. Ի. Բրեժնևն ասում է. «Մեր երկրում մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի առաջացումը մեր մեծ նվաճումն է, ընկերնե՛ր։ Մենք իրավունք ունենք դա համարելու տնտեսական ու սոցիալ-քաղաքական այն վերափոխումների յուրօրինակ ընդհանրացման արդյունքը, որ կես դարի ընթացքում կատարվել են մեր երկրում» (ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մասին, էջ 30)։

Սոցիալիստական ազգերի ու ազգությունների բնույթի ճիշտ ըմբռնումը կարևոր է սովետական հասարակության հետագա զարգացման համար։ Սովետական ժողովուրդը ոչ թե նոր ազգ է, այլ ինտերնացիոնալ-ազգամիջյան մի հանրություն, որն ընդգրկում է ՍՍՀՄ ազգերն ու ժողովուրդները, որոնց դեմքը, նրանց ամբողջ յուրակերպությամբ հանդերձ, արտացոլում է սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր սովետական, ընդհանուր սոցիալիստական գծերը, նրանց սոցիալ-քաղաքական միասնության նոր, ավելի բարձր աստիճանը, նրանց ինտերնացիոնալ համախմբումը բարեկամական դասակարգերի և սոցիալական խմբերի միաձույլ միասնության հիման վրա։ Ուստի, ՍՍՀՄ ժողովուրդների ազգամիջյան նոր հանրությունը հանդիսացավ, ամենից առաջ, ՍՍՀՄ բոլոր աշխատավորների՝ բանվոր դասակարգի, կոլտնտեսականների, ժողովրդական ինտելիգենցիայի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի բոլոր աշխատողների սոցիալիստական դաշնադրությունը՝ անկախ ազգությունից։ Դրա հետ մեկտեղ ՍՍՀՄ ժողովուրդների ազգամիջյան նոր հանրությունը ո՛չ թե սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների հասարակ գումարն է, այլ նրանց միասնության մի նոր, ավելի բարձր աստիճանը։ ՍՍՀՄ ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում ՍՄԿԿ XXIV համագումարը դրեց հետևյալ խնդիրները. ձգտել սոցիալիստական բոլոր ազգերի հետագա բարգավաճման և նրանց աստիճանական մերձեցման, աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության ոգով, ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային սահմանափակության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով, բոլոր ազգերի ու ազգությունների նկատմամբ հարգանքի ոգով (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 268)։

---

# ՄԱԹԵՄԱՏԻԿԱՆ ԵՎ ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

Ժամանակակից գիտական կյանքի կարևոր առանձնահատկություններից մեկը հետազոտության մաթեմատիկական մեթոդների և, որոշ իմաստով նաև, մաթեմատիկական մտածելակերպի ներթափանցումն է մարդկային գործունեության գրեթե բոլոր ոլորտները։ Այսօր մենք ականատես ենք գիտելիքների մաթեմատիկացման ինտենսիվ պրոցեսի, երբ հետազոտության մաթեմատիկական մեթոդները ներթափանցում են գիտությունների ամենատարբեր բնագավառների հյուսվածքների, նրանց տրամաբանական կառուցվածքի մեջ։ Դրա հետևանքով էլ խնդիր է դրվում վերակառուցել այդ գիտությունները մաթեմատիկայի օրինակով և նրա պահանջներին համապատասխան։ Գիտական տեսությունների կառուցման աքսիոմատիկ եղանակը, որը մինչև մեր դարի սկիզբը կիրառվում էր բացառապես մաթեմատիկական տեսություններում, դուրս է եկել այդ շրջանակներից։ Ֆիզիկայի այնպիսի բաժիններ, ինչպիսիք են հարաբերականության հատուկ տեսությունը, թերմոդինամիկան և այլն, այժմ կառուցված են աքսիոմատիկ մոդելով։ Այդ մեթոդի կիրառման բավականին հաջող փորձեր են արվում կենսաբանության և նույնիսկ հասարակական գիտությունների բնագավառում։

Այնուհետև, մաթեմատիկան հանդես է գալիս որպես արդի գիտատեխնիկական հեղափոխության անքակտելի մասը։ Ահա թե ինչու այսօր խնդիր է դրվում առավել խորությամբ մշակել տեսական ու կիրառական մաթեմատիկայի, կիբեռնետիկայի այնպիսի պրոբլեմներ, որոնք հնարավորություն կընձեռեն ավելի լայնորեն կիրառել մաթեմատիկական մեթոդները ժողովրդական տնտեսության մեջ, ավտոմատացնել արտադրապրոցեսները և կատարելագործել կառավարումը։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենան այժմ ո՛չ թե պարզապես հաշվման պրոցեսի արագացման միջոց է, այլ ինֆորմացիայի ստացման ու վերամշակման որակապես նոր և ավելի արդյունավետ եղանակ, որի շնորհիվ միայն հնարավոր կդառնա նոր, կատարելագործված տեխնիկայի կիրառումը։ Արագ հաշվումներ կատարելը, որն առաջին հայացքից թվում է սոսկ քանակական բնութագիր, զարգացման որոշ աստիճանում ձեռք է բերում նոր որակական առանձնահատկություն։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաները հնարավորություն են ընձեռում արտադրության պլանավորման և օպտիմալացման գործում չսահմանափակվել սոսկ այնպիսի վճիռներ ընդունելով, որոնք ինտուիտիվ մակարդակի վրա թվում են ավելի նպատակահարմար, այլ համեմատել

միմյանց հետ բոլոր հնարավոր տարբերակները և ընտրել դրանցից լավագույնը: Այսպիսով, «արդյունավետ» հասկացությունն ինտուիտիվ ակնհայտի բնագավառից փոխադրվում է մաթեմատիկական հաշվումների բնագավառ, գուցե ավելի կոպիտ, բայց ավելի պատկերավոր ասած՝ «աչքաչափից» վերածվում է կոնկրետ թվի ու հաշվի:

Ընդ որում, որքան բարդ է հասարակության տնտեսական օրգանիզմը, այնքան կառավարման և պլանավորման ոլորտում մաթեմատիկական մեթոդների կիրառումն առավել մեծ արդյունք կարող է տալ: Մեր ժողովրդական տնտեսությունը, հատկապես վերջին տարիներին, հսկայական չափերով ընդլայնել է իր մասշտաբները: Դա արտահայտվում է ինչպես նոր ձեռնարկությունների ստեղծմամբ, այնպես էլ գոյություն ունեցողների ընդարձակմամբ: Բնականաբար, ընդլայնվում են նաև ինչպես ներգործարանային, այնպես էլ միջգործարանային գիտական ու տնտեսական կապերը: Զուտ ձևականորեն կարելի է ասել, որ եթե համակարգի տարրերի թիվը աճում է գծային օրենքով, ապա նրանց միջև եղած կապերը աճում են առնվազն քառակուսային ֆունկցիայով: Հետևաբար, արտադրության աճի հետ մեկտեղ կուտակվում է ինֆորմացիայի այնպիսի վիթխարի քանակություն, որն անհնար է սիստեմավորել ու մշակել առանց ընդհանուր ձևական մաթեմատիկական մեթոդների կիրառման, ելնելով միայն կյանքի փորձից, հենվելով միայն ողջախոհության վրա: Այլ կերպ ասած, մեծ քանակությամբ ռեսուրսների օգտագործման ընթացքում մեծանում է նաև սխալվելու հավանականությունը: Ուստի և անհրաժեշտ է դառնում հետազոտման ու պլանավորման այնպիսի մեթոդների մշակումը, որոնք հենվեն ավելի հստակ չափանիշների վրա, քան կառավարողի ինտուիցիան է, և ապահովեն խստիվ ու միանշանակ արդյունքների ստացումը: Մեր երկրում կենտրոնացված կառավարումը մեծ հեռանկարներ է բացում կառավարման կոմպլեքսային ավտոմատացման համար, ընդհուպ մինչև ամբողջ երկրի մասշտաբով կառավարման ավտոմատացված համակարգի ստեղծումը: Ներկայումս ուղիներ են նշվում առանձին ձեռնարկությունների կառավարման ավտոմատ համակարգից անցնելու միջճյուղային համակարգերի կառավարմանը:

Մենք համառոտակի խոսեցինք էկոնոմիկայում մաթեմատիկական մեթոդների կիրառման մասին, նպատակ ունենալով ցույց տալ այն հսկայական դերը, որ կատարելու է մաթեմատիկան մոտ ապագայում: Սակայն հասարակական կյանքում մաթեմատիկայի կիրառումը չի սահմանափակվում միայն երկրի պրակտիկ տնտեսական պրոբլեմների լուծումով: Մաթեմատիկան հնարավորություն է ընձեռում նոր ձևով ըմբռնելու քաղաքատնտեսության այնպիսի տեսական պրոբլեմներ, ինչպիսիք են գնագոյացումը, կառավարման հիերարխիայի հետ կապված խնդիրները և այլն: Այն հաջող կիրառվում է այնպիսի սոցիալական խնդիրների լուծման գործում, ինչպիսիք են բնակչության աճի և հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի փոփոխության ուղղության կանխատեսումը, երկրի կրթական սիստեմի կատարելագործումը և այլն: Ավելին, այսօր, «մաթեմատիկական ֆիզիկա», «մաթեմատիկական վիճակագրություն» ավանդական տերմինների կողքին շրջանառության մեջ են մտել «մաթեմատիկական տրամաբանությունը», «մաթեմատիկական լեզվաբանությունը» և այլն: Եվ մաթեմատիկացման այդ պրոցեսն ընթանում է այնպիսի թափով, որ թվում է, թե չի կարող լինել գիտության մի բնագավառ,



որին երբևիցե հնարավոր չլինի կցել «մաթեմատիկական» արտահայտությունը:

Հավանաբար ապագա հետազոտողներին ավելի հեշտ կլինի պատշաճ հեռավորությունից առավել ճիշտ գնահատել ժամանակակից կյանքում մաթեմատիկայի այս «էքսպանսիան», ավելի հիմնավոր ձևով բացատրել դրա պատճառներն ու նշել նրա կիրառման սահմանները: Մենք կանգ կառնենք այդ պրոցեսի հետ առնչվող տեսական մեթոդաբանական բնույթի մի քանի հարցերի վրա միայն: Առաջին հարցը, որ բնականաբար ծագում է, վերաբերում է կյանքի բոլոր բնագավառներում մաթեմատիկական մեթոդների ներթափանցման պատճառներին և դրա ազդակներին: Արդյոք այդ ազդակները պետք է որոնել իր՝ մաթեմատիկայի ներսո՞ւմ, թե՞ դրանից դուրս: Ինչո՞վ են պայմանավորված ամենատարբեր բնագավառներում մաթեմատիկական մեթոդների կիրառման հաջողությունները:

Առանց վարանման կարելի է պնդել, որ ինքնին վերցրած մաթեմատիկան զարգացման իր տեմպերով չի գերազանցում, օրինակ, ֆիզիկային, քիմիային կամ կենսաբանությանը: Ավելին, մաթեմատիկան զիջում է այդ գիտություններին նաև մարդկային կյանքի վրա ունեցած անմիջական ազդեցության տեսակետից: Իրոք, ժամանակակից ֆիզիկան մարդու առջև բացում է բնության նորանոր գաղտնիքներ, նրա տրամադրության տակ է դնում էներգիայի վիթխարի աղբյուրներ, հզոր շարժիչներ և հաղորդակցության բարդ համակարգեր, որի շնորհիվ մարդն ազատվում է ֆիզիկական աշխատանքի բեռից և իշխում բնության վրա: Քիմիայի նվաճումներն անմիջական կիրառություն են գտնում ժողովրդական տնտեսության մեջ: Նրանց կիրառման ոլորտը այսօր սկսվում է օրգանական նյութերի սինթեզումից և ավարտվում նրանով, ինչը մենք պատկերավոր կերպով կոչում ենք «կենցաղային քիմիա»: Կենսաբանությունը մոտենում է կյանքի ամենախորհրդավոր գաղտնիքի՝ ժառանգականության մեխանիզմի բացահայտմանը: Ինչ վերաբերում է մաթեմատիկային, ապա այն չի լուծում մարդկային կյանքի համար անմիջական պրակտիկ նշանակություն ունեցող խնդիրները: Այսուհանդերձ, հասարակության գիտատեխնիկական առաջընթացն անմիջականորեն կապվում է մաթեմատիկայի հետ, մաթեմատիկական մեթոդներն են ներթափանցում գիտության ամենատարբեր բնագավառները և ոչ թե, օրինակ, ֆիզիկայի կամ քիմիայի մեթոդները:

Ինչո՞ւ:

Առաջին հերթին դա պայմանավորված է հենց իր՝ մաթեմատիկայի, առարկայով ու նրա մեթոդով: Ուստի և ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխությունը, որքանով որ այն կապված է մաթեմատիկայի կիրառման հետ, այնքանով էլ նշանակում է հեղափոխություն հենց մաթեմատիկայի ներսում:

Մաթեմատիկան, ամենից առաջ, հատկանշական է նրանով, որ ուսումնասիրում է երևույթների քանակական կողմը: Այն միանգամայն վերանում է ուսումնասիրվող երևույթների բնույթից, ֆիզիկական պրոցեսների կոնկրետ առանձնահատկություններից և դիտում է դրանք մաքուր ձևով, որպես լոկ թվեր և սահմանում է նրանց միջև առնչություններ: Սրանով իսկ ստեղծվում են զուտ ֆունկցիոնալ մոդելներ, որոնք միևնույն հաջողությամբ կարող են կիրառվել միանգամայն տարբեր բնույթի երևույթների նկատմամբ:

Մաթեմատիկայի հիմքերի տրամաբանական վերլուծությունը, որն սկիզբ էր առել մեր դարի արշալույսին, կյանքի կոչեց մաթեմատիկայի առարկայի

նոր՝ ավանդականից միանգամայն տարբեր, ըմբռնում։ Ձևականացված աքսիոմատիկ մեթոդի ծավալման և բազմապիսի ձևական-տրամաբանական հաշիվների ստեղծման շնորհիվ պարզ դարձավ, որ մաթեմատիկական իմացության էությունը պետք է որոնել ոչ այնքան նրա ուսումնասիրման օբյեկտների, որքան նրա մեթոդների մեջ։ Դրա հետևանքով մաթեմատիկան դադարեց դիտվել զուտ որպես հաշվման արվեստ և ըմբռնվեց որպես ինչ-որ յուրահատուկ լեզու, իրականության արտացոլման մի ուրույն եղանակ, որն ի վիճակի է աշխարհը ներկայացնելու ո՛չ միայն քանակական, այլև որակական տեսակետից։ Մեր կարծիքով, քանակական առնչություններից որակական ստրուկտուրաների ուսումնասիրությանն անցնելով հենց պայմանավորվում է այն հեղափոխությունը մաթեմատիկայում, որի շնորհիվ այն անսահմանափակ կիրառություն է գտնում կյանքի բոլոր բնագավառներում։

Նշված, այսպես ասած, «ներքին» գործոններից բացի, մաթեմատիկական մեթոդների կիրառման ոլորտի ընդլայնումը պայմանավորված է նաև «արտաքին» գործոններով։ Ինչպես արդեն ասացինք, հասարակական կյանքում կուտակված վիթխարի քանակով ինֆորմացիայի մշակման համար ճշգրիտ ձևական մեթոդների կիրառումը կենսական անհրաժեշտություն է։ Նույնը հավասարապես վերաբերում է նաև բնական գիտություններին։ Ժամանակակից բնագիտության զարգացման հիմնական առանձնահատկությունը մեզ շրջապատող անմիջական առարկայական աշխարհի ուսումնասիրությունից ավելի ու ավելի հեռանալն է։ Դրա հետևանքով առաջանում է որոշակի խզում գիտական տեսությունների տրամաբանական կատարելության և դրանց դրույթների անմիջական ակնհայտ պատկերացման միջև։ Դա մասնավորապես արտահայտվում է նրանում, որ, մի կողմից՝ միկրո, մյուս կողմից՝ մեգա աշխարհների օրինաչափությունները անհնարին է դառնում ձևակերպել առօրյա մտածողության միջոցներով։ Նրանք կարող են արտահայտվել խիստ վերացական ձևերի միջոցով միայն։ Եվ միանգամայն բնական է, որ ժամանակակից ձևական մաթեմատիկական կառուցվածքները ծառայում են որպես բնության օրենքների արտահայտման միակ արդյունավետ և միակ հարմար միջոցը։ Իրոք, անհնարին է պատկերացնել հարաբերականության տեսությունը, առանց թենզորական հաշվի ձևական ապարատի։ Ներատոմային աշխարհի օրինաչափությունները չեն կարող այլ կերպ արտահայտվել, քան խմբերի ու մատրիցաների տեսության վերացական լեզվի միջոցով։ Այսպիսով, ժամանակակից կյանքի մաթեմատիկացումը պայմանավորված է մաթեմատիկական մտածողության երկու կողմերով, որոնք պայմանականորեն կարելի է անվանել քանակական և որակական։ Մի կողմից ստեղծվում են քանակական ֆունկցիոնալ առնչություններ, որոնք միևնույն հաջողությամբ կարող են կիրառվել կյանքի միանգամայն տարբեր բնագավառներում։ Մյուս կողմից ստեղծվում են ընդհանուր վերացական մոդելներ, որոնց միջոցով միայն հնարավոր է արտահայտել բնության բարդ երևույթները։

Մաթեմատիկական մեթոդի առավելությունը, նախ այն է, որ հենվում է վերացական թվերի վրա, որոնց միջև սահմանված են խստիվ ու միանշանակ հարաբերություններ և հենց դա էլ ապահովում է ինչպես այդ մեթոդների համընդհանուր կիրառումը, այնպես էլ ստացված արդյունքների ճշգրտությունն ու միարժեքությունը։ Պատկերացնենք այսպիսի խնդիր։ Կան մի քանի գործարաններ ու հումքի աղբյուրներ՝ տեղաբաշխված որոշակի ձևով։ Պահանջվում է



այդ գործարանների հումքի մատակարարումը կազմակերպել այնպես, որ տեղափոխման ծախսերը կազմեն հնարավոր նվազագույնը։ Դրա համար պետք է կառուցել մաթեմատիկական ֆունկցիա, որն այդ օբյեկտների դիրքը բնութագրող մեծությունները կապի միմյանց, և ապա գտնել այդ մեծությունների այն արժեքները, որոնց դեպքում կառուցված ֆունկցիան ընդունում է մինիմում արժեք։ Դրա համար, բնականաբար, պետք է վերանալ քննարկվող օբյեկտների կոնկրետ բովանդակությունից և դրանք դիտել ոչ այլ ինչ, քան կետեր, իսկ նրանց միջև եղած հեռավորությունները՝ հատվածներ։ Հասկանալի է, որ ստացված ֆունկցիոնալ առնչությունը միանգամայն կիրառելի կլինի ո՛չ միայն այդ խնդրի, այլև նույն կառուցվածքն ունեցող խնդիրների մի ամբողջ դասի նկատմամբ։ Իրոք, ժամանակակից կիրառական մաթեմատիկայի բաժիններից մեկում՝ գրաֆների տեսության մեջ, մշակվում են մեթոդներ այդպիսի խնդիրների լուծման համար, որոնք կրում են ցանցային պլանավորում ընդհանուր անունը։

Այսպիսով, կյանքի ամենատարբեր բնագավառներում մաթեմատիկական մեթոդների կիրառման հաջողությունը պայմանավորված է մասամբ նրանով, թե տվյալ բնագավառի հասկացություններն ինչպիսի ճշտությամբ կարող են արտահայտվել քանակական ցուցանիշներով։ Հասկանալի է, որ որքան բարդ ու բազմակողմանի է ուսումնասիրվող երևույթը, այնքան դժվար է է նրա բաղադրիչների համար չափման միավոր ընտրելը և, հետևաբար՝ նրա մաթեմատիկացումը։

Թերևս հարկ չկա հանգամանորեն քննարկելու այն պատմական պրոցեսը, որի ընթացքում քանակական բնութագրերը թափանցել են ուսումնասիրման այնպիսի բնագավառներ, ինչպիսիք են մոլեկուլյար ֆիզիկան, քիմիան, էլեկտրամագնիսականությունը և այլն, դրանով իսկ սկիզբ դնելով այդ բնագավառների մաթեմատիկացմանը։ Նկատենք միայն, որ, որպես կանոն, քանակական գնահատականներն անսահմանափակ կիրառում են գտնում հիմնականում անկենդան բնության մեջ։ Ինչ վերաբերում է կենսաբանական և, առավել ևս, սոցիալական երևույթներին, ապա այստեղ դրանք իրենց համար ճանապարհ են հարթում մեծ դժվարությամբ։ Չէ՞ որ անհնար է պատկերացնել, թե քանակական գնահատականներով կարելի է սպառիչ կերպով ներկայացնել մարդու հոգեկան աշխարհը, կամ հասարակական այնպիսի երևույթներ, ինչպիսիք են իրավական, բարոյական, գեղագիտական պատկերացումները։ Սակայն նկատենք, որ այս բնագավառներում ևս վիճակն այնքան անհուսալի չէ, ինչպես կարող է թվալ առաջին հայացքից։ Մարդու կողմից երևույթների հոգեբանական և սոցիալական գնահատականները թեև ուղղակի ձևով չեն արտահայտվում թվով, բայց և այնպես հենվում են համեմատությունների վրա և, հետևաբար, ինչ-որ իմաստով իրենց մեջ պարունակում են քանակական մոտեցում։ Ուստի, պետք է հուսալ, որ եթե կարողանանք ազատվել այդ գնահատականների սուբյեկտիվ երանգից, մարդու վրա նրանց թողած սուբյեկտիվ ազդեցությունից, ապա այստեղ էլ հնարավոր կլինի մշակել ինչ-որ աստիճանի ճշգրիտ քանակական չափանիշներ։

Գիտությունների մաթեմատիկացման արդի տենդենցը, թեև զգալի չափով կապված է քանակական մեթոդի կիրառման հետ, բայց չի հանգում դրան և կյանքի տարբեր բնագավառներում մաթեմատիկական մեթոդների կիրառումը

ամենևին էլ չի նշանակում այդ բնագավառներում հաշվման ապարատի կիրառում միայն։

Հարկ է նկատել, որ մաթեմատիկան սոսկ որպես հաշվման արվեստ դիտելը ճիշտ չէ ոչ միայն ժամանակակից, այլև անցյալի մաթեմատիկայի նկատմամբ։ Անկասկած, առաջին մաթեմատիկական գիտելիքներն անմիջականորեն վերաբերել են մեզ շրջապատող առարկայական աշխարհին՝ հողային տարածությունների մակերեսներին, ամանների տարողությանը, առարկաների քանակին և այդ իմաստով դրանք, ըստ էության, չեն տարբերվել բնագիտական գիտելիքներից։ Սակայն Էվկլիդեսի հռչակավոր «Հիմունքներից» սկսած, մաթեմատիկան արդեն շարադրվում է որպես դեդուկտիվ տեսություն և դրանով իսկ որոշակի բաժանման գիծ է անցկացվում ճշմարտության ձևական-մաթեմատիկական և փաստական ըմբռնումների միջև։ Դա մաթեմատիկայի իրականությունից կտրվելու առաջին աստիճանն էր, երբ ուսումնասիրության ոլորտ են ներգրավվում վերացական մտային օբյեկտներ։

Նոր ժամանակներում, դասական մաթեմատիկական անալիզի ստեղծման շնորհիվ, մաթեմատիկան հաստատուն թվերից և քանակներից անցնում է վերացական մեծության գաղափարին, դիսկրետ վիճակների ուսումնասիրությունից՝ անընդհատ պրոցեսների ուսումնասիրությանը։ Հաջորդ շրջադարձային մոմենտը, ինչպես հայտնի է, կապված է ոչ-էվկլիդյան երկրաչափության ստեղծման հետ։ Էվկլիդյանից տարբեր այլ երկրաչափական համակարգի տրամաբանական հնարավորությունը հիմք ծառայեց մաթեմատիկայի առարկայի ավանդական ըմբռնման վերաիմաստավորման համար։ Այստեղ արդեն ճշմարիտ դրույթները արտածվում են աքսիոմներից զուտ տրամաբանական միջոցներով և այն էլ առանց այն հասկացությունների իմաստի վերլուծության, որոնք ամփոփված են աքսիոմների մեջ։ Դրանով իսկ ջնջվում են աքսիոմների և սահմանումների միջև եղած անջրպետները և աքսիոմները դադարում են դիտվել որպես առարկայական աշխարհին վերաբերող ինքնին ակնհայտ դրույթներ։ Ձևական աքսիոմատիկայի կիրառման շնորհիվ մաթեմատիկայի շատ բաժիններ, որոնք մինչ այդ դիտվում էին որպես միանգամայն ինքնուրույն, ներկայացվեցին որպես մեկ միասնական ձևական համակարգի տարբեր մեկնաբանություններ։

Այսպիսով, մաթեմատիկան իր ներքին զարգացման տրամաբանությամբ ընդլայնում է իր հետազոտության բնագավառը։ Հաղթահարվում է մաթեմատիկայի առարկայի մասին ավանդական պատկերացումը, երբ այն դիտվում էր որպես գիտություն քանակների և ձևերի մասին։ Ժամանակակից մաթեմատիկան, ինչպես նկատում է ակադեմիկոս Ա. Ն. Կոլմոգորովը, ուսմունք է զուտ ձևերի ու ստրուկտուրաների մասին, որոնք միայն մասնավոր դեպքում կարող են մեկնաբանվել որպես բովանդակային առնչություններ թվերի և երկրաչափական ձևերի միջև։ Ուրեմն, մաթեմատիկան ուսումնասիրում է ո՛չ միայն փոփոխական մեծություններ, այլև, որ ամենակարևորն է նրա կիրառման հիմքերի բացահայտման համար, նաև փոփոխական հարաբերություններ։

Մաթեմատիկան վերածվում է ուսմունքի՝ զուտ ձևական ստրուկտուրաների մասին։ Եվ հենց մաթեմատիկայի առարկայի այս ձևական բնույթով է բացատրվում նրա կիրառման չափազանց լայն բնագավառը։ Իր ձևական բնույթի շնորհիվ մաթեմատիկան ստեղծում է իրական աշխարհի ծայր աստիճանի վերացական ու ճշգրիտ մոդելներ, ի տարբերություն բնագիտական մոդելների,



որոնք ավելի քիչ ճշգրիտ են, բայց ավելի բովանդակային են։ Սրանով է հենց բացատրվում մաթեմատիկական հայտնագործության առանձնահատուկ բնույթը։ Բնական գիտությունները բացահայտում են աշխարհի առարկաների նոր, մինչ այդ անհայտ կողմեր ու հարաբերություններ, մաթեմատիկան հայտնագործում է մինչ այդ անհայտ տրամաբանական մոդելներ, որոնք իրականության ճանաչման նոր աղբյուր են ծառայում։ Այլ կերպ ասած, բնական գիտությունները նշում են աշխարհի օբյեկտիվ օրինաչափությունները, այնինչ մաթեմատիկան ցույց է տալիս, թե տրամաբանորեն ինչպիսի օրինաչափություններ են հնարավոր վերագրել աշխարհին։ Դրանով իսկ մաթեմատիկան հանդես է գալիս ոչ այնքան որպես հաշվման արվեստ, որքան որպես լեզու՝ ձևակերպելու համար բնության ամենաբարդ օրինաչափությունները։

Մարքսիստական փիլիսոփայության տեսանկյունից մարդկային իմացությունը ոչ թե պասսիվ, հայեցողական ակտ է, այլ իրականության ակտիվ վերափոխում ու վերարտադրում։ Մեր կարծիքով, գիտակցության այդ ներքին ակտիվությունը առավել պարզորոշ ու բացահայտ դրսևորվում է մաթեմատիկայում։ Ստեղծելով նոր տրամաբանական մոդելներ, մաթեմատիկան դրանով իսկ բացահայտում է իրականության ճանաչման նոր բնագավառ։ Այն ստեղծում է նոր տրամաբանական ձևեր, որոնք հետագայում կարող են ստանալ ֆիզիկական բովանդակություն։ Այս առումով միանգամայն օրինաչափ է, երբ բնական գիտություններում և հատկապես ֆիզիկայում շատ հաճախ նախ գրվում են մաթեմատիկական հավասարումներ, և հետո միայն բացահայտվում է նրանց ֆիզիկական իմաստը։ Իրոք, ինչպես հայտնի է, «կորացած» տարածության գաղափարը սկզբում մշակվել է որպես զուտ մաթեմատիկական ձև և հետագայում միայն, հարաբերականության տեսության ստեղծումով, Ա. Էյնշտեյնը այդ ձևին հաղորդեց ռեալ ֆիզիկական բովանդակություն։

Արդեն նկատել ենք, որ մաթեմատիկայի թափանցումը կյանքի բազմապիսի բնագավառներ, նշված «ներքին» ազդակներից բացի, պայմանավորված է նաև «արտաքին» գործոններով։ Դա ակնհայտ ձևով դրսևորվում է հատկապես ժողովրդական տնտեսության պլանավորման և, ընդհանրապես, նրա կառավարման գործում։ Մենք մամուլում շատ հաճախ ենք հանդիպում աշխատանքի կազմակերպման այս կամ այն ձևի վերաբերյալ քննադատական դիտողությունների։ Բայց քննադատել դեռևս չի նշանակում հաղթահարել թերությունները։ Բանն այն է, որ անմիջական դիտողականությամբ, այսպես ասած, «աչքաչափով» կարելի է նկատել կառավարման այս կամ այն եղանակի արդյունքները միայն, բայց այդ մակարդակի վրա մնալով դեռևս հնարավոր չէ առաջարկել նոր, ավելի լավ տարբերակ։ Դրա համար անհրաժեշտ է հաշվի առնել տարբեր ճյուղերի միջև գոյություն ունեցող հազարավոր ցուցանիշներ ու հարաբերություններ, իսկ դա անհնարին է իրականացնել առանց ճշգրիտ ձևական մեթոդների կիրառման։

«Ողջախոհությունը», անմիջական դիտողականությունը, տնտեսության տվյալ բնագավառը կառավարողի կենսափորձը կիրառելի են միայն հասարակական կյանքի համեմատաբար ցածր զարգացածության պայմաններում, երբ բոլոր բնագավառներում արտադրանքի քանակի ավելացումը թվում է ինքնին հասկանալի և օգտակար։ Միայն այդ աստիճանի վրա է, որ հեշտ է տեսնել, թե ինչն է լավ և ինչը՝ վատ։ Տնտեսության զարգացման և հասարակական կյանքի բարդացման հետ մեկտեղ «օգտակար» հասկացությունը դառնում է

հարաբերական, և պրոբլեմատիկ է դառնում այն, թե լավ է արդյոք տնտեսության բոլոր բնագավառներում պլանների չափազանց գերակատարումը։ Ահա թե ինչու մեր օրերում ավելի ու ավելի հրատապ խնդիր է դառնում հասարակության գիտական կառավարումը։ Ներկայումս ինտենսիվ հետազոտություններ են կատարվում կառավարման պրոցեսի գիտական կազմակերպման ուղղությամբ ամենատարբեր գիտությունների տեսանկյունից, բայց այդ բոլորը, վերջին հաշվով, հանգում են մի կետի՝ դա էկոնոմիկական-մաթեմատիկական մոդելների ստեղծումն է, որոնք բնութագրում են կառավարող համակարգերի տարբեր օղակների միջև եղած փոխհարաբերությունները ինչպես քանակական, այնպես էլ որակական տեսանկյունից։

Սա արդեն վերաբերում է գիտության մի նոր բնագավառի՝ կիբեռնետիկային, որն ուսումնասիրում է ցանկացած բնույթի համակարգերը, որոնք ի վիճակի են ընկալելու, պահպանելու և վերամշակելու ինֆորմացիան ու կիրառելու այն՝ համակարգերի կառավարման ու կարգավորման համար։ Այդպիսի միասնական գիտության ստեղծումով հնարավոր դարձավ մշակելու «նպատակահարմար ձևով գործող» համակարգերի հետազոտման ընդհանուր մեթոդներ, անկախ նրանց աշխատանքի կոնկրետ բնույթից։ Դրանով իսկ վերլուծության մաթեմատիկական մեթոդների կիրառումը տեխնիկական համակարգերի ուսումնասիրությունից անցնում են դեպի հասարակական երևույթների և կենսաբանական օրգանիզմների ուսումնասիրությանը։

Նկատենք նաև, որ թեև մաթեմատիկական մեթոդները օժտված են համընդհանուր բնույթով, այնուհանդերձ, այս կամ այն բնագավառում նրանց կիրառումը պահանջում է որոշակի վերակառուցում հենց այդ մեթոդների ներսում։ Այդ պատճառով էլ տարբեր բնույթի համակարգերի գործունեության սկզբունքների մերձեցման պրոցեսը կյանքի է կոչում զուտ մաթեմատիկական բնույթի օժանդակ տեսություններ։ Դրանցից, հատկապես, հարկ կա նշելու գրաֆների, խաղերի, ալգորիթմների ու ավտոմատների տեսությունը, որոնք մաթեմատիկայի կոնկրետ կիրառումից դարձել են մաթեմատիկայի բաժիններ՝ իրենց ինքնուրույն մեթոդներով ու պրոբլեմներով։ Ուրեմն, մաթեմատիկայի կապը գիտության և տեխնիկայի հետ փոխադարձ է, և շատ հաճախ այսպես կոչված «զուտ մաթեմատիկայի» պրոբլեմները կարող են լուծվել նաև տեխնիկական միջոցներով։ Մասնավորապես էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումն այսօր մեծ հնարավորություններ կարող է ընձեռել թվերի տեսության մի շարք ավանդական պրոբլեմների լուծման համար։

Այսպիսով, մաթեմատիկան, ըմբռնված ոչ որպես սոսկ հաշվման միջոց, այլև որպես առավելագույն աստիճանի ճշգրտության և արդյունքի միանշանակություն ապահովող մտածողության ձև, թափանցել է ժամանակակից գիտական մտածելակերպի բոլոր հյուսվածքները և դարձել է ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության անհրաժեշտ տարրը։ Ավելին, ի տարբերություն անցյալի տեխնիկական հեղափոխությունների, ներկայիս գիտա-տեխնիկական հեղափոխության համար հատկանշական է մաթեմատիկայի ոչ միայն քանակական, այլև որակական կողմի կիրառումը։ Դա սոսկ հեղափոխություն չէ տեխնիկայում՝ պայմանավորված նրանում բնագիտության կիրառումով, այլ հեղափոխություն է հենց բնական գիտությունների ոլորտում, պայմանավորված նրանցում և, հետևաբար, տեխնիկայում ու հասարակական կյանքում մաթեմատիկական մտածելակերպի ներթափանցումով։



Սակայն այս բոլորի հետ մեկտեղ հարկ է նշել, որ մաթեմատիկայի կիրառումը կյանքի տարբեր ոլորտներում վերջին հաշվով սահմանափակ է՝ պայմանավորված հենց այդ գիտության սահմանափակ բնույթով։ Պարզվում է, որ մաթեմատիկական սահմանումների ու ապացուցման խստությունը, նրա արդյունքների ճշգրտությունը, ապահովվում են նրա ուսումնասիրման օբյեկտների բնույթի աղքատության շնորհիվ միայն։ Այսօր արդեն ճշգրիտ կերպով ապացուցված է ձևական մաթեմատիկական համակարգերում գոյություն ունեցող մի շարք տրամաբանական բնույթի անկատարելություններ, որոնք կարող են լրացվել «ողջախոհության» և բովանդակային մոտեցման միջոցով միայն։ Սա նշանակում է, որ «ողջախոհությունը» պահպանում է մաթեմատիկայում իր դերը ոչ պակաս չափով, քան ճշգրիտ ձևական տրամաբանական չափանիշները։ Հետևաբար, այն առավել ևս անհրաժեշտ կլինի մաթեմատիկական մեթոդների օգնությամբ հասարակական պրոցեսների վերլուծության ու նրանց կառավարման համար։ Չէ՞ որ նախքան մաթեմատիկական մեթոդների կիրառումը անհրաժեշտ է ճշգրտել հետազոտվող երևույթների պարամետրերը և հարմարեցնել դրանք այդ մեթոդներին։

Կա նաև մեկ այլ, չափազանց կարևոր հանգամանք։ Բանն այն է, որ հասարակական կյանքում մաթեմատիկական մեթոդների կիրառումով կարելի է օպտիմալացնել կառավարման համակարգերը միայն այնպիսի պարամետրերի տեսակետից, որոնք ունեն տնտեսական բնույթ։ Այնինչ հասարակական կյանքում պակաս կարևոր նշանակություն չունեն նաև ոչ-տնտեսական գործոնները, օրինակ, բարոյական, քաղաքական, գեղագիտական և այլ չափանիշները։ Վերցնենք սրանցից թեկուզ առաջինը՝ բարոյականը։ Առաջնորդվելով զուտ գիտական չափանիշներով, սկզբունքորեն հնարավոր է բացահայտել բնության ու հասարակության զարգացման օրենքները, կառավարել բնական ու հասարակական համակարգերը նրանց գործունեության արդյունքի տեսակետից։ Դրանով կարելի է տիրապետել շատ արտադրելու, որակով արտադրելու գաղտնիքներին։ Բայց այս բոլորը ինքնին վերցրած դեռևս չի նշանակում հասարակության առաջընթաց, այն ինքնին վերցրած չի կարող մարդկային կյանքի երջանկության ու բարօրության գրավական լինել։ Մարդը սպառում է ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր արժեքներ, մարդկային հասարակությունը արտադրում է ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր բարիքներ։ Հետևաբար մարդու երջանկությունը կախված է ո՛չ միայն արտադրության մակարդակից, այլև հասարակության բարոյա-սոցիալական վիճակից։ Դա է, որ հնարավորություն պետք է տա մարդուն ազատվելու առարկայական աշխարհի թագավորությունից և իշխելու հենց այդ աշխարհի վրա։ Իսկ հասարակարգի այս սոցիալ-բարոյական մակարդակը, մարդու տեղը հասարակարգում, նրա ազատությունը, իր պարտականության, կյանքի իմաստի ու նպատակի, գեղեցկի, բարու և ազնիվի մասին մարդու ըմբռնումները արդեն չեն կարող տեղավորվել ոչ մի ձևական համակարգում, չեն կարող արտահայտվել ոչ մի մաթեմատիկական մոդելով։ Այդ պատճառով էլ, թեկուզև ամբողջ երկրում մեկ միասնական կառավարման համակարգ ստեղծելու դեպքում ևս, որոշակի կուսակցական, պետական քաղաքականությունը, որը կարողանա արտահայտել ոչ միայն տնտեսական, այլև ընդհանուր՝ հասարակական շահերը, կպահպանի իր անհրաժեշտությունը։

# ԱՎԱՆԴԱԿԱՆՆ ՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑԸ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՀՐ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Ամենից առաջ պարզենք տրադիցիայի (ավանդույթի) էությունը ճարտարապետության բնագավառում: Արդյո՞ք ամեն ինչ, որ եղել է անցյալում, ավանդույթի նշանակություն ունի. կարծում ենք՝ ոչ: Ավանդույթ դառնում է այն, ինչ իր ժամանակի համար եղել է լավագույնը, տիպականն ու բնորոշը՝ հավաքական իմաստով, ֆունկցիոնալ, տեխնիկական (կոնստրուկտիվ) և էսթետիկական առումով: Միայն այդպիսի ավանդույթը կարող է արժեքավոր լինել մեզ համար. շեշտում ենք՝ կարող է, որովհետև ոչ բոլորը, ինչ լավ և նպատակահարմար է եղել նախկինում, անպայման պիտանի է այսօրվա համար:

Քարե պատի հայկական տրադիցիոն շարվածքը (այսպես կոչված՝ «միդիս»-ը) գոյություն ունի շուրջ երկու հազարամյակ և այժմ էլ, հաճախ, զերծ չէ որոշ առավելություններից, իսկ, օրինակ, կանոնավոր քարերով («կվադրերով») շարվածքը կորցրեց իր առավելությունները, երբ հնարվեց և կիրառվեց կրաշաղախը: Ծածկի տակ գտնվող պատշգամբը (լոջիան) հին ժամանակներից բնակելի տան շատ կարևոր, անհրաժեշտ մասն է եղել Հայաստանի տաք շրջաններում և որպես տրադիցիոն ձև մնացել է նաև սովետահայ ճարտարապետության մեջ: Իսկ «գլխատունը» (երդիքով և թոնրով հին հայկական ավանդական տունը) որը տան շատ խելացի, նպատակահարմար ձև էր (ծածկի փայտանյութի խնայողության, ներսի ջերմության պահպանման և առանց ապակու՝ բնակարանի լուսավորությունն ու օդափոխությունն ապահովելու առումով), այժմ բոլորովին չի կիրառվում, որովհետև թոնիրը դուրս մղվեց բնակելի սենյակից, իսկ ապակյա լուսամուտ ունենալու, կենտրոնական ջեռուցման և ծածկը կառուցելու նոր հնարավորությունները ավելորդ դարձրին երդիկը և՛ որպես պահպանողական ձև, և՛ որպես լուսավորության ու օդափոխության միջոց:

Այսպիսով, ավանդույթը՝ դա տվյալ երկրի համար ժամանակի ընթացքում բյուրեղացած առավել նպատակահարմար ու բնորոշ ձևն է, որն իր նշանակությունը պահպանում է այնքան ժամանակ, որքան գոյատևում են այն ստեղծող պայմանները: Ճիշտ է, լինում են նաև դեպքեր, երբ ավանդական ձևը մնում է՝ կորցնելով իր ֆունկցիոնալ նշանակությունը, դառնալով սոսկ դեկորատիվ: Այսպես, օրինակ, հին Հունաստանում քարաշեն շենքերում պահպանվում էին նախկինում, փայտի գործածության ժամանակ առաջացած



շատ ձևեր, որոնք քարի դեպքում ավելորդ էին, բայց գործածվում էին իբրև գեղեցիկ, արտահայտիչ մասեր: Հին Եգիպտոսում երկար ժամանակ քարե ճարտարապետության մեջ նախկինից պահպանվում էին կավի (որպես շինանյութի) և փայտի գործածության ավանդական շատ ձևեր: Նման դեպքերում ավանդույթի պահպանումը պետք է համարել բացասական երևույթ:

Տրադիցիոն ձևի գոյացման վրա ազդում են երկու տեսակ գործոններ— մնայուն և ժամանակավոր. մնայուն են՝ տեղի բնակլիմայական պայմանները և մասամբ՝ շինանյութը: Դրանք ազդում են ո՛չ միայն ճարտարապետական այս կամ այն ձևի ստեղծման, այլ, ամենից առաջ՝ տվյալ երկրի ժողովրդի աշխարհընկալման, զգացողության, բնավորության վրա: Ցուրտ, մառախլապատ երկրի ու արևաշատ կապույտ երկնքի տակ ապրողը, անծայրածիր տափաստանում, հանդարտ ու լայնանիստ գետերի ափին մեծացած մարդը և լեռնցին չեն կարող միևնույն բնավորությունն ունենալ: Դարերով այս կամ այն շինանյութն օգտագործող ժողովուրդներն անպայման տարբեր մոտեցում են ունենում ճարտարապետության, նրա կոնստրուկտիվ և արտահայտչական ձևերի նկատմամբ: Փայտանյութի երկարամյա օգտագործման շնորհիվ հունական կլասիկ ճարտարապետության մեջ գերակշռել է սյան և հեծանի փոխազդեցության յուրահատուկ տեկտոնիկան, հայկական ճարտարապետության մեջ, քարի գերակշռող նշանակության պատճառով՝ քարի առավել հըստակ տեկտոնիկան:

Հայաստանը շատ արև ունի. դրա համար էլ հայկական ճարտարապետության մեջ կարևորագույն արտահայտչամիջոց էին լույսն ու ստվերը, մինչդեռ, ասենք, ռուսականում, ցրված լուսավորության պայմաններում, ավելի արդյունավետ է եղել վառ գունավորումը (ինչպես և ոսկեզօծումը) կամ երկու հակադիր գույների (լուսավոր և մուգ) համադրումը: Սեյսմիկ ուժերի առկայությամբ, մեզ մոտ շենքերի հատակագծերն ունեցել են կոմպակտ (հավաք), սիմետրիկ (կլոր, քառակուսի, բազմանկյուն), իսկ Ռուսաստանում, ուր երկրաշարժեր չեն լինում՝ անկաշկանդ տարածված ձև:

Այդպիսին է մշտական գործոնների ազդեցությունը: Սակայն կան գործոններ, որոնք ժամանակի ընթացքում նույն երկրում իսկ փոխվում են. ամենից առաջ երկրի արտադրաուժերի զարգացման մակարդակն է այդ (և դրանով պայմանավորված վերնաշենքը), որոնց շնորհիվ, ի վերջո, փոխվում են և իրենք՝ մարդը, նրա վերաբերմունքն ամեն ինչի, նույնիսկ կայուն գործոնների՝ բնության, կլիմայի, միևնույն շինանյութի նկատմամբ:

Ազդեցիկ գործոններ են նաև երկրի ժողովրդի պատմության ընթացքը, հարևան երկրների հետ ունեցած փոխազդեցությունները: Ազգային բնավորության, խառնվածքի ստեղծման գործում որոշակի դեր է խաղացել հատկապես կրոնը, որի ներգործությամբ արտադրաուժերի զարգացման և սոցիալ-տնտեսական միևնույն պայմաններում իսկ տարբեր կերպարանք են ստանում հասարակության էսթետիկական իդեալները: Գոթական ճարտարապետությունը կարող էր ստեղծվել միայն քրիստոնեական իդեոլոգիայի, նյութի բացասման հիման վրա, երբ քարը, «կորցնելով» քաշի հատկությունը, անտեսելով երկրի ձգողական ուժը, Գոթական տաճարներում սլացավ դեպի երկինք: Հին Հունաստանի հեթանոսական կրոնը (մարդկային հատկություններով օժտված աստվածներով) ստեղծեց «հերոսացված մարդու» մոնումենտալ, բայց կենսուրախ, «մարդկայնացված» ճարտարապետություն, իսկ հին

եգիպտական ճարտարապետությունը, կրոնի անսահման մթագնող ազդեցությամբ, ստացավ գերմարդկային, մարդուն ճնշող, ոնեմացնող արտահայտչականություն:

Այսպես բարդ ու բազմազան են ամեն մի ժողովրդի յուրահատուկ «խառնվածք», ազգային բնավորություն ստեղծող պայմանները, որոնց շնորհիվ արվեստն ստանում է համապատասխան երանգ:

Կարող է նաև հարց ծագել. ինչո՞ւ նման պայմաններում, այնուամենայնիվ, գոյացել են տարբեր արտահայտություն ունեցած ճարտարապետություններ: Ինչպես տեսանք, արվեստի վրա ազդող գործոններն այնքա՞ն շատ են և դարերի ընթացքում այնքա՞ն բարդ փոխադարձություններով պայմանավորված, որ նույնանման պայմանները երբեք չեն կարող կրկնվել տարբեր տեղերում, տարբեր ժողովուրդների համար:

Իսկ ինչո՞վ բացատրել այն մեծ հետաքրքրությունը, որ ամբողջ աշխարհում ցուցաբերվում է ավանդույթի հանդեպ՝ արվեստի և, հատկապես, ճարտարապետության բնագավառում և դարձել է ժամանակակից ամենից շատ վեճեր հարուցող պրոբլեմը:

Արվեստը զարգանում է ո՛չ միշտ ուղիղ գծով, այլև ալիքաձև, որը պայմանավորված է հասարակության մեջ տեղի ունեցող սոցիալ-տնտեսական կարևոր վերափոխումներով: Նոր որակի գոյացման ամեն մի նոր ալիքին ընթացակցում է պայքարը զարգացման առաջընթացը կաշկանդող հնի, ավանդույթների դեմ:

Մեծ կրքոտությամբ դա արտահայտվել է հեղափոխությունից հետո, Մայակովսկու «Радоваться рано» բանաստեղծությունում.

Радоваться рано  
Белогвардейца  
Найдете — и к стенке.  
А Рафаэля забыли?  
Забыли Расстрелли вы?  
Время  
Пулям  
По стенке музеев тенькать.  
Стодюймовками глоток старье расстреливай!

Այստեղ պոետը կոչ է անում անողոք պայքարել հնի դեմ՝ հանուն նորի և շատ դիպուկ արտահայտում է ճարտարապետության բնագավառում նոր ուղղության— կոնստրուկտիվիստների դիրքը քսանական թվականներին ճարտարապետության հին ավանդույթների դեմ: Ռաստրելին XVIII դարի ականավոր ճարտարապետներից մեկն էր, Ռուսաստանում Բարոկոյի ոճով կառուցված բազմաթիվ պալատական շքեղ շենքերի հեղինակ:

Այդ, ըստ էության, դրական երևույթը մեզ մոտ՝ Սովետական Միությունում, ճարտարապետության բնագավառում դրսևորվեց երկու անգամ— քսանական և հիսնական թվականների կեսերին: Այդ շարժումը, չնայած կոնստրուկտիվիստների, իսկ հետո նաև «պրոլետարական ճարտարապետների» ճիգերին, էական արդյունքի չհասավ, որովհետև տեսական այդ նոր ուղղությունը չունեցավ իր անհրաժեշտ հենարանը պրակտիկայում, թե՛ սոցիալ-տնտեսական պայմանների և թե՛ տեխնիկական հնարավորությունների ա-



ռումով: Շատ շուտով, չհանգելով գոհացուցիչ արդյունքների, այդ նոր շարժումը տեղի տվեց հին տրադիցիաների վերակոչմանը: Այլ է արդի նոր ալիքը (սկսած հիսնականից). որոշ առումով այն քսանականի կրկնությունն է, բայց սոցիալ-տնտեսական առավել բարենպաստ պայմաններում և որակական ավելի բարձր մակարդակով՝ շնորհիվ ներկայիս գիտա-տեխնիկական հզոր առաջընթացի:

Ճարտարապետության նոր ուղղությունը, որն ընդհանուր բնորոշմամբ կոչվում է «օրգանական ճարտարապետություն», անկասկած պրոգրեսիվ երևույթ է և դրական արդյունք է տվել ամբողջ աշխարհում: Սակայն, ինչպես միշտ, այս շարժման ընթացքում ևս բացասվեցին բոլոր տեսակի տրադիցիաները, և որոշ ժամանակ անց պարզվեց, որ ինչ-որ բան պակաս, թերի է նորի մեջ. լավ է, բայց ոչ կատարյալ: Առաջին հերթին այս նոր ուղղությունը, լինելով համաշխարհային բնույթի, հաճախ սկսեց կորցնել ազգային երանգը և կրկնվելով ամենուրեք, զրկվեց իր արտահայտչականության, հմայքի զգալի մասից. այդ է պատճառը, որ նորից փարում են տրադիցիաներին:

Ոմանք ընդհանրապես բացասում են հին տրադիցիաների, ազգային յուրահատկությունների պահպանման նշանակությունը ճարտարապետության, արվեստի մեջ: Նրանց կարծիքով գնալով վերանում են տարբեր երկրների ժողովուրդների կենցաղի, ապրելակերպի, նյութական ու հոգևոր պահանջմունքների տարբերությունները, հետևաբար պետք է վերանան նաև դրանցով պայմանավորված ճարտարապետական ձևերը. իսկ ինչ վերաբերում է կային գործոններին (բնություն, կլիմա), ապա այստեղ նույնպես տեխնիկական նոր, բարձր մակարդակը ձերբազատում է մարդուն բնության ուժերից՝ ստեղծելով ցանկալի միջավայր:

Անշուշտ, այս փաստարկումներում կան ճշմարտություններ, սակայն անհերքելի է նաև այն փաստը, որ կան ուրույն երանգ ունեցող նոր, այժմեական ճարտարապետություններ, ինչպես, օրինակ, արդի իտալական, ճապոնական, մեքսիկական, ինչպես և սովետահայ ճարտարապետությունը և, պատահական չէ, որ դա գոյատևում է այն երկրներում, ուր դա հարուստ է հին ավանդույթներով:

Տրադիցիաների օգտագործումը, տվյալ երկրի ճարտարապետությանը հաղորդելով համապատասխան երանգ, ավելի հասկանալի ու հարազատ է դառնում տեղի ժողովրդին և հետաքրքրական՝ այլոց, որովհետև բացահայտում է նրանց համար մի նոր աշխարհ, նոր պատկերացումներ. հիրավի, որքա՞ն անհրապույր կլիներ մի այլ երկրում տեսնել նույնը, ինչ ամենուր: Մի՞թե անհրաժեշտ չէ, որ լինեն և՛ իտալական, և՛ ռուսական, վրացական, հայկական, ադրբեջանական և այլ ժողովուրդների երաժշտություն, մի՞թե լավ կլիներ, եթե չլինեին կաղնի, դեղձենի, տանձենի, կեռասենի, ծիրանի և այլ ծառեր, այլ մի ընդհանրացած ծառ, թեկուզ «ծառային» բոլոր հատկանիշներով:

Ես դժվարանում եմ հայկական խառնվածքը տեսականորեն բնութագրել. բայց կարելի է վկայակոչել դրանով թաթավուն հայկական ճարտարապետության բնորոշ գծերը, այլ կերպ ասած՝ ավանդույթները, որոնք, միաժամանակ, արտահայտում են այդ իսկ խառնվածքի էությունը: Բացի վերը հիշվածներից, հայկական ճարտարապետությանը բնորոշ են՝ կոնստրուկտիվ ու ճարտարապետական ձևի միասնությունը, ճշգրտությունը, կառուցվածքի ներ-

քին տարածության և արտաքին ծավալի միասնությունը, կառուցվածքների քանդակային հաստատականությունը, ընդհանուր ձևերի պարզության հետ՝ մանրամասների բազմապիսությունը, գեղանկարչականությունը— հատկանիշներ, որոնք կարող են յուրաքանչյուր նոր ձևի ազգային երանգ հաղորդել, առանց կրկնելու հները: Սակայն կոնկրետ ձևերը նույնպես ունենում են իրենց ազգային բնութագիրը: Բոլոր երկրների ճարտարապետության մեջ եղել են պատ, կամար, սյուն, զարդաքանդակ, բայց ամեն մի ժողովրդի մոտ դրանք ինքնատիպ են: Այսպես, հին Եգիպտոսում սյունը պատկերվել է բույսի կերպարանքով— կրոնական մեկնաբանությամբ, հին Հունաստանում՝ մարդկային կերպարանքով, հայկական ճարտարապետության մեջ սյունը դառնում է պատի «մաս» (հատված)՝ զույգ սյուների և այլ ձևերով: Ո՛չ միայն տարբեր, այլև միևնույն երկրներում, ճարտարապետական նույն ձևը այլազան արտահայտչականություն է ունեցել՝ առաջադրված խնդրին, կերպարի անհրաժեշտ բնութագրին համապատասխան: Այսպես, հունական ճարտարապետության օրդերներում*, օրինակ՝ «Դորիական» օրդերում սյունը խիստ առնական է, ծանրանիստ, «Իոնիքական» օրդերում՝ քնքուշ, նուրբ (կանացիական), իսկ «Կորնթականում»՝ շքեղ-հանդիսավոր. այդ յուրահատկությունների օգտագործմամբ ճարտարապետը ստեղծում է տարբեր կերպարներ: Կոնկրետ ավանդական ձևերը— կամարը, սյունը, զարդաքանդակը և այլն, ճարտարապետության ատաղձն են և օգնում են կերպարի ստեղծմանը, դրանցից հրաժարվելն աղքատացնում է ճարտարապետի ներկապնակը:

Հազարամյակներ շարունակ ճարտարապետությունը շինանյութերով է մարմնավորել կոնստրուկցիաներն ու ճարտարապետական ձևերը: Անցյալի հարուստ փորձի հիման վրա ճարտարապետը տիրապետում էր այդ նյութերի և դրանցով ստեղծված ձևերի արտահայտչականությանը, տեկտոնիկ յուրահատկություններին: Արդի բազմաթիվ սինթետիկ շինանյութերը մեծ հնարավորություններ են ընձեռում ճարտարապետին՝ ստեղծելու արտահայտչական նոր միջոցներ: Սակայն դրանց օգտագործման, տեկտոնիկ յուրահատկությունների ուսումնասիրման փորձը դեռևս անբավարար է այդ նորի արտահայտչականության գաղտնիքներին տիրապետելու համար, ուստի, ժառանգություն մնացած տրադիցիոն ձևերը դեռ չպետք է հանվեն գործածությունից: Դրանք անհրաժեշտ են նաև այն պատճառով, որ ճարտարապետությունը «սպառող» բնակչությունը նույնպես, իր հասկացողություններով ու պատկերացումներով, դեռ պատրաստ չէ նորը հարկ եղածին պես ընկալելու: Պատահական չէ, որ ժամանակակից շինարարության մեջ ամենադժվարը կերպարի ստեղծումն է: Թատրոնը նմանվում է հիվանդանոցի, հիվանդանոցը՝ հյուրանոցի և այլն, որովհետև միայն հորիզոնական և ուղղահայաց ջլատումներով, երկրաչափական-վերացական ձևերով հեշտ չէ կերպար ստեղծելը: Այդ է պատճառը, որ շենքին պատշաճ կերպար տալու համար ճարտարապետներն այժմ հաճախ դիմում են քանդակի, խճանկարի, գեղանկարչության օգնությանը, որոնք, սակայն, լրացուցիչ միջոցներ պետք է հանդիսանան և չպետք է փոխարինեն ճարտարապետական արտահայտչամիջոցներին:

Ավանդական ձևերն ունեն նաև այլ նշանակություն. մարդուն հատուկ է հետաքրքրասիրությունն իր երկրի պատմության նկատմամբ: Ճարտարապետությունը (ուր ավանդական ձևերը կապ են ստեղծում անցյալի ու ներկայի միջև) բոլոր արվեստներից ավելի լավ է կատարում այդ դերը. ահա թե ինչու պատերազմի ժամանակ ավերված ճարտարապետական կոթողները (Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Գերմանիայի, ինչպես նաև Սովետական Միության) վերականգնվում են ամենայն մանրամասնությամբ: Արդյոք այդ չէ՞ մեր Երևանի Լենինի հրապարակի հմայքի գաղտնիքը:

* Սյունաշարով ստեղծվող շենքի կոմպոզիցիաներ՝ տարբեր ոճերով:



Հաճախ կարելի է լսել նման հարցադրում: Անպայման կամա՞ր պետք է դնել, որ հայկական լինի: Պարտադիր չէ. կարելի է ստեղծել հայկականը, նաև առանց կամարի. Եղեռնի հուշարձանի հեղինակներն անկամար և անխոյակ ստեղծել են հայ ճարտարապետության ոգուն հարազատ արժեքավոր գործ:

Ի դեպ, տեղին է հարցնել՝ իսկ ինչո՞ւ խուսափել կամարից: Ինչո՞վ է այն անպատեհ այսօրվա համար: Կամարը նույնքան հարազատ կոնստրուկցիա է երկաթբետոնի, որքան և քարի համար: Սակայն, բացի կոնստրուկցիա լինելուց, մարդկային ստեղծագործական մտքի փայլուն թռիչքի արտահայտություն է այն (համեմատած ուղղանկյուն բացվածքի հետ) և ճարտարապետական հրապուրիչ, գեղեցիկ ձև: Պատահական չէ, որ հաղթական մուտքերը լինում են կամարաձև:

Ասում են նաև. կամար կառուցելիս այժմ երկաթբետոնե կոնստրուկցիա են գործածում, հետևաբար, երեսպատման քարե կամարը դառնում է ոչ կոնստրուկտիվ, կեղծ: Սա ևս ճիշտ չէ: Նախ՝ քարե կամարը կարող է լինել և առանց երկաթի, դա լրացուցիչ ապահովամիջոց է: Եթե քարե կամարի քարերի ձևը և դասավորությունը (որը մենք տեսնում ենք շենքի վրա) կոնստրուկտիվ են, ճշմարտացի, ապա մեզ համար ամենևին էլ կարևոր չէ՝ դրա ետևում, պատի մեջ, երկաթ դրվա՞ծ է, թե՞ ոչ: Իտալական Վերածննդի համարյա բոլոր լավագույն կոթողները կառուցված են աղյուսից կամ անկանոն (բուտի) շարվածքով և երեսպատված են երկրորդ՝ դեկորատիվ պատով— քարի շարվածքի ամենաարտահայտիչ տեսքով: Եվ, եթե կամարը արխային ձև է, ոչ այժմեական, ինչով բացատրել որ Լուիս Կանը՝ ամերիկյան ամենաժամանակակից ճարտարապետը, Բանգլադեշի մայրաքաղաք Դակայում, Ազգային Ասամբլեայի համալիրը կառուցելով երկաթբետոնից, ծածկեց այն աղյուսով և գերազանցապես կամարների մոտիվներով: Ինչո՞ւ Կորբյուզեն՝ մեր ժամանակների ամենամեծ ճարտարապետը, որի կարևորագույն սկզբունքներից մեկը շինանյութը, կոնստրուկցիաները չթաքցնելն ու ճշմարտացի ներկայացնելն էր, «Կապելլա Ռոնշան» եկեղեցու պատերը կառուցեց աղյուսից ու սվաղեց: Արդյոք, այդ շենքին նայելիս, կարիք ունե՞նք հարցնելու՝ այդ սվաղի տակ երկաթբետո՞ն է, քա՞ր, թե՞ աղյուս: Մինչ մենք, կառուցելով քարից, խուսափում ենք տալ շենքին իրեն հարմար ամենաբնորոշ ձևը— կամարը, պատճառաբանելով, թե իբր այն մեզ ետ է տանում (թեև կարելի է ետ գնալ և առանց կամարի և հակառակը): Կամարը՝ ամենաավանդական այդ ձևը, օգտագործելով կարելի է ստեղծել ամենաարդիական կառույց: Կարևորն ստեղծագործության ընդհանուր շունչն է, ոգին:

Արամ Խաչատրյանն ստեղծել է գործեր, որոնց մեջ ակներև չեն ազգային մոտիվները, բայց դրանք իրենց ոգով հայկական են. ունի և գործեր, որոնք տոգորված են հայկական ժողովրդական կոնկրետ մոտիվների ոգով: Եվ երկու դեպքում էլ նրա ստեղծագործությունները նորի, մեր ժամանակի

շունչն ունեն: Աշոտ Սաթյանի ստեղծագործության մեջ ազգայինի զգացողությունն այնքան ուժեղ է, որ թվում է, թե նրա երգերը ժողովրդականից են վերցրած. մինչդեռ դրանք էապես ինքնուրույն են: Ճիշտ նույն մոտեցումն ուներ ժառանգության վերաբերյալ մեծ բանաստեղծ Ավ. Իսահակյանը: Մի զրույցում նա ասել է. մոտենալով անցյալի մշտարժեք մեծություններին, հեռանանք նրանցից. հեռանալով նրանցից, մոտենանք նրանց: Կոմիտասը, մշակելով ժողովրդական երգերը, դրանք բարձրացնում էր դասականի մակարդակին: Բայց նա էր, որ իր ստեղծագործությամբ դասական երաժշտությունը ներդաշնակեց ժողովրդականին:

Այսպիսով, ազգային երանգավորումը կարող է լինել և՛ ավանդական կոնկրետ ձևերի (մոտիվների) օգտագործմամբ, և՛ առանց դրանց, եթե ստեղծագործողն իր զգացողությամբ, պատկերացումներով հարազատ է տվյալ ժողովրդի ոգուն, օժտված է այն արտահայտելու տաղանդով: Չայկովսկին ռուս ժողովրդական մոտիվների օգտագործմամբ ստեղծեց չորրորդ սիմֆոնիան, որն ինքն անվանում էր «մերը» (այսինքն՝ ռուսական), իսկ Մուսորգսկին, առանց ռուսական կոնկրետ մոտիվների ստեղծեց թերևս ավելի ռուսական երաժշտություն:

Ժամանակակից ճարտարապետության խոշորագույն ներկայացուցիչները, տարբեր հաջողությամբ, բայց միշտ ձգտել են ուրիշ երկրների համար ստեղծագործել այդ երկրի՝ ո՛չ միայն բնակլիմայական պայմաններին համապատասխան, այլև նրանց էսթետիկական տրադիցիաներին հարազատ: Այդպիսին է եղել Կորբյուզեի մոտեցումը Հնդկաստանի Չանդիգուրխ քաղաքի և նրա շենքերի նախագծերում:

Ֆրանկ Լլոյդ Ռայտը՝ XX դարի սկզբի ամենաժամանակակից ճարտարապետներից մեկը, «օրգանական ճարտարապետության գաղափարախոսը», նախագծելով Տոկիոյում «Իմպերիալ օթել» կոչված հյուրանոցը, ջանաց ամեն կերպ հարազատ լինել տեղի ազգային ոգուն և մինչև անգամ կիրառեց ճապոնական քարե պատի շարվածքի ձևը. «Օտարերկրյա ոչ մի ճարտարապետ, — ասել է նա,— որ հրավիրվել է Ճապոնիա՝ աշխատելու, չի խոնարհվել ճապոնականի առաջ, չի հարգել ո՛չ տեղական պայմանները, ո՛չ տրադիցիաները: Մինչդեռ գեղարվեստական այդ ավանդույթները վեր են աշխարհի բոլոր ազնվագույններից»:

Մի՞թե ճիշտ վարվեցին մեր մի քանի ճարտարապետներ՝ հրաժարվելով քարի օգտագործումից, կարծելով թե քարը ետ է տանում մեզ, պատճառ է դառնում ճարտարապետության «արխայիզմի»: Քսանական թվականների մեր կոնստրուկտիվիստները նույնպես, հետևելով կոնստրուկտիվիզմի հայտնի լոզունգին (նոր շինանյութեր, նոր ճարտարապետություն), հրաժարվեցին շենքերի քարե երեսպատումից, ծածկեցին դրանք բետոնով ու սվաղով (Կառուցողների ակումբի, այժմյան ռուսական թատրոնի և դրան կից շենքերը): Եվ, ի վերջո, ականատես եղանք այն բանին, որ դրանց հեղինակ Գ. Քոչարը, թատրոնի շենքի պատերը երեսպատեց տուֆի սալիկներով (ի դեպ, քարով շարված, բայց սվաղով ծածկված պատերը): Չպետք է հրաժարվել նրանից միայն նրա համար, որ այն հին է, ասել է Վ. Ի. Լենինը Կլարա Ցետկինի հետ ունեցած իր մի զրույցում: Այս ճշմարտությունը երբեք չպետք է մոռանալ:

Սովետահայ ճարտարապետության մեջ փորձել են ազգային ավանդույթները օգտագործել Ն. Բունիաթյանը և Ալ. Թամանյանը: Ծահումյանի հրապարակի վրա գտնվող գյուղբանկի շենքում Բունիաթյանը, օգտագործելով հայ ճարտարապետության ավանդական ձևերը, դրանք չհասցրեց արդիականի որակին: Թամանյանը կառավարական տան և օպերայի շենքերում հասավ դրան, որովհետև տրադիցիոն ձևերին նոր շունչ տվեց. նա խորապես ըմբռնեց հայկական ճարտարապետության տեկտոնիկ յուրահատկությունները, դրա ոգին և, միաժամանակ, չսահմանափակվեց դրանց շրջանակներում, հարստացրեց, նոր մակարդակի բարձրացրեց հայկականը: Կառավարական տան և օպերայի շենքերի մեջ կան հայկական ճարտարապետության բոլոր լավագույն գծերն ու մոտիվները, սակայն դրանք նման չեն մեր պատմական ճարտարապետության կոթողներից և ոչ մեկին: Ալ. Թամանյանի ստեղծագործական վերաբերմունքն ավանդականին շատ պատկերավոր արտահայտվում է մի իրողությունում: Քանդակագործ Սուրեն Ստեփանյանը նրա պատվերով կատարում է էսքիզ Կառավարական տան որմնաքանդակներից մեկի համար: Նայելով էսքիզին՝ Թամանյանն ասում է. «Այսպես, երբեք չեն արել»: Քիչ անց, Ստեփանյանը ներկայացնում է մի նոր էսքիզ, ջանալով ուղղել իր սխալը: «Բայց այսպես արդեն արել են», ափսոսանքով ասում է մեծ վարպետը:

Ս. Սաֆարյանը Լենինի հրապարակի վրա կառուցված վարչական շենքում, կրկնելով Թամանյանի Կառավարական տան կառույցում եղած ավանդական ձևերը, չհասավ նոր որակի, որովհետև դա կրկնություն էր, իսկ ակադեմիայի շենքում, նույն ավանդական ձևերի ստեղծագործական վերարտադրությամբ հասավ լավ արդյունքների: Տրադիցիաների ստեղծագործական օգտագործման ցայտուն օրինակ է Ռ. Իսրայելյանի ստեղծագործությունը. հետևելով Թամանյանի սկզբունքներին՝ ճարտարապետը չկրկնեց նրան, այլ գտավ ինքնուրույն ուղի, տրադիցիաների հանդեպ ցուցաբերելով նոր մոտեցում, հանգելով լուրջ հաջողությունների (մայր Հայաստանի մոնումենտը, Սարդարապատի հուշարձանի կոմպլեքսի ճարտարապետական մասը և այլ գործեր):

Եզրափակելով, պետք է ասել, որ ավանդականի ու նորի շաղկապումը հնարավոր է տարբեր եղանակներով: Արդ, չկա մի մեթոդ, որը միշտ հասցնի ցանկացած արդյունքի: Յուրաքանչյուր ստեղծագործող ինքը պետք է հարթի սեփական ճանապարհը: Սակայն, դիմելով տրադիցիաներին, հարկավոր է ստուգել դրանց պրոգրեսիվությունը:

Այսպես. օրինակ, եթե ուզում ենք պահպանել մեր բազմերանգ քարերի օգտագործումը ճարտարապետության մեջ, որը մեզ շատ անհրաժեշտ է, պետք է անպայման կենսագործենք դրա կիրառման նոր, ինդուստրիալ եղանակներ՝ օգտվելով տեխնիկական ժամանակակից հնարավորություններից, օգտագործելով այդ ասպարեզում եղած համաշխարհային փորձը:

Չպետք է մոռանալ մի հանգամանք ևս. արվեստի մեջ բարձր մակարդակի առկայությունը մեծ չափով պայմանավորված է նաև արվեստների ու արվեստագետների համագործակցությամբ, փոխադարձ ազդեցությամբ: Եվ, եթե նախկինում մեծ արդյունք էին տալիս առանձին արվեստագետների համագործակցությունը, փոխօգնությունը, ապա այժմ, երբ բոլոր արվեստագետները համախմբված են իրենց ստեղծագործական միություններում, շատ ավելի մեծ հնարավորություններ կան՝ համատեղ ուժերով պայքարելու նորի, արդիականի համար, ճիշտ օգտագործելով նաև մեր ժողովրդի դարավոր մշակույթի հարուստ գանձարանը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՉԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ԳՈՐԾՈՎ

## ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐ

**Ս. Մ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
ՀԿԿ Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղար

Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարին նշանավորվեց միլիոնների հարվածային աշխատանքով ու սոցիալիստական մրցության լայն թափով: Մեր երկրի ժողովրդական տնտեսությունն առաջընթաց խոշոր քայլ կատարեց ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծումների իրականացման ճանապարհին: «1973 թվականը,— ինչպես նշվում է կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումում,— սովետական ժողովրդի հերոսական գործերի տարեգրության մեջ կմտնի որպես հարվածային աշխատանքի տարի: Այն նշանավորվեց աշխատանքային բարձր պաթոսով, մեծ ու բեղմնավոր աշխատանքի տարի եղավ կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում»: Անցած տարին Սպիտակի շրջանի աշխատավորների համար ևս դարձավ տնտեսական խնդիրների լուծման, սոցիալիստական պարտավորությունների կատարման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար մղվող պայքարի և հաղթանակների ժամանակաշրջան:

Շրջանի կուսկազմակերպություններն է՛լ ավելի գործարար բնույթ տվեցին մրցությանը, հմտորեն գլխավորեցին մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու աշխատանքային խանդավառությունը, նրանց ջանքերը նպատակամղեցին հնգամյակի վճռական տարվա պլանների ու պարտավորությունների կատարմանը: Մասնակցելով արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվները ճիշտ էին ըմբռնում, որ իրենց աշխատանքով, պետական առաջադրանքների ու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների անթերի կատարմամբ որոշակի ավանդ են մուծում երկրի էկոնոմիկայի զարգացման համար մղվող համաժողովրդական պայքարում, նպաստավոր պայմաններ ստեղծում հնգամյակի հետագա տարիների արդյունավետ գործունեության համար:

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպու-



թյունները, գլխավորելով մասսաների սոցիալիստական մրցությունը և ուղղություն տալով նրանց շարունակ աճող ակտիվությանը, նրանց ջանքերն ուղղել են հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, եղած ռեզերվների համակողմանի օգտագործմանը:

Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, հիմնական արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և արտադրության կազմակերպման առաջավոր ձևերի լայն արմատավորման շնորհիվ կատարեցին ու գերակատարեցին հնգամյակի անցած երեք տարիների համախառն արտադրանքի թողարկման և իրացման պլանները:

Բարձր արդյունքները, ինչ խոսք, ձեռք չեն բերվում հենց այնպես, առանց հոգսերի: Դրա համար երբեմն հարկ է լինում հաղթահարել որոշակի արգելքներ ու դժվարություններ, դիմել կազմակերպչական միջոցների, բարձրացնել մարդկանց պատասխանատվությունն իրենց հանձնարարված գործի նկատմամբ, նրանց ուշադրությունը սևեռել կարևոր խնդիրների վրա: Այս տեսակետից բնորոշ է վերելակաշինական գործարանի օրինակը: Այս ձեռնարկությունը մի ժամանակ ետ էր մնում, չէր կատարում արտադրական պլանները: 1972 թ. սկզբներին կուսշրջկոմի բյուրոն քննարկեց գործարանի կուսկազմակերպության հաշվետվությունը և պարզեց, որ այնտեղ ցածր է աշխատանքային կարգապահությունը, տնավարություն է դրսևորվում պետական գործի նկատմամբ, որոշ ղեկավար աշխատողներ զբաղվում են աչքակապությամբ, խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, իսկ կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն բարձիթողի են արել մարդկանց հետ տարվող դաստիարակչական աշխատանքը, չեն իրականացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրենց ֆունկցիան:

Գործարանի դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները լուրջ հետևություններ արեցին կուսշրջկոմի բյուրոյի որոշումից, համատեղ ջանքերով կարողացան ի հայտ բերել ներքին ռեզերվներն ու չօգտագործված հնարավորությունները և մրցությանը տալ իսկական գործարար բնույթ, մոբիլիզացնել կոլեկտիվի ուժերը՝ հնգամյակի խնդիրները կատարելու համար: Եվ ահա արդյունքը. 1972 թ. համեմատությամբ անցած տարի համախառն արտադրանքի աճը կազմեց 6,8, իսկ իրացմանը՝ 3,4 տոկոս: Ավելին, ձեռնարկության կոլեկտիվը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացավ «Սոյուզլիֆտմաշի» համամիութենական միավորման ու ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին կարգի դրամական մրցանակի:

Հաջողությունը պիտի բացատրել նրանով, որ 63 կոմունիստներից բաղկացած կուսկազմակերպությունում ստեղծված 8 կուսխմբերը բոլոր արտադրական տեղամասերում հմտորեն են գլխավորում սոցիալիստական մրցությունը, սիստեմատիկաբար խորամուխ լինում արտադրության հարցերի մեջ, կոմունիստի իրենց անձնական օրինակով դաստիարակում բանվորներին: Եվ զարմանալի չէ, որ արդեն նոյեմբերի 29-ին վճռական տարվա պլանը կատարեց նախապատրաստական արտադրամասը, որը հնգամյակի երեք տարում իրացրել է երեք ու կես տարվա ծրագրեր, դեկտեմբերի 20-ին՝ մեխանիկականը, իսկ երեք օր անց այդպիսի զեկույց տվեց ամբողջ գործարանի կոլեկտիվը:

Արտադրական պլանների կատարման գործում մեծ ակտիվություն են ցուցաբերում կոմունիստները, արտադրամասի ավագ վարպետ Ա. Մելքոնյանը, դրոշմող Ռ. Սահակյանը, խառատներ Ն. Քաչանյանը, Գ. Հարությունյանը, ջերմամշակող Ժ. Հարությունյանը, հավաքող Ա. Այվազյանը, նորոգող-փականագործներ Ռ. Էհտիբարյանը, Ռ .Աթոյանը և ուրիշներ։

Հնգամյակի առաջադրանքների անշեղ կատարման ու գերակատարման նշանաբանով են աշխատում նաև կաշվի փոխարինիչների, պանրի գործարանների, կոմունալ սպասարկման ու բարեկարգման գրասենյակի, ավտոձեռնարկության, երկաթուղային կայարանների, շրջանի էլցանցի, տպարանի, գյուղտեխնիկայի շրջանային միավորման և այլ ձեռնարկությունների կոլեկտիվներ։

Հնգամյա պլանի կատարման համար ռեալ հնարավորություններ են ստեղծել նաև շրջանի շինարարական կոլեկտիվները։ Նրանք անցած երեք տարիների շինմոնտաժային աշխատանքների պլանները կատարել են ավելի քան 115,4, իսկ վճռական տարվանը՝ 120 տոկոսով։

Լավ օրինակը միշտ էլ վարակիչ է, այն արտադրական վերելքի կարևոր ազդակ է։ Իններորդ հնգամյակի տարիները բնորոշ են նրանով, որ ծնունդ առան հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնություններ ու շարժումներ, որոնք լայն տարածում գտան նաև մեր շրջանում։ Դրանցից մեկը հանդիպական պլանների ընդունումն է։ Հետևելով հանրապետության առաջավոր ձեռնարկությունների օրինակին՝ 1973 թ. 300 հազար ռուբլի ընդհանուր գումարով այդպիսի պլաններ ընդունեցին վերելակաշինական, պանրի, կաշվի փոխարինիչների կոլեկտիվները։ Այդ միջոցառումը, որն իրականացվեց հաջողությամբ, արտադրական ֆոնդերի և ներտնտեսային ռեզերվների արդյունավետ օգտագործման կոնկրետ արտահայտությունն է։

Հնգամյակի խնդիրների հաջող լուծմանն է ուղղված նորարարական շարժումը։ Կուսկազմակերպությունները խրախուսում են ռացիոնալիզատորներին, այդ շարժումը համարում որպես մրցության կարևոր ձև և աշխատանքի նըկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորում։ Հնգամյակի անցած երեք տարիներին շրջանի ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու առաջավոր բանվորները արել են 63 ռացիոնալիզատորական առաջարկություն, որից ստացված տնտեսական պայմանական օգուտը կազմում է 162.521 ռուբլի։ Ինչպես ամենուրեք, մրցության այս ձևի մեջ ևս իրենց ակտիվությամբ աչքի են ընկնում կոմունիստները։ Այսպես, վերելակաշինական գործարանում արված 25 նորարարական առաջարկություններից 18-ի, իսկ շաքարի գործարանում 18-ից՝ 14-ի հեղինակները կոմունիստներ են։

Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարում գյուղի աշխատավորների ծավալած համամիութենական սոցիալիստական մրցությունը, ինչպես ամենուրեք, այնպես էլ մեր շրջանում վերածվեց գյուղատնտեսության հետագա զարգացման ու նրա արդյունավետության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ համագումարի որոշումների անշեղ կենսագործման լայն շարժման։ Կուսշրըջկոմն ու կուսկազմակերպությունները մշտապես իրենց տեսադաշտում պահեցին մրցության հարցերը, օգնեցին մրցողներին՝ ստանձնած պարտավորությունների կատարման գործում։

Մենք լավ ենք ընկալում կուսակցության այն պահանջը, որ հարկավոր է նպաստավոր պայմաններ ստեղծել մրցողների համար, ճիշտ գնահատել նրանց



ներդրումը հանրային արտադրության վերելքի մեջ։ Հենց այդ նպատակով էլ կուսշրջկոմի բյուրոյի նիստերում մենք պարբերաբար քննարկում ենք սոցիալիստական մրցության կազմակերպմանը, հանրային արտադրության վիճակին առնչվող բազմաբնույթ խնդիրներ։ Այդ տենդենցն սկիզբ է առել ՍՄԿԿ XXIV համագումարից և «Սոցիալիստական մրցության կազմակերպումը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. պատմական որոշումից հետո։ Այժմ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ավելի մոտիկից են զբաղվում սոցիալիստական մրցության ղեկավարման հարցերով, ապահովում են դրա գործարարությունն ու հրապարակայնությունը, կարևոր նշանակություն տալիս մրցության դաստիարակչական դերին։ Մրցության արդյունքներն ամփոփելու համար ստեղծել ենք շրջանային ժյուրի, որի ստուգման արդյունքները քննարկում ենք կուսշրջկոմի բյուրոյի նիստում, պարգևատրում հաղթողներին։

Մրցության հաղթողների խրախուսումը պետական պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարման կարևոր գործոն է։ Կուսշրջկոմի բյուրոն լուրջ քայլեր է արել այդ ասպարեզում։ Շրջկոմը սահմանել է պատվո գիրք, որտեղ բյուրոյի որոշմամբ գրանցվում են հանրային արտադրության և հասարակական աշխատանքում առավել աչքի ընկած մարդկանց անունները։ Շրջանի անվանի մարդկանց, արտադրության առաջամարտիկների լուսանկարները փակցվում են շրջանային պատվո տախտակին, ընդ որում, մրցության հաղթողներին տրվում են հատուկ պատկերազարդ վկայագրեր։ Իրենց արդարացրած բարոյական խրախուսանքի ձևեր են բյուլետենները և արտադրության առաջավորների թերթիկները։ Կուսշրջկոմն այդպիսի թերթիկներ է հրատարակել Մ. Պարնիի կոլտնտեսության առաջավոր կթվոր Արշալույս Անտոնյանի, Սարահարթի կոլտնտեսության ճակնդեղագործուհի Հրանուշ Ֆիդանյանի և ուրիշների մասին։ Դրանք միաժամանակ առաջավոր փորձի տարածման լավագույն միջոցներ են։

Սոցիալիստական մրցության գլխավոր նպատակը գյուղատնտեսության բնագավառում բերքատվության, անասունների գլխաքանակի ու մթերատվության աճի ապահովումն է, հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը։ Կարելի է ասել, որ այդ նպատակին հասնելու համար մեր շըրջանի աշխատավորների գործադրած ջանքերը հաջողությամբ են պսակվել։ Դիմենք հնգամյակի վճռական տարվա տնտեսական արդյունքներին։ Պլանով նախատեսված 13,9-ի փոխարեն, շրջանում հացահատիկի մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 19,6 ցենտներ, կամ 82 հազարի փոխարեն ստացվեց 112 հազար ցենտներ համախառն բերք։ Նալբանդի, Մեծ Պարնիի, Սարահարթի, Սպիտակի, Կաթնաջրի, Սարամեջի և Լեռնավանի տնտեսություններում մեկ հեկտարից ստացվեց 24,6—28,2 ցենտներ հացահատիկ։

Ճիշտ է, շրջանը, 1973 թ. բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով, չկատարեց շաքարի ճակնդեղի բերքատվության պլանը, սակայն Մեծ Պարնիի, Լեռնավանի, Սարահարթի, Թափանլիի, Ջիգդամալի, Քարաձորի, Սարալի, Լեռնանցքի և Շենավանի տնտեսությունները ձեռք բերեցին նկատելի հաջողություններ։ Սոցիալիստական գործարար մրցության շնորհիվ առաջավորները հասան ավելի բարձր արդյունքների։ Այսպես, անվանի ճակնդեղագործուհիներ Ռոզա Ավետիսյանը, Քնարիկ Ղոչիկյանը, Գոհար Ասատրյանը (Մեծ Պարնի) մեկ հեկտարից ստացան 380—402 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Շրջանի կուսկազմակերպությունների մշտական հոգատարության առարկան եղել է անասնապահության զարգացման խնդիրը։ Այն պատշաճ տեղ է գրավում սոցիալիստական պարտավորությունների մեջ։ Կազմակերպական բնույթի մի շարք միջոցառումների իրականացման շնորհիվ այդ կարևոր բնագավառում ձեռք ենք բերել ակնառու հաջողություններ։ Անասունների գլխաքանակի աճի, կերակրման ու խնամքի բարելավման շնորհիվ զգալիորեն ավելացել է անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը, կատարվել են պլաններն ու պարտավորությունները։ Շրջանի 10 տնտեսություններում վերականգնվել են 1962—1964 թվականներին անհիմն վերացված խոզաբուծական ֆերմաները։ Դա մսի արտադրության խոշոր ռեզերվ է և մեծ չափով նպաստեց մսի արտադրության ու վաճառքի սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։ Բավական է ասել, որ մի շարք տնտեսություններում (Ծաղկաբեր, Ջրաշեն, Շենավան, Սարահարթ, Ղուրսալի) խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճը կազմել է 8—15 տոկոս։ Մսի արտադրությունը, նախորդ երեք տարիների համեմատությամբ, աճել է 3722 ցենտներով կամ 7,5 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ կովերի միջին կաթնատվությունն ավելացել է 103 կգ-ով։ Սակայն մեզ համար կաթնատվության բարձրացումը առաջնահերթ խնդիր է։ Կուսակցությունն ու կառավարությունը բարձր գնահատեցին շրջանի անասնապահների անձնվեր աշխատանքը. 16 առաջավորներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։ Անասունների գլխաքանակի աճի, անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների գործում ձեռք բերած լուրջ հաջողությունների համար շրջանն անցած տարվա երրորդ եռամսյակում արժանացավ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին և դրամական առաջին կարգի մրցանակին։

Սակայն չի կարելի ժխտել, որ սոցիալիստական մրցության գործում թերություններ չեն եղել։ Առանձին կուսկազմակերպություններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում մրցության կազմակերպմանը, մոռանում են, որ այն աշխատավորների ստեղծագործական ուժերի ու ջանքերի դրսևորման կարևոր ձև է, հանրային արտադրության զարգացման ուժեղ խթան։ Մրցության անբավարար կազմակերպման հետևանքով մի շարք տնտեսություններ չեն կատարում իրենց պարտավորությունները, տարին փակում են ցածր արդյունքներով։ Սարալի, Հարթագյուղի, Ջրաշենի, Սարամեջի և Ջիգդամալի տնտեսությունները շրջանի միջինից պակաս կաթ են ստանում, մի շարք տնտեսություններ մեծ չափերով թերակատարում են շաքարի ճակնդեղի բերքատվության պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

Կուսշրջկոմը չի շրջանցում այդ ամենը, այլ հետևողականորեն զբաղվում է արտադրության նեղ տեղերի վերացմամբ, գործուն միջոցներ մշակում սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար, երբեմն դիմում կազմակերպչական միջոցների։ Այսպես, տրիկոտաժի ֆաբրիկայում դրությունն անմխիթար էր։ Աշխատանքի վատ կազմակերպման և սոցիալիստական մրցության գործը ձախողելու հետևանքով՝ ձեռնարկությունը չկատարեց 1973 թ. պետական առաջադրանքները։ Ավելին, դիրեկցիայի և կուսկազմակերպության միանգամայն անպատասխանատու վերաբերմունքի հետևանքով մի խումբ հանցագործ տարրերի հաջողվել էր հափշտակել պետական ունեցվածքը, մեծ վնաս հասցնել ձեռնարկությանը։ Իսկ այդ ամենը բացասա-



բար էր անդրադառնում ոչ միայն պարտավորությունների, այլև պլանների կատարման վրա, թևաթափ էր անում բանվորներին։

Կուսակցության շրջանային կոմիտեն քննարկեց այդ հարցը։ Թերությունների ու սխալների համար ֆաբրիկայի ղեկավարները տույժի ենթարկվեցին, միջոցառումներ մշակվեցին տեղ գտած թերությունները վերացնելու համար։ Կուսկազմակերպության ուշադրությունը հրավիրվեց սոցիալիստական մրցության կազմակերպման, աշխատանքային կարգապահության ամրապնդման վրա։ Այժմ ֆաբրիկայում նկատելի դրական տեղաշարժեր կան։ Արդեն այս տարվա հունվար ամսին ձեռնարկությունը զգալիորեն գերակատարեց համախառն արտադրանքի թողարկման պլանները, որոշակի կարգ ու կանոն է մտցվել արտադրության ղեկավարման մեջ, ուժեղացել է հսկողությունը պետական ունեցվածքի պահպանության նկատմամբ։

Գործի հանդեպ ցածր պատասխանատվություն հանդես բերելու, հանրային ունեցվածքի պահպանության գործը անուշադրության մատնելու և պետական առաջադրանքների կատարումը չապահովելու համար կուսշրջկոմի բյուրոն 1973 թ. աշխատանքից հանեց Լեռնանցքի, Թափանլիի և Շենավանի տնտեսությունների ղեկավարներին։

Կադրերի նկատմամբ պահանջկոտության, հանձնարարված գործը պարտաճանաչությամբ և անթերի կատարելու համար նրանց պատասխանատվության բարձրացման խնդիրը միշտ էլ գտնվել ու այսուհետև կգտնվի շրջանային կոմիտեի, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում, քանի որ ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. նոյեմբերյան պլենումում, առանց վերահսկողության հնարավոր չէ իրականացնել ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծումները, ապահովել պլանների ու պարտավորությունների կատարումը։

Հնգամյա պլանով սահմանված բնագծերը նվաճելու, սոցիալիստական պարտավորությունները կատարելու գործում որոշիչ նշանակություն ունի արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը, նրանց ավանգարդային դերի ապահովումը։ Այդ ասպարեզում կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները կատարում են հետևողական աշխատանք։ Անցյալ տարվա օգոստոս ամսին շրջկոմի պլենումում քննարկված հարցը դրան էր վերաբերում։ Կոմունիստների ճնշող մեծամասնությունը անմիջականորեն զբաղված է արտադրության ոլորտում։ Շրջանային կոմիտեն պլանավորված կերպով բյուրոյի նիստերում լսում է կուսկազմակերպությունների հաշվետվությունը, բարձրացնում նրանց դերն ու պատասխանատվությունը հնգամյակի խնդիրների լուծման գործում։

Շրջանի արտադրական ձեռնարկությունները, տրանսպորտի և շինարարական կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները, արտադրամասերն ու բրիգադները, հազարավոր բանվորներ ու կոլտնտեսականներ ընդգրկված են կոլեկտիվ ու անհատական սոցիալիստական մրցության մեջ։ Շատ կոլեկտիվներ մրցում են հանրապետության սահմաններից դուրս, եղբայրական հանրապետությունների կոլեկտիվների հետ։ Արդեն ավանդական է դարձել Սպիտակի վերելակաշինական գործարանի մրցությունը Բելոռուսական ՍՍՀ Մոգիլյովի վերելակաշինական գործարանի հետ, կաշվի փոխարինիչների գործարանինը՝ Թբիլիսիի ռետինատեխնիկական իրերի գործարանի, Սպիտակի երկաթուղային կայարանինը՝ Վրացական ՍՍՀ Քոբուլեթիի երկաթուղային կա-

յարանի, շաքարի գործարանինը՝ Բելոռուսական ՍՍՀ Սկիդելի շաքարի գործարանի հետ և այլն։ 1966 թվականից շարունակվում է Սպիտակի շրջանի և Կրասնոդարի երկրամասի Կուրգանինսկի շրջանի աշխատավորների մրցությունը։ Մրցակիցների պատվիրակությունների փոխադարձ այցելությունները միշտ վեր են ածվում հայ և ռուս ժողովուրդների բարեկամության վառ ցույցի, նշանակալից դեր խաղում նորն ու ուսանելին ընդօրինակելու, առաջավոր փորձը արմատավորելու գործում։

Մեր շրջանի կուսկազմակերպությունները, բանվորներն ու կոլտնտեսականները, ջերմորեն արձագանքելով կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումին, շարունակում են մրցությունը իններորդ հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Ինչպես Կենտկոմի դիմումը, այնպես էլ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀՄԱԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները լայնորեն քննարկվեցին կուսակցական ու աշխատավորական կոլեկտիվների ժողովներում։ Մեր մարդիկ միահամուռ միանում են ՍՄԿԿ Կենտկոմի դիմումում արտահայտված այն մտքին, որ, իրոք, «1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ոչ միայն այս հնգամյակի հաջող ավարտման համար, այլև կարևոր քայլ կլինեն եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ամուր հիմք ստեղծելու համար»։

Ելնելով դիմումի և սոցիալիստական մրցության մասին որոշումների նոր պահանջներից՝ աշխատավորական կոլեկտիվները, կուսկազմակերպությունների անմիջական մասնակցությամբ ու ղեկավարությամբ, ինքնաքննադատաբար ամփոփելով անցած տարվա արդյունքները, մշակեցին իններորդ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա սոցիալիստական պարտավորությունները, որոնք զգալիորեն գերազանցում են պլանային առաջադրանքները։ Արտադրության առաջավորների շրջանային հավաքը ընդունեց նաև շրջանի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների 1974 թ. սոցիալիստական պարտավորությունները։

Արդյունաբերության բնագավառի աշխատողները սոցմրցությամբ պարտավորվել են համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարել ժամկետից 4 օր շուտ՝ դեկտեմբերի 27-ին, իրացմանը՝ դեկտեմբերի 26-ին, օգուտների պլանը՝ 105 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել երկու տոկոսով։ Ձեռնարկությունների կոլեկտիվները մշակել և ընդունել են նաև հանդիպական պլաններ, հանդես են բերում ներքին ռեզերվները լիովին օգտագործելու պատրաստակամություն։ «Շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարել դեկտեմբերի 20-ին, շահագործման հանձնել բոլոր նախատեսվող օբյեկտները, բարձրացնել շինարարության որակը»— այսպիսի խոստում են տվել շինարարները։ Ձեռնարկությունների կոլեկտիվների մրցության նպատակն է՝ հարազատ մնալ ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի՝ «Տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք, ավելի պակաս ծախսումներով» լոզունգին։

Գյուղատնտեսությունն առաջատար ճյուղ է մեր շրջանի էկոնոմիկայում։ Այս բնագավառի պարտավորությունները, ճիշտ է, լարված են, բայց բխում



են կոլտնտեսությունների ու սովխոզների ռեալ հնարավորություններից, պահանջում են գործողության մեջ դնել նորանոր ռեզերվներ։ Դաշտավարները նախատեսված պլանից ավել 18 հազար ցենտներ հացահատիկ արտադրելու խոստում են տվել։ Ճակնդեղագործները պարտավորվել են արտադրել 366 հազար ցենտներ շաքարի հումք, պլանավորված 352 հազարի դիմաց։ Բանջարեղենի համախառն արտադրանքը ևս զգալիորեն կգերազանցի պետական պլանը և կհասնի 13.340 ցենտների։ Աճը հիմնականում կապահովվի յուրաքանչյուր հեկտարի բերքատվության բարձրացման հաշվին։ Իսկ դրա համար հարկ կլինի հետևողականորեն իրականացնել ագրոտեխնիկական միջոցառումները, բարձրացնել մեքենայական աշխատանքի մակարդակը։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները այդ խնդիրների վրա են հրավիրում արտադրության մարդկանց ուշադրությունը։ Այս տարի ևս լուրջ խնդիրներ են ծառացած անասնապահության բնագավառի աշխատողների առջև։ Նրանք պարտավորվել են զգալի չափով ավելացնել խոշոր և մանր եղջերավոր անասունների, խոզերի ու թռչունների գլխաքանակը, արտադրել 1900 տոննա միս, 6 հազար տոննա կաթ, 120 տոննա բուրդ, մեկ մլն 670 հազար հատ ձու։ Պետությանը վաճառել 1680 տոննա միս, 4600 տոննա կաթ, մեկ մլն 100 հազար հատ ձու, 165 տոննա բուրդ և այլն։

Որոշիչ տարվա առաջին իսկ օրվանից զգացվում են շրջանի աշխատավորների արտադրական թափը, խանդավառությունը, այս տարվա բնագծերը նվաճելու նրանց հաստատ ու վճռական կամքը, ձգտումը։ Այդ բանի ապացույցը նրանց առաջին արդյունքներն են։ Արդյունաբերական ձեռնարկությունները բոլոր գծերով կատարել և գերակատարել են որոշիչ տարվա անցած երկու ամիսների պլանները։ Անասնապահների քրտնաջան աշխատանքի շնորհիվ այժմ շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում օրական ստացվում է 1500—1800 կգ ավելի շատ կաթ, քան նախորդ տարվա նույն ժամանակաշրջանում։ Մ. Պարնիի, Թափանլիի, Ղուրսալիի, Սպիտակի, Սարալի և այլ տնտեսություններում կաթի օրվա աճը կազմում է 100—450 կգ։

Այս տարվա հաջողությունները մեծ չափով պայմանավորված են գարնանացանի նախապատրաստման մակարդակով։ Արձագանքելով Մ. Պարնիի մեխանիզատորների հայրենասիրական կոչին՝ շրջանի տրակտորիստ-մեքենավարները սոցիալիստական մրցություն են ծավալել՝ գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։

Սկզբնական կուսկազմակերպություններն ամենօրյա մասսայական-բացատրական աշխատանքով շրջանի աշխատավորներին պարզաբանում են նրանց տեղն ու դերը այս տարվա մեծ խնդիրների կատարման գործում։ Այդ նպատակին են ուղղվել պրոպագանդիստների, ագիտատորների, քաղինֆորմատորների, կուլտլուսհիմնարկությունների աշխատողների սեմինար-խորհրդակցությունները։

Շրջանի աշխատավորությունը, կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունները ձգտում են է՛լ ավելի բարձր պահել սոցիալիստական մրցության դրոշը, ուժ ու եռանդ չխնայել, մոբիլիզացնել բոլոր ուժերը՝ հնգամյակի որոշիչ տարում շրջանի առջև դրված խնդիրները պատվով լուծելու, հնգամյակը հաջողությամբ եզրափակելու լավ նախադրյալներ ստեղծելու համար։

Ռ Ե Պ Ո Ր Տ Ա Ժ

# ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՄԵՏԱՔՍ Է ՀՅՈՒՍՎՈՒՄ

ԱԻԴԱ ՀՈՎՆԱՆՅԱՆ

Առաջին ծանոթությունն արտադրության մարդկանց հետ սկսվում է պատվոտախտակներից: Առաջավորների ծառուղում ցուցադրված են Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի երեկվա և այսօրվա առաջավորների մեծադիր դիմանկարները: Կարդում եմ մակագրությունները. Սոցիալիստական աշխատանքի հերոս Ծաղկանուշ Գալեմտերյան, Հայաստանի Գերագույն սովետի դեպուտատ Ռոզա Սամսոնյան, Լենինի շքանշանակիր Վարդուշ Խառատյան, Յուրի Պետրոսյան... Շատ են՝ քսաներկուսը:

Պատվո տախտակին է փակցված Յուրի Պետրոսյանի ղեկավարած առաջավոր բրիգադայի խմբանկարը: Յուրիի բրիգադան կուսակցության, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումի առաջին արձագանքողներից է: Ցուցանիշների տախտակին նշված են արտադրամասերի և հերթափոխությունների օրական պլանային առաջադրանքների կատարման արդյունքները՝ ինչպես ը՛ստ թողարկվող արտադրանքի, այնպես էլ ը՛ստ որակի: Դեպի արտադրամասերը տանող ծառուղիներում աչքի են զարնում կարմիր պաստառները, որոնք ազդարարում են՝ «Հնգամյակը չորս տարի և վեց ամսում», «Բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը», «Ավելի պակաս ծախսումներով տալ ավելի շատ ու լավորակ արտադրանք»...

ՍՄԿԿ XXIV համագումարի անվան ծառուղում ուշադրությունս գրավում են կոմբինատի 1974 թվականի սոցիալիստական պարտավորությունները: Կարդում եմ. **Պետական առաջադրանքը կատարել ժամկետից** շուտ՝ **դեկտեմբերի 27-ին. պլանից ավելի թողարկել 100 հազար մետր գործվածք. աշխատանքի արտադրողականության պլանը գերակատարել 2 տոկոսով. առաջին տեսակի արտադրանքի քանակը պլանի համեմատությամբ ավելացնել երեք տոկոսով, «Որականիշ» գործվածքների թողարկումը հասցնել մինչև 1,1 միլիոն ռուբլու, տնտեսել 500 հազար կվտ ժամ էլեկտրաէներգիա, 400 տոննա պայմանական վառելանյութ. բարձրացնել 500 բանվորի որակավորումը, յուրացնել 150 նոր զարդանախշ և 10 նոր տեսակի գործվածք. ռացիոնալիզատորական առաջարկներից ստանալ 200 հազար ռուբլու պայմանական օգուտ...**

Կոմբինատի ամենամեծ արտադրաօղակները գործվածքային № 2 և № 3 արտադրամասերն են: Կուսկոմիտեի քարտուղար Ա. Սարգսյանի հետ մտնում ենք ներս: Ընդարձակ ու լուսավոր տարածություն է: 828 հաստոցներ շարունակ աղմկում են: Ինչպես իրենք՝ մետաքսագործներն են սիրում ասել, սա կոմբինատ է կոմբինատի մեջ: Արտադրամասերը բաժանող սահմանագծով մեզ է մոտենում միջահասակ, գանգրահեր մի երիտասարդ: Դեմքը ծանոթ է: Կուսկոմիտեի քարտուղարը հիշեցնում է՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր՝ Յուրի Պետրոսյան: Պարզվում է՝ «խախտել ենք» նրա բրիգադայի սահմանը: Օգտվելով առիթից՝ մոտենում եմ ջուլհակուհիներին: Վեցն են: Հինգը սպասարկում է վեցական հաստոց և միայն մեկը՝ չորս:

Անցած տարի բրիգադան քայլել է առաջավորների շարքում, գերակատարել պլանները, իսկ այս տարի աղջիկները պարտավորվել են տարեկան պլանը կատարել նոյեմբերի 29-ին, մինչև տարվա վերջը թողարկել 21 հազար մետր արտապլանային գործվածք, բացառապես՝ գերազանց որակի: Նրանց նշանաբանն է՝ «Մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար». Գործընկերոջ բացակայությունը չպետք է անդրադառնա պլանների կատարման վրա: Գործի են գալիս մի 10—15 րոպե շուտ, նախապատրաստում հաստոցները. չէ՛ որ իրենք խոստացել են նաև ռացիոնալ օգտագործել աշխատաժամանակը:

Առավել դժվար է բրիգադավարի գործը. նա պատասխանատու է 32 հաստոցի անխափան աշխատանքի համար: Եվ ջուլհակուհիներն իրենց հաջողությունների համար պարտական են նրա բարեխղճությանն ու մասնագիտական հմտությանը: Բրիգադայի անդամներից Յասիմուլա Խաչատրյանը մրցության է հրավիրել անցած տարվա սոցմրցության հաղթող Իրմա Մկրտչյանին: Իրման այդ օրը գործի էր գալու երկրորդ հերթին, ուստի, նրա մասին խնդրեցի պատմել արտադրամասի պետ Փայլակ Հակոբյանին:

— Իրման մեր առաջավորներից է: Կոմունիստ է: 1973-ի օգոստոսի 1-ին կատարեց իններորդ հնգամյակի արտադրական ծրագիրը և այժմ աշխատում է տասներորդ հնգամյակի հաշվին: Նա այս տարվա երկրորդ եռամսյակից 12 հաստոցի փոխարեն սպասարկելու է 18-ը, և պարտավորվել է ընթացիկ տարում կատարել 24 ամսվա պլան, իսկ մինչև 1975 թվականի վերջը՝ ևս մեկ հնգամյակի առաջադրանք:

Այո՛, Յասիմուլան բավական ուժեղ մրցակից է ընտրել: Նրան մաղթում ենք հաջողություն իր դժվարին պայքարում և շարժվում առաջ:

Դեռ հեռվից կարմրին են տալիս հաստոցներին ամրացված հուշադրոշները: Մոտենում ենք հաստոցներից մեկին: Պարզվում է, որ այդ փոխանցիկ հուշադրոշները տրվում են օրվա հաղթողներին: Դրոշները տարբեր են: Ահա ևս մի փոխանցիկ՝ միջարտադրամասային է: Տրվել է գործվածքային № 3 արտադրամասին՝ օրվա սոցմրցությունում երկրորդ տեղը գրավելու համար:

Մի այլ հուշադրոշ էլ ծանոթացնում է. «Այստեղ աշխատում է սոցիալիստական աշխատանքի հերոս Ծաղկանուշ Գալեմտերյանը»: Նրա մասին շատ են գրել՝ տարիներ շարունակ: Այսօր երիտասարդ ջուլհակուհիները համարձակվում են մրցության «հրավեր նետել» հերոսուհուն, և... ջահելությունը հաղթում է: Այդ համարձակներից է Կարինե Պետրոսյանը: Դեռ 1973-ին կոմբինատի ընդհանուր ժողովում Կարինեն մրցության հրավիրեց Ծաղկանուշին և... հաղթեց: Քսաներկու տարեկան է Կարինեն, կոմունիստ, արտադրամասի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարի տեղակալ, ծանրաբեռնված հասարակական տարբեր պարտականություններով: Հեշտ չէր մրցությունը: Ընդա-

մեկը երկու տարի էր, ինչ եկել էր կոմբինատ, և ահա... հաղթանակ: Իսկ թե ինչպես դա հաջողվեց, պատմեց ինքը՝ Կարինեն.

— Ձգտում էի և այժմ էլ ձգտում եմ ժամանակս օգտագործել արդյունավետ, ճիշտ կատարել անցումները հաստոցից-հաստոց: Ե՛լ ավելի հմտանալ իմ գործում: Պատահել են օրեր, հենց չլինելու պատճառով, աշխատել եմ երկու հաստոցով, բայց կատարել երեքի նորմա:

Կարինեն չորս հաստոց է սպասարկում, թողարկում է նուրբ տեսակի թելի գործվածք, օրական նորման գերակատարում է 50 տոկոսով: Նա խոստացել է հնգամյակի որոշիչ տարին ավարտել նոյեմբերի 7-ին, առաջին տեսակի գործվածքի քանակը, պլանով նախատեսված 50-ի փոխարեն, հասցնել 85 տոկոսի (սա բավական դժվար է, պահանջվում է առավելագույն ուշադրություն և լարվածություն), տիրապետել երկրորդ՝ հանգուցակապողի, մասնագիտությանը: Այս տարի Կարինեի մրցակիցը ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Լենինի շքանշանակիր Ռոզա Սամսոնյանն է: Երկուսին էլ՝ հաջողություն:

Կոմբինատում երիտասարդները շատ են: Նրանք պայքարում են, խիզախում, ձեռք բերում արտադրական փորձ ու հմտություն: Սակայն այդ ամենը նրանք սովորել և սովորում են հնագույն աշխատողներից: Ահա նրանցից մեկը՝ Զեմֆիրա Ներսիսյանը: Առաջավոր ջուլհակուհի է, կոմբինատի հիմնադիրներից: Արդեն երկու տասնամյակ մետաքս է գործում: Այնքան է վարժվել իր աշխատատեղին, աղմուկին, որ ո՛չ հաստոցների միջև եղած հեռավորությունն է զգում, ո՛չ էլ աղմուկը: Օրական նորման 100 մետր է, բայց տալիս է 145—150 մետր բարձրորակ գործվածք: Մրցում է Ազնիվ Ջուրյանի հետ:

— Թեև փետրվար ամսվա արդյունքները դեռ չեն ամփոփված, բայց գիտեմ, որ հաղթողը ես եմ,— անկեղծ ուրախությամբ հպարտանում է Զեմֆիրան:

Իսկ թե ինչու է նա այդքան վստահ իր հաղթանակին, Զեմֆիրան պատասխանեց. «...որովհետև մեր բրիգադան լավն է»: Միամիտ պատասխան է, բայց մեծ խորհուրդ ունի: Վստահությունը կոլեկտիվի ուժի նկատմամբ եռանդով է համակում և անհատին: «Մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար» նշանաբանով, ինչպես երևում է, կոմբինատում շատերն են աշխատում:

Ոլորման արտադրամասում ենք: Այստեղ կարծես տոն լիներ: Կարմիր հուշադրոշները փակցված էին և՛ հաստոցներին, և՛ բրիգադայի տերիտորիայում, և՛ արտադրամասի տարբեր տեղամասերում: Օրվա անհատական, միջբրիգադային, հերթափոխային, հումքի խնայողության, արտադրական բարձր կուլտուրայի համար և էլի մի քանի հուշադրոշներ, փոխանցիկ դրոշներ զարդարում են արտադրամասը: Ինչպես գործվածքային ու մյուս արտադրամասերում, այստեղ ևս լուսատախտակները ներկայացնում են և՛ օրվա հաղթողին, և՛ օրվա խոտան արտադրանք թողարկած ջուլհակուհուն, ծանոթացնում նրանց արդյունքներին:

Անցնում ենք արտադրամասից-արտադրամաս: Ամենուրեք մաքրություն է: Պատահական չէ, որ անցած տարվանից կոմբինատը կրում է «Արտադրության բարձր կուլտուրայի ձեռնարկություն» կոչումը: Եվ այժմ էլ կոլեկտիվը շարունակում է պայքարել այդ կոչման համար: Իսկ օրվա «Արտադրության բարձր կուլտուրայի համար» տրվող փոխանցիկ դրոշը շահել են նախապատրաստական արտադրամասի մետաքսագործները:



Բազմազան են մրցության ձևերը կոմբինատում: Ամեն մի արտադրամաս, հերթափոխություն, բրիգադա, յուրաքանչյուր ջուլհակուհի ունի իր պարտավորությունը, մասնակցում է մրցության այս կամ այն ձևին: Մրցությունը ոչ միայն կոմբինատի ներսում է: Կոլեկտիվը շարունակում է իր ավանդական մրցությունը Կիևի Դարնիցկու, Թբիլիսիի և Ստեփանակերտի մետաքսի կոմբինատների կոլեկտիվների հետ:

Երբ վերադարձանք կուսկոմիտե, քարտուղարը ծանոթացրեց արժանահիշատակ մի շարք գործերի:

— Մեր ողջ կոլեկտիվը,— ասաց նա,— կոմունիստներն ու կոմերիտականները սոցմրցության առաջին շարքերում են: Գերազանց աշխատանքի համար կոմբինատը 1973 թվականին չորս եռամսյակ անընդմեջ արժանացավ ՍՍՀՄ թեթև արդյունաբերության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշին և դրամական առաջին կարգի մրցանակին: Միությունում լինել առաջինը և՛ հպարտություն է, և՛ պարտավորեցնող: Սոցմրցության մասնակիցներից շատերին այսօր տեսաք, շատերի հետ զրուցեցիք: Նրանք 1450-ն են: Մրցությունն անկարելի է պատկերացնել առանց նյութական ու բարոյական խրախուսանքի: Դա արտադրության զարգացման կարևոր ազդակ է: Առաջավորների համար սահմանել ենք արտադրության մեկ, արտադրամասային երկու, հերթափոխային երեք, միջբրիգադային տասը փոխանցիկ դրոշներ և դրամական մրցանակներ: Այսօր և ամեն օր շատերն են պայքարում դրանց արժանանալու համար: Կիրառում ենք նաև մրցության այլ ձևեր: Հետաքրքրական են հումքի ռացիոնալ օգտագործմանը, սարքավորումների տեխնիկական գերազանց վիճակի ապահովմանը և որակին նվիրված մեր մրցույթ-ստուգատեսները, որոնք օգնում են փորձի փոխանակմանն ու մասնագիտական որակավորման բարձրացմանը: Ավանդական են դարձել «Ջուլհակուհու օր», «Ենթավարպետի օր» հավաքները: Դրանք ի հայտ են բերում նորանոր անուններ:

Ինչպես երևում է քարտուղարի հաղորդումից, բանվորների հետ ունեցած զրույցներից և իմ անձնական տպավորություններից, կոմբինատում մեծ կարևորություն է տրվում սոցիալիստական մրցությանը, այն դիտվում է որպես առաջընթացի ու մարդկանց աշխատանքային դաստիարակության վճռական միջոց:

— Ե՛վ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը, և՛ 1974 թ. համամիութենական սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը,— շարունակում է պատմել ընկ. Ա. Սարգսյանը,— լայն արձագանք են գտել մեր կոլեկտիվում, աշխատանքային նոր սխրանքների կոչել նրա անդամներին: Արդյունքը՝ փետրվար ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը գերակատարել ենք 168 հազար, իրացմանը՝ 128 հազար ռուբլով: Այլ խոսքով, երկրին հանձնել ենք 52 հազար քառակուսի գծամետր արտապլանային մետաքսե գործվածք:

...Աշխատանքի ժամն ավարտվում է: Հերթափոխության հետ դուրս եմ գալիս և ես: Մտովի հրաժեշտ եմ տալիս և հաջողություն մաղթում այսօրվա ծանոթներիս և այն շատերին, որոնց աշխատանքով է կոմբինատը դարձել առաջավոր, լայն ճանաչում գտել ոչ միայն մեր հանրապետությունում, այլև Միությունում:

## ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

# ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՒ ԳՆԱԿԱԶՄԻ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆԸ

ԼՅԱԼՅԱ ՆԱԶԱՐՅԱՆ

*Անպրանքային արտադրության տիրապետության ոլորտներում գինն այն տնտեսական ազդակն է, որն էական դեր է խաղում շահույթների ու վնասների վերաբաշխման գործում։*

*Սոցիալիստական հասարակարգում գների կարգավորիչ դերը իրականացվում է պլանաչափորեն, քանի որ այն սահմանվում է արտադրության զարգացման տեմպերին ու տնտեսության կառուցվածքին համապատասխան՝ ապահովելով արտադրության և իրացման անհրաժեշտ հավասարակշռությունը։*

*Այժմ, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, ՍՄԿԿ ծրագրի համաձայն «Պետք է շարունակ բարելավել գների սիստեմը, այն համապատասխանեցնելով կոմունիստական շինարարության խնդիրներին...։ Աշխատանքի արտադրողականության աճի և արտադրանքի ինքնարժեքի իջեցման բազայի վրա գների սիստեմատիկ, տնտեսապես հիմնավորված իջեցումը հիմնական ուղղությունն է կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում գների քաղաքականության ասպարեզում» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 512)։ Այդ ուղղությամբ տարվող գների հաջորդական բարելավումը պետք է ընթանա աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումների առավել մեծ չափերի արտացոլմամբ, արտադրության և շրջանառության ծախսերի փոխհատուցմամբ և նորմալ աշխատող յուրաքանչյուր ձեռնարկության անհրաժեշտ որոշակի շահույթի ապահովմամբ։*

*Տնտեսավարման նոր պայմաններում կարևորագույն խնդիրներից է շահութաբերության դերի բարձրացումը, որը դրսևորվում է որպես արտադրության ժողտնտեսական արդյունավետությունն ընդհանրացնող ցուցանիշ։ Ընդգծելով այդ խնդրի կարևորությունը, դեռևս 1922 թ. Վ. Ի. Լենինը գտնում էր, որ դատական պատասխանատվության պետք է ենթարկվեն ոչ շահութաբեր ձեռնարկության ղեկավարները։ «...տրեստներն ու ձեռնարկությունները հիմնված են տնտհաշվարկի վրա,— գրում էր նա,— հենց նրա համար, որպեսզի նրանք իրենք պատասխանատու լինեն և ընդսմին, ամբողջապես պատասխանատու լինեն իրենց ձեռնարկությունների շահաբերության համար» (Երկեր, հ. 35, էջ 589)։*

*Շահութաբերության կարգավորման խնդիրն առավել առաջնակարգ դար-*



*ձավ հատկապես 1965 թ. տնտեսական ռեֆորմից հետո։ Այդ առիթով Ա. Ն. Կոսիգինը նշում է. «...ամրապնդել ու զարգացնել տնտհաշվարկը, ուժեղացնել արտադրության տնտեսական խթանումն այնպիսի միջոցներով, ինչպիսիք են գինը, շահույթը, պարգևատրումը, վարկը և այլն» (Ա. Ն. Կոսիգին, զեկուցում 1967 թ. սեպտեմբերի 27-ի Կենտկոմի պլենումում)։*

*Անդրադառնալով գների դերի կարգավորմանը, ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր է դրել բնակչության հարաճուն վճարունակ պահանջարկի բավարարումն ապահովել «...ժողովրդական սպառման ապրանքների պետական մանրածախ գների կայուն մակարդակը պահպանելու և առանձին ապրանքների գները՝ դրանց արտադրության աճի և անհրաժեշտ ռեսուրսների կուտակման համեմատ իջեցնելու պայմաններում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 264—265)։*

*Գնագոյացման հիմնական պրոբլեմը, որով և պայմանավորված է յուրաքանչյուր ձեռնարկության կուտակումների օբյեկտիվ չափերի ճիշտ սահմանումը, տարբեր արտադրատեսակների գներում կուտակումների առավել հավասարաչափ բաշխումն է՝ կախված այդ արտադրատեսակների ինքնարժեքի, ինչպես և օգտագործված արտադրաֆոնդերի մակարդակից։*

*Մինչև 1967 թ. գործող գները չէին արտացոլում հասարակականորեն անհրաժեշտ ծախսումները, շուկայական իրավիճակը՝ արհեստականորեն ուռճացնելով որոշ տեսակների իրացումից ստացված շահույթը կամ վնասը։ 1967 թ. նոր տնտեսական ռեֆորմով գնագոյացման որակական վերակառուցման սկիզբը դրվեց, որը նպաստեց գների հետագա մոտեցմանը աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումներին։*

*Տնտեսավարման նոր պայմաններում կարևորագույն խնդիրներից մեկը շահութաբերության դերի բարձրացումն է՝ որպես արտադրության ժողտնտեսական արդյունավետությունն ընդհանրացնող ցուցանիշ։ Այն առավել լրիվ է արտացոլում ձեռնարկության տնտեսական գործունեության ընթացքում եղած դրական և բացասական գործոնների ներգործությունն արտադրության զարգացման վրա։ Հետևապես, գործող գները տնտհաշվարկային ձեռնարկությանը պետք է ապահովեն շահույթի այնպիսի չափեր, որոնցով հնարավոր լինի փոխհատուցել արտադրաֆոնդերի դիմաց կատարվող վճարումները, սոցիալական ապահովագրության հատկացումները և միջոցներ ստեղծել արտադրության զարգացման ու անձնակազմի խրախուսման համար։ Այս պահանջից ելնելով, այժմ տնտեսագետների մեծամասնության կողմից ընդունվող գնի ընդհանուր ելակետային մոդելը (դրված մեծածախ գների վերանայման հիմքում) ընդգրկում է և՛ արտադրաֆոնդերի, և՛ աշխատավարձի նկատմամբ հաշվարկված շահութաբերության տոկոսները։*

*Գների այս մոդելն արտահայտում է աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումների մոդիֆիկացված ձևի հավասարության վրա հիմնավորված ապրանքա-դրամական հարաբերությունների համարժեքության սկզբունքը։ Դրա նպատակն է՝ աշխատատարության, ֆոնդատարության և բնական պայմանների հաշվառմամբ, մեծածախ գներում ընդգրկել զուտ եկամուտը։ Միաժամանակ, այն զերծ չէ ներքին հակասություններից։ Երկու հատկանիշներով շահութաբերության սահմանումը՝ աշխատավարձի ու արտադրաֆոնդերի տեսակարար ծախսերի տարբեր հատկացումներով, անխուսափելիորեն նպաստում են ձեռնարկություններում «շահավետ» և «ոչ շահավետ» արտադրատե-*

սակների առաջացմանը։ Անցյալի աշխատանքի հավասար ծախսումների և միատեսակ ֆոնդատարության դեպքում, աշխատատար տեսակի արտադրությունը ձեռնարկության համար դառնում է առավել շահութաբեր։ Բայց այդ հանգամանքը կարող է բացասաբար անդրադառնալ պլանով սահմանված արտադրատեսակների թողարկման վրա։ Դրանից խուսափելու նպատակով աշխատավարձի նկատմամբ հաշվարկվող զուտ եկամտի վրաեկը նպատակահարմար է թողնել ինքնարժեքի կազմում, իսկ նյութական խրախուսման սիստեմը կապել ֆոնդերի նկատմամբ հաշվարկվող շահութաբերության ցուցանիշի հետ։

Գործնականում արտադրատեսակներից յուրաքանչյուրի շահութաբերության փաստացի մակարդակը արտադրաֆոնդերի միջին տարեկան արժեքի նկատմամբ կարող է հաշվարկվել միայն պայմանականորեն։ Հետևապես, տարբեր արտադրատեսակների գներում արտահայտված շահութաբերության փաստացի ստույգ մակարդակները հնարավոր է որոշել միայն յուրաքանչյուր ապրանքատեսակի կամ ապրանքախմբի ինքնարժեքի համեմատությամբ։ Այս առումով հաշվարկված սննդարդյունաբերության հիմնական արտադրատեսակների շահութաբերությունն ունեցել է հետևյալ պատկերը.

ՀՍՍՀ ՍՆՆԴԻ ԱՐՏԱԴՐԱՏԵՍԱԿՆԵՐԻ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՄ ՎՆԱՍԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ (—) 1965—1971 ԹԹ.[1]
(ինքնարժեքի նկատմամբ տոկոսներով)

| Արտադրատեսակների անվանումը | 1965 | 1967 | 1969 | 1971 |
|---|---|---|---|---|
| Ոչխարի միս (տոննա) | 18,4 | 12,4 | 11,2 | 10,5 |
| Տավարի միս » | 10,5 | 16,5 | 5,6 | 12,0 |
| Խոզի միս » | 7,2 | 3,7 | 4,4 | 7,7 |
| Երշիկեղեն » | 1,2 | 3,8 | 6,4 | 11,7 |
| Պանիր խոշոր գլուխ » | 51,0 | 17,6 | 21,4 | 65,7 |
| Պանիր մանր գլուխ » | —4,5 | 9,7 | 9,1 | 13,7 |
| Կաթ » | 48,2 | 13,9 | 21,4 | 35,5 |
| Շաքար » | 24,8 | 4,4 | —21,8 | 11,3 |
| Գինի թնդեցրած (100 դկլ) | 8,1 | 3,8 | 6,7 | 4,2 |
| Գինի սեղանի » | 2,4 | 7,5 | 11,8 | 8,6 |
| Ծխախոտ ֆերմենտացիոն (տոննա) | 5,4 | 2,9 | 6,3 | 8,0 |

Այս տվյալները վկայում են, որ յուրաքանչյուր ապրանքատեսակի շահութաբերությունը մինչև 1967 թ. և 1967 թ. նոր մեծածախ գների կիրառումից հետո, միանման են տատանվել։ Հաշվարկված տեսակներից մի մասի շահութաբերությունն ինչպես 1967 թ. 1965 թ., այնպես էլ 1971 թ. 1967 թ. համեմատությամբ նվազել են, իսկ մյուս մասինը աճել։ Միայն շաքարի արտադրությունն է, որ 1965—1967 թթ. եղել է շահութաբեր, իսկ 1968—1969 թթ. բնական անբարենպաստ պայմանների հետևանքով՝ վնասաբեր։ Յուրաքանչյուր ապրանքատեսակի շահութաբերության տնտեսական հիմնավորվածությունն առավել պարզորոշ կլիներ ինքնարժեքի հաշվարկված շահութաբերության ընդ-

[1] 1965—1971 թթ. ՀՍՍՀ ԿՎՎ գների վիճակագրության բաժնի № 1—СП հաշվետվությունների տվյալների համաձայն։



հանուր նորմայի առկայության դեպքում։ Ուստի, առավել նպատակահարմար է սահմանել շահութաբերության ընդհանուր նորման նաև ինքնարժեքի հարաբերությամբ, ինչպես այն սահմանվել է արտադրաֆոնդերի գումարի նկատմամբ։ Գործնականում այդ նորման հնարավոր է հաշվարկել որպես արտադրանքի իրացումից ստացված շահույթի և այդ արտադրանքի միջճյուղային փաստացի լրիվ ինքնարժեքի հարաբերություն։ Այդ նորմայի փաստացի շահութաբերության մակարդակի համեմատությամբ միայն հնարավոր կլինի առավել ճիշտ կողմնորոշվել յուրաքանչյուր տեսակի շահութաբերության կարգավորման հարցում։

Իրականում, գների պլանավորումից հետո, տնտեսական տարբեր գործոնների ազդեցությամբ, շահութաբերության փաստացի մակարդակը շեղվում է գներում ներառված նորմատիվից։ Տարբեր ճյուղերի ու արտադրատեսակների շահութաբերության փաստացի մակարդակները միասնականացնելու նպատակով, մեծածախ գները պարբերաբար վերանայվում են։

Այժմ անցկացվող հեռանկարային գների պլանավորման կատարելագործմամբ կնվազեն նորմատիվից դուրս փաստացի շահութաբերության ունեցած շեղումները և մասնակի վերանայման կարիք չի զգացվի։ Սակայն, դեռևս այդ շեղումներն առավել մեծ չափերի են հասնում, որոնք վկայում են առանձին արտադրատեսակների ծախքերի նախօրոք, ստույգ որոշման հնարավորությունների սահմանափակության մասին։

Ձեռնարկությունների ու պլանավորող օրգանների կողմից ծախքերի նվազեցումը և շահույթների չափերի կարգավորումը հնարավոր է իրականացնել շահութաբերության հասարակական նորմայի հաշվառմամբ գոյավորվող միասնական գների կիրառման շնորհիվ։ Ելնելով այս տեսակետից, հնարավոր է գները մոտեցնել արժեքին, բարձրացնել շահութաբերության դերը, իրականացնել միասնական քաղաքականություն՝ գնագոյացման բնագավառում։

Գործնականում շահութաբերության հասարակական նորման որոշվում է որպես շահույթի մասսայի (ներառյալ և շրջանառության հարկը) հարաբերություն-հիմնական արտադրաֆոնդերի և նյութական շրջանառու միջոցների տարեկան արժեքի նկատմամբ՝ ողջ ժողովրդատնտեսության մասշտաբով։ Այս նորման արտահայտում է ժողովրդատնտեսությունում դրսևորված տնտեսական հարաբերությունները։

Շահութաբերության հասարակական նորմայի հաշվառումն, իր հերթին, ներգործում է շահութաբերության մասնակի նորմաների սահմանման և կատարելագործման վրա։ Քանի որ սոցիալիստական տնտեսությունը նախատեսում է արտադրության կառավարման ընթացքում օգտագործել միջին մեծությունները, ապա առանց դրանց կիրառման բարդանում է յուրաքանչյուր ձեռնարկության տնտեսական գործունեության և սոցիալիստական ողջ էկոնոմիկայի վերլուծությունը։ Շահութաբերության հասարակական նորմայի ամենուր լայնորեն կիրառումն էականորեն կնպաստի շահութաբեր ապրանքատեսակների արտադրության զարգացմանը։ Բացի այդ, արտադրաֆոնդերի արժեքի և ինքնարժեքի նկատմամբ հաշվարկված շահութաբերության հասարակական նորմայի կիրառումը նախադրյալ կստեղծի արդյունաբերության ղեկավարման մեթոդների բարելավման, գների ու շահութաբերության հետագա կատարելագործման համար։ Գների հետագա կատարելագոր-

ծումը (արժեքին մոտեցնելու սկզբունքով և գներում արտադրաֆոնդերին համամասնորեն կուտակումների առավել հավասարաչափ բաշխման միջոցով) կնպաստի ոչ միայն ողջ հասարակության մասշտաբով զուտ եկամտի ստույգ մեծության որոշմանը, այլև ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում յուրաքանչյուր ապրանքատեսակի իրացումից ստացված շահույթների ճիշտ սահմանմանը։

1965—1970 թթ. հանրապետության սննդարդյունաբերության որոշ արտադրատեսակների արտադրությունից ու իրացումից ժողովրդատնտեսության մասշտաբով ստեղծված շահույթներն ու վնասներն ունեցել են հետևյալ պատկերը.

ԺՈՂՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵԿԱՄՈՒՏՆԵՐՆ ՈՒ ՎՆԱՍՆԵՐԸ[1]
(ըստ տարիների)

| Արտադրատեսակի անվանումը | Չափի միավորը | 1965 | 1967 | 1969 | 1970 | 1971 |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | (ռուբլիներով) | | |
| Գինի սեղանի | 100 դկլ | 457 | 323 | 421 | 411 | 403 |
| Գինի թնդեցված | » | 1450 | 1498 | 1485 | 1511 | 1466 |
| Կոնյակ | » | 4253 | 4564 | 4437 | — | — |
| Միս ոչխարի | (տոննա) | —821 | —1701 | —1057 | —1253 | —1416 |
| Միս տավարի | » | —678 | —963 | —1104 | —1531 | —1615 |
| Երշիկեղեն | » | — | — | —1000 | — | — |
| Ծխախոտ ֆերմենտացիոն | » | — | — | 412 | — | 851 |
| Պանիր խոշոր գլուխ | » | 1061 | — | 341 | — | — |

Հաշվարկված ցուցանիշների համաձայն, արտադրատեսակների (բացառությամբ մսի և մսամթերքների) իրացումից ժողովրդական տնտեսությունը ստացել է եկամուտներ։ Ստեղծված թե՛ եկամուտների, և թե՛ վնասների մակարդակները 1965—1971 թթ. որոշակի փոփոխվել են։ Շահույթների ընդհանուր մակարդակի տատանումը տարբեր ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական գործունեության բուն մակարդակի արդյունքն է։ Իսկ դա, իր հերթին, պայմանավորված է ժողովրդատնտեսության յուրաքանչյուր օղակում գործող գների կիրառմամբ ստեղծված շահույթներով։ Ժողովրդատնտեսության տարբեր օղակներում արտադրանքի միավորի արտադրման և իրացման շահույթներն ու վնասները մանրածախ գների կազմում ունեցել են տարբեր տեսակարար կշիռներ։

Սննդարդյունաբերության արտադրատեսակների մանրածախ գների կազմում շահույթների մեծ տեսակարար կշիռ ունեցել են թնդեցրած գինիներն ու կոնյակները, իսկ վնասաբեր են եղել մսեղենն ու մսամթերքները։ Արդյունաբերական ձեռնարկությունների, սովետական տնտեսությունների, առևտրական և այլ տնտեսական կազմակերպությունների շահույթների կամ վնասների տեսակարար կշիռները գների կազմում, ըստ հաջորդական տարիների, ենթարկվել են աննշան փոփոխությունների։

Արտադրատեսակներից՝ մսամթերքների վնասաբերության տեսակարար կշռի գերազանցությունն իր ծախքերի մակարդակից, բխում է գնման հանձնման և հաշվարկային գների անհամապատասխանությունից։ Այստեղ հաշվարկային գներն ավելի ցածր են, քան հումքի ձեռք բերման ծախքերը, որոնք փոխհատուցվել են պետական բյուջեի գների կարգավորման հատուկ հաշվից։

Սննդարդյունաբերության ճյուղերում գյուղատնտեսական հումքի որոշ տեսակների (հացամթերքներ, անասուն և այլն) մթերող կազմակերպությունները մուտքագրում և արժարկվում են գնման-հանձնման գներով, որից հետո իրացնում են արդյունաբերական ձեռնարկությունների հաշվարկային գներով։

Տնտեսապես ոչ նպատակահարմար հարատևող հարաբերությունները դեռևս գործում են հարկման ենթակա որոշ արտադրատեսակների գնագոյացման սիստեմում։ Այդ են վկայում Միության մասշտաբով որոշ արտադրատեսակների միջին մանրածախ գնակազմերի հաշվարկների ցուցանիշները։ Հաշվարկված ցուցանիշների (ՍՍՀՄ ԿՎՎ-ի) համեմատական ուսումնասիրությունը բացահայտում է գանձված շրջանառության հարկի գումարների (չնչին բացառությամբ՝ բրդյա գործվածքներ) աստիճանական նվազումը բյուջեի գների կարգավորման հատուկ հաշվի միջոցով կատարված վճարումների համեմատությամբ։ Որոշ արտադրատեսակների գների կարգավորման հատուկ հաշվից կատարված վճարումների և բյուջե մուծված շրջանառության հարկի գումարները մոտենում են միմյանց։

Շրջանառության հարկի և շահույթի միասնական բնույթն առաջադրում է եկամտի այդ ձևերի հաշվարկում այն ճյուղերում, որտեղ ստեղծվում է հավելյալ արդյունքի համապատասխան մասը։ Իսկ այժմ, գոյություն ունեցող սկզբունքով, շրջանառության հարկի վճարումն առևտրական բազաների կողմից չի համապատասխանում այդ վճարի տնտեսական բնույթին։ Այն ստանում է անուղղակի հարկի տեսք։ Միաժամանակ մանրածախ ցանցում պարենային և ոչ պարենային ապրանքային պաշարների կուտակումը, որն իր մեջ պարունակում է շրջանառության հարկի համապատասխան գումարներ, ստեղծում է հարկի պետբյուջե մուծման երևութականություն միայն։ Հետևապես, ապրանքատեսակներից գանձվող շրջանառության հարկը ֆինանսական սիստեմ մուտք է գործում ձևականորեն, քանի որ միաժամանակ ֆինանսական սիստեմն ինքն է հանդես գալիս որպես այդ գումարները վճարող։ Այն մեծածախ վաճառահանման կազմակերպություններին ու արդյունաբերական ձեռնարկություններին չվաճառված ապրանքների դիմաց, վարկերի ձևով, տրամադրում է դրամական միջոցներ՝ նախապես մանրածախ օղակի շրջանառու ֆոնդերի նորմատիվների ավելացումն ապահովելու համար։ Գնագոյացման գործող կարգով գնի կազմում ներառված շրջանառության հարկը բարդացնում է արդյունաբերության ու մեծածախ վաճառահանման կազմակերպությունների, ինչպես և արդյունաբերական ու ֆինանսական սիստեմի միջև տարվող հաշվարկները։ Իսկ շրջանառության հարկի մուծման գործող կարգն ստեղծում է տնտեսապես աննպատակահարմար կրկնակի հաշվարկներ։ Հետևապես, շրջանառության հարկի մուծումը պետբյուջե արդյունաբերական ձեռնարկության կողմից կնպաստի արտադրատեսակների գներում դրամական կուտակումների առավել հավասարաչափ բաշխմանը, ինչպես և կօժանդակի մեծածախ գների տարատեսակների նույնացմանն ու կրկնակի հաշվարկների վերացմանը։

---

[1] Հաշվարկված է ՀՍՍՀ ԿՎՎ-ի 1965—1970 թթ. գների կառուցվածքների ցուցանիշների համաձայն։

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆԸ

**Ս. Ե. ՄԵԼՔՈՆՅԱՆ**

*Ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման կատարելագործման բնագավառում ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները բխում են մեր երկրի տնտեսական զարգացման արդի փուլի որակական առանձնահատկությունների մարքս-լենինյան խոր վերլուծությունից։ Երկրի ժողովրդական տնտեսության զարգացման բարձր մակարդակը, նշվում է կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ունի ևս մեկ կարևոր արդյունք. «Լրջորեն մեծանում են պահանջները պլանավորման, կառավարման, տնտեսական աշխատանքի մեթոդների նկատմամբ... Ժողովրդական տնտեսության հսկայական մասշտաբները, աճած տնտեսական հնարավորությունները և հասարակական պահանջմունքները անհրաժեշտ են դարձնում լրջորեն բարձրացնել մեր ամբողջ տնտեսական աշխատանքի մակարդակը, էապես բարձրացնել էկոնոմիկայի արդյունավետությունը, մեր ողջ վիթխարի տնտեսությունը վերածել է՛լ ավելի լավ աշխատող, լավ կարգավորված մեխանիզմի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 51, 52)։*

*Ժողովրդական տնտեսության աճի էքստենսիվ գործոնները որոշ չափով սպառում են իրենց, ուստի, նոր հնգամյակում կարևոր է արտադրության բոլոր ռեզերվների առավելագույն օգտագործումը։ Արտադրության ոլորտում կրճատվում են լրացուցիչ բանվորական ուժի ներգրավման հնարավորությունները. որոշակիորեն սահմանափակվում են նաև կապիտալ ներդրումների աճի տեմպերը։ Ուստի, վճռական նշանակություն ունեն աշխատանքի արտադրողականության բարձրացումը, աշխատանքային, նյութական ու ֆինանսական ծախսումների միավորի դիմաց արտադրանքի զգալի ավելացումը։ Ինչպես հայտնի է, Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—75 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճը կկազմի 38 տոկոս, շինարարության մեջ՝ 37, գյուղատնտեսության հանրային սեկտորում՝ 40 տոկոս։ Ակնհայտ է, որ այդ խնդրի կենսագործման համար հարկ կլինի զգալիորեն բարելավել արտադրության և կառավարման կազմակերպումը։*

*Արդյունաբերական արտադրության արդյունավետության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի դրա կառուցվածքի հետագա կատարելագործումը. արտադրության ծախքերն զգալիորեն իջեցնելու հնարավորություն ընձեռող ճյուղերի արագ զարգացումը կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը ոչ միայն արդյունաբերության տվյալ, այլև հարակից, կոոպերացիայով կապված արտադրական ճյուղերում։*



*Որպեսզի արտադրության բոլոր ճյուղերը գործեն առավել փոխհատուցմամբ, անհրաժեշտ է պլանավորել դրանց աշխատանքի կոորդինացիան։ Պրակտիկայում մարդկանց սուբյեկտիվ գործունեությունը կարող է չհամընկնել հանրային արտադրության օբյեկտիվ տենդենցների հետ։ Անհրաժեշտ է, որ բոլոր ղեկավարները խոր և կոնկրետ հասկանան տնտեսավարման սոցիալիստական սիստեմի օբյեկտիվ առավելությունները։ Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Քննության առնելով պետական պլանները, ամեն անգամ հարկ է լինում պակասեցնել մինիստրությունների և միութենական հանրապետությունների պահանջարկը։ Բայց այդ պլաններն էլ լիովին չեն կատարվում։ Եվ, այնուամենայնիվ, շատ ընկերներ շարունակում են ներկայացնել բացահայտորեն ուռճացված հայտեր։ Ժամանակն է վերջ տալու այդպիսի պրակտիկային։ Պետք է կառուցել, ինչպես և ապրել ըստ ունեցած միջոցների» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 83)։*

*Կուսակցության XXIV համագումարը քննադատեց տնտեսական օրգաններին, որոնք հերթափոխերի թիվն ավելացնելու և եղած արտադրակարողություններն ավելի ռացիոնալ օգտագործելու փոխարեն, ձգտում են կառուցել նոր ձեռնարկություններ։*

*Ներկայումս բանիմաց ղեկավարման անհրաժեշտ պայմանը ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման ողջ սիստեմը գիտականորեն կազմակերպելն է, որը հնարավորություն կընձեռի առավելագույն չափով օգտագործել ռեսուրսները և հաջողությամբ կատարել պլանները։*

*Կոմունիստական շինարարության արդի փուլում կառավարման սիստեմը կատարելագործելու համար, ինչպես սահմանել է ՍՄԿԿ XXIV համագումարը, անհրաժեշտ է բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում հետևողականորեն կենսագործել անհատական պատասխանատվության լենինյան սկզբունքը, ամրապնդել կարգապահությունը, խթանել տնտեսական խրախուսման նորանոր ձևեր, կառավարմանն ավելի լայնորեն մասնակից դարձնել աշխատավորներին, առավել չափով մեքենայացնել ու ավտոմատացնել կառավարման գործը։*

*Ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման ողջ սիստեմի մակարդակի բարձրացման գործում հատկապես կարևոր է պլանավորման հետագա կատարելագործումը։ Սոցիալիստական հասարակության մեջ էկոնոմիկայի պլանային ղեկավարումը միշտ եղել է և կլինի հանրային արտադրության զարգացման վճռական պայմանը։ «Ժողովրդական տնտեսության ղեկավարումը կատարելագործելու իր աշխատանքում,— ընդգծված է ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ,— կուսակցությունը հաստատորեն վարում է արտադրության վրա ներգործելու տնտեսական լծակների օգտագործման հետ կենտրոնական մարմինների դիրեկտիվ առաջադրանքների ճիշտ զուգորդման կուրս» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 91)։*

*ՍՄԿԿ XXIV համագումարն առաջնակարգ խնդիր համարեց բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը։ Դա նշանակում է՝ ժողովրդատնտեսական վիթխարի խնդիրները լուծելիս առավել լայնորեն կիրառել կոմպլեքսային պլանավորումը։ Պլանավորման խիստ ճյուղային շրջանակներն անբավարար*

են այս կամ այն միջճյուղային բնույթի խոշոր խնդիրների արդյունավետ լուծման համար: Ուստի, տարբեր ճյուղերի և տնտեսական շրջանների համաձայնեցված գործողությունների ապահովման համար անհրաժեշտ է կոմպլեքսային միջճյուղային պլանավորում:

Պլանավորման գիտական մակարդակի բարձրացման համար անհրաժեշտ է անընդհատ կատարելագործել պլանավորման մեջ կիրառվող տեխնիկատնտեսական նորմատիվները, մշակել հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, նյութերի, աշխատանքային ծախսերի և այլնի գիտականորեն հիմնավորված նորմաներ: Դրանց ժամանակին վերանայումը կարևոր նշանակություն ունի ժողովրդատնտեսական պլանների օպտիմալացման համար:

Կազմակերպման ու կառավարման սիստեմի կատարելագործման նպատակով պետք է մշտապես ռացիոնալացնել ժողովրդատնտեսական կառավարման կազմակերպական կառուցվածքը: Ինչպես վկայում է փորձը և դրա տեսական իմաստավորումը, այդ պետք է արվի արտադրության համակենտրոնացման ուժեղացման, ժողովրդատնտեսական սիստեմի սկզբնական օղակների խոշորացման միջոցով: Արտադրական ձեռնարկությունների կառավարման կազմակերպման առավել ռացիոնալ ձևերի սիստեմատիկ ներդրմամբ միայն կարելի է ապահովել կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը ողջ ժողովրդատնտեսության մասշտաբով: Ձեռնարկությունների բանիմաց խոշորացումը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում կառավարման մակարդակը բարձրացնելու համար: Արտադրական միավորումների ստեղծման մարզում զգալի գործ է արվում մեր հանրապետությունում: Առ այսօր, Հայաստանում գործում են արտադրական 20 միավորումներ՝ «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրամաշ», «Հայքիմմաշ», «Հայկենցաղքիմ», «Հայապակի», «Հայէլեկտրապրիբոր», «Հայծխախոտարդ», «Հայշինմաշռեմոնտ», «Հայգորգ», կարի ձեռնարկությունների՝ «Գարուն», տրիկոտաժային արդյունաբերության՝ «Անուշ» և այլն:

Մի շարք խոշոր միավորումների աշխատանքի փորձը համոզիչ վկայում է դրանց անառարկելի առավելությունը՝ առանձին արդյունաբերական ձեռնարկությունների նկատմամբ: Արտադրության համակենտրոնացումը՝ միավորումների ստեղծմամբ, փոփոխություններ է հարուցում արդյունաբերական ձեռնարկությունների և գերատեսչությունների կառուցվածքում, հետևաբար և՝ կառավարումը նոր ձևով կազմակերպելու անհրաժեշտություն: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման ասպարեզում մի քանի միջոցառումների մասին» 1973 թ. մարտի 2-ի որոշմամբ, հանձնարարել է ՍՍՀՄ մինիստրություններին և գերատեսչություններին՝ մշակել և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հաստատմանը ներկայացնել արդյունաբերության համապատասխան ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաները, իսկ միութենական հանրապետությունների մինիստրների սովետներին՝ մշակել և հաստատել հանրապետական մինիստրություններին ու գերատեսչություններին ենթակա արդյունաբերության ճյուղերի կառավարման սխեմաները, անցնել արդյունաբերության և կառավարման երկօղակ և եռօղակ սիստեմի, կրճատելով ավելորդ միջակա օղակները: Որպես բացառություն, արդյունաբերության որոշ ճյուղերում կարելի է նախատեսել կառավարման քառօղակ սիստեմ: Արդյունաբերության կառավարման հիմնական օղակ կդառնան ձեռնարկությունները և արտադրա-



կան միավորումները: Կառավարման կազմակերպական կառուցվածքի բարելավման, կառավարման ապարատի աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում մեծ է կուսակցական կազմակերպությունների դերը: Բարձրացնելով կոմունիստների և ապարատի բոլոր աշխատողների պատասխանատվությունը, զարգացնելով մասսաների ստեղծագործական ակտիվությունը, կուսկազմակերպությունները կոչված են ապահովելու էկոնոմիկայի ղեկավարման կատարելագործման կուսակցության գծի կայուն, հետևողական կենսագործումը:

Ինչպես նշվել է ՍՄԿԿ XXIV համագումարում, մեր երկրի ժողովրդա-տնտեսական կառավարման ողջ սիստեմի արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է հետևողականորեն կիրառել ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում անհատական պատասխանատվության և կարգապահության ամրապնդման լենինյան սկզբունքը: Ընդ որում, հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր աշխատողի (ինչ պոստ էլ զբաղեցնի), պատասխանատվության սահմանումը կարևորագույն պահանջ է: Ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում պատասխանատվության բարձրացումը, պետական կարգապահության ամրապնդումը անխզելիորեն կապված են կադրերի դաստիարակության, նրանց գաղափարա-քաղաքական մակարդակի բարձրացման հետ:

Սոցիալիստական հանրային արտադրության կազմակերպումը բարելավելու և կառավարման մակարդակը բարձրացնելու կարևորագույն պայմանը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումն է, արտադրության կառավարման մեջ աշխատավորների ավելի լայն զանգվածների մասնակցությունը: Բազմազան են կառավարման մեջ աշխատավոր լայն մասսաների մասնակցության ձևերը— ժողովրդատնտեսական պլանների համաժողովրդական քննարկումից մինչև բանվորական ժողովները, արտադրական խորհրդակցությունները:

Տնտեսության կառավարման գործում վիթխարի դեր ունեն սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք անմիջականորեն գլխավորում ու կազմակերպում են սոցիալիստական մրցությունը, ապահովում արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի պայմանների բարելավման, արտադրության ռացիոնալացման և այլ խնդիրների լուծման գործում աշխատավորների բազմամիլիոն բանակի ակտիվ մասնակցությունը:

Ժողովրդական տնտեսության կառավարման ողջ սիստեմի հետագա կատարելագործման նպատակով անհրաժեշտ է բազմապատկել կառավարման ոլորտի տեխնիկական հագեցվածությունը, կառավարման սիստեմում լայնորեն ներդնել մեքենայացման ու ավտոմատացման նորագույն միջոցները: Այս ասպարեզում գործը բարելավելու լայն հնարավորություններ են ընձեռում տնտեսամաթեմատիկական մեթոդների, սիստեմային վերլուծության կիրառումը, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի, կապի նորագույն միջոցների օգտագործումը: Կառավարումը կատարելագործելու կարևոր միջոց են կառավարման ավտոմատացված սիստեմների (ԿԱՍ) ստեղծումը և ներդրումը: Արդյունաբերության ամբողջական ճյուղերի շրջանակներում առավել լայնորեն են օգտագործվում կառավարման համար ինֆորմացիայի հավաքման ու մշակման ավտոմատացված սիստեմները:

Հայկական ՍՍՀ-ում պլանավորվում է կենսագործել մոտ 25 խոշոր մի-

ջոցառումներ՝ հաշվիչ տեխնիկայի միջոցների, մասնավորապես, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների (ԷՀՄ) կիրառմամբ: Նախատեսվում է «Հայէլեկտրալույս» և «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորումների, ինչպես և հանրապետության թեթև արդյունաբերության «Մասիս» միավորման մեջ ներդնել կառավարման ավտոմատացված սիստեմներ (ԿԱՍ): ԿԱՍ-ի առաջին հերթը կներդրվի այնպիսի գերատեսչություններում, ինչպիսիք են ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության, թեթև արդյունաբերության, կապի, ավտոմոբիլային տրանսպորտի, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունները, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը: ՀՍՍՀ առևտրի և առողջապահության մինիստրություններում, պետշինում և այլուր, ԿԱՍ-ի տեխնիկական բազայի ստեղծման նպատակով կկազմակերպվեն ինֆորմացիոն հաշվիչ կենտրոններ: Ավտոմատիկայի գիտահետազոտական ինստիտուտը կմշակի ու կներդնի տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմներ՝ գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում: Հանրապետության գիտական հիմնարկությունները ընթացիկ հնգամյակի առաջիկա երկու տարում կկատարելագործեն ժողովրդական տնտեսության կառավարման մեթոդներն ու միջոցները: Այսպես, էկոնոմիկայի պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը հանրապետության պետպլանի հաշվիչ կենտրոնի հետ միասին կմշակի պլանային հաշվարկների ավտոմատացված սիստեմ (ՊՀԱՍ), որը ՍՍՀՄ մինիստրությունների և գերատեսչությունների կառավարման ավտոմատացված ճյուղային սիստեմների հետ մեկտեղ կդառնա համապետական սիստեմի գործադիր օղակ: Ժողովրդական տնտեսության ԿԱՍ-ի կենտրոնական գիտահետազոտական լաբորատորիան հանրապետության Մինիստրների սովետի և թեթև արդյունաբերության մինիստրության համապատասխան կառավարչության համար կմշակի նյութատեխնիկական մատակարարման կառավարման միասնական սիստեմ:

Կառավարման բնագավառում մեքենայացման և ավտոմատացման միջոցների հաջող կիրառման ուղիները հետազոտվում են սիստեմային վերլուծության միջոցով: Դա հնարավորություն է ընձեռում կառավարող սիստեմները դիտելու որպես ընդհանուր նպատակով միավորված փոխկապված տարրերի ամբողջական կոմպլեքս, բացահայտելու սիստեմի էությունը, նրա ներքին և արտաքին կապերը: Սիստեմային վերլուծության նպատակն է՝ ղեկավարներին զինել կառավարման բարդ պրոբլեմների լուծման հիմնավորված մեթոդոլոգիայով՝ անհրաժեշտ ողջ ինֆորմացիայի ընդունման, մշակման և ճիշտ լուծումների ընտրության համար: Այդ մեթոդոլոգիան օգնում է ղեկավարին ընտրելու գործողությունների լավագույն ուղին՝ ծախսերի քանակական համեմատության, նպատակների և դրանց հասնելու բոլոր միջոցների արդյունավետության համակողմանի վերլուծության հիման վրա:

Կազմակերպման ու կառավարման կատարելագործման հարցերի նկատմամբ հենց այդպիսի սիստեմային մոտեցումն է բնորոշ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին, որոնք սահմանում են ոչ թե առանձին խնդիրներ, այլ ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործումն ապահովող ուղղությունների կոմպլեքս: Միայն ողջ կոմպլեքսի իրականացմամբ է հնարավոր ապահովել ժողովրդական տնտեսության կառավարման ու կազմակերպման ողջ սիստեմի հետագա կատարելագործումը:

# ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

## ՍՏԵՓԱՆՈՍ ՆԱԶԱՐՅԱՆԸ ԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ

ՌՈՒԶԱՆ ՆԱՆՈՒՄՅԱՆ

Հայ ականավոր գործիչ, «Հյուսիսափայլի» հիմնադիր, հրապարակախոս, մանկավարժ Ստեփանոս Նազարյանի մոտ կեսդարյա գործունեությունը նշանակալից տեղ է գրավում հայ հասարակական մտքի և մշակույթի պատմության մեջ: Եռանդուն պայքարելով կղերա-աղայական դասի գերիշխանության դեմ, նա մեծապես նպաստեց ազգային զարգացումը եվրոպական լուսավորության հունով վարելու գործին: Նազարյանին էր վիճակված նվաճելու գրական նոր լեզվի քաղաքացիական իրավունքը, աշխարհաբար լեզվով գիրք հրատարակելու և գրականության ժողովրդայնության համար պայքար ծավալելու նախապատվությունը:

Դորպատյան համալսարանում ձեռք բերելով համակողմանի տեսական գիտելիքներ, XIX դարի առաջին կեսի ռուսական հասարակական-քաղաքական կյանքի մեծ վերափոխումների մեջ Նազարյանը գտավ հայ ժողովրդի ազգային կազմավորման և վերածնության ուղիները: Դա մի աննախընթաց ժամանակ էր, երբ Ռուսաստանի առաջավոր ուժերը, յուրացնելով եվրոպական քաղաքակրթությամբ նվաճված լուսավորական գաղափարախոսությունը, գյուղացիական ընդվզումներից ոգեշնչված, հանգեցին ճորտատիրական կարգերի վերացման գաղափարին:

Քաղաքական-հասարակական այդ նոր իրադրությունների մեջ Նազարյանը հայտնագործեց հեղափոխական դեմոկրատների խոր ազդեցությամբ հասունացող համառուսական լուսավորական շարժման այն ընդհանուր գծերը, որոնք հնարավորություն էին տալիս հայերին ևս կազմավորվելու իբրև ազգ, բնականոն զարգացմամբ հասնելու ռուս-եվրոպական ազգերի զարգացման ժամանակակից նվաճումներին:

1837 թ. Նազարյանը Դորպատից գրում է Խ. Աբովյանին. «Դու այժմ ապրում ես մի ողորմելի չինական աշխարհում, ուր մարդիկ իրենց ամեն բանը մոլեռանդաբար մեծ բան են համարում և արհամարհում են օտարը: Ինչպիսի թշվառություն է ապրել այնպիսի մարդկանց մեջ, որոնք մտածելու ազատություն չունին» (Ստ. Նազարյան, Նամականի, Երևան, 1969, էջ 52): Ակնարկելով կղերական բարձրադիր իշխանությունը, նա գտնում է, որ «որոնք է իշխում ոսկե գահի վրա և հոգուտ ժողովրդի արած բուժիչ առաջարկներին ոչ ոք ական չի դնում» (նույն տեղը, էջ 44):

Այդ շրջանում է ահա, որ երիտասարդ դորպատականի մոտ ձևավորվում է բարենորոգիչ-լուսավորչին հատուկ այն սկզբունքը, թե «յուրաքանչյուր ռեֆորմատոր մարդկային պատմության մեջ ստիպված է եղել կռվել շատ բա-

ների դեմ, չնայած, որ շատերը ստիպված են եղել հպատակվել կարճատեսների կատաղությանը»: Լցված գալիք օրերի նկատմամբ մեծ հավատով, Նազարյանը համոզված էր, որ կգա լավ ժամանակ, «երբ աչքն ավելի պարզ կտեսնի ճշմարտությունը, և սիրտն ավելի ուժգին կզգա բարին և գեղեցիկը» (նույն տեղը):

1830—40-ական թթ. հակաֆեոդալական գաղափարներով հագեցած գրական նոր շարժումը Ռուսաստանում ընթանում էր քաղաքակրթության, լուսավորության, ազատության և մարդկայնության նշանաբանով: Սիրել հայրենիքը անհրաժեշտ է,— ասում էին առաջադիմականները հին աշխարհի դոգմաներին և խավարամոլ քաղաքականության պաշտոնական հետևորդներին,— բայց կարելի է՞ սիրել տգիտությունը, կարելի՞ է սիրել այն բարքերն ու սովորությունները, որոնք հեռացած են մեզանից դարերով: Ինչի՞ համար են այդ բոլոր գովեստները հնի...:

Համառուսական ռեակցիայի պայմաններում Պուշկինի, Լերմոնտովի և ապա գոգոլյան գրականությունը հաստատում է քննադատության «մերկացնող» ուղղությունը: 1840-ական թթ. ազատաբաղձ շարժմանը զուգընթաց, հանդես է գալիս հեղափոխական-դեմոկրատական հոսանքը: Բելինսկին ու Գերցենն առաջադրում են քաղաքական-սոցիալական հարցերի արմատական լուծումներ: Նրանք ուժեղ ներգործություն ունեցան պետրաշևականների վրա, որոնք կոչ էին անում ազատել Ռուսաստանը տիրող ամոթալի կյանքի կապանքներից և պայքարել նոր Ռուսաստանի ազատ ու երջանիկ կյանքի համար:

Երբ Նազարյանն սկսեց լուսավորական գաղափարներով տոգորված հայրենասիրական իր գործունեությունը, ռուսական մամուլում, հասարակական և ուսանողական լսարաններում, ամենուր ծավալվում էին սուր վեճեր սլավոնաֆիլների դեմ: Այդ պայքարում Նազարյանը, անշուշտ, ընկալում էր սեփական ազգի մեջ լուսավորության հարցի վերաբերյալ հին ու նոր հայացքների բախման գլխավոր ելակետերը: Պետերբուրգում ապրած տարիներին նա գրում է Ներսես Աշտարակեցուն. «Ցավ է ինձ, զի հայք ոչ ի բաց առեալ և զորս էին ի Պետերբուրգ, ու միջոցք լուսավորութեան բազմաթիվ էին, ըստ մեծի մասի անընդունակ զանձինս ցուցանեն, առ այն գեղեցիկ խորհուրդ նպատակս և դիտավորութիւնս իմ յօգուտ մերոյ աշխարհի» (նույն տեղը, էջ 59): Երիտասարդ հայրենասերի ըմբռնմամբ լուսավորության նպատակը պետք է լիներ «խորամուխ լինիլ ի գաղտնիս մարդկային ոգւոյ, որ ըստ թուոյ որակութեան ազգաց և ազանց հիասքանչ պէսպիսութեամբ ի լոյս ելանեն ի գրուածս նոցին»:

1842 թ. Նազարյանը մեկնում է Կազան, իբրև տեղի համալսարանի հայոց լեզվի և գրականության ամբիոնի վարիչ: Սեպտեմբերի 12-ին ֆակուլտետային խորհրդին ներկայացրած ուսումնական ծրագրի առաջաբանում նա նշում է. Ռուսաստանի փառքը և շահը պահանջում են, որ ռուսները ծանոթանան մի ժողովրդի հետ, որն իր մտավոր զարգացումով մի ժամանակ ըստեղծեց հոգևոր հարուստ կյանք, սակայն ամբողջ հինգ դար, կովախնձոր դառնալով տարբեր տիրապետողների ձեռքին, դժբախտ ճակատագրով կորցրեց իր հոգևոր նշանակությունը և կրթության հնարավորությունը:

Նույն տարվա վերջին Նազարյանը հանդես եկավ մի դասախոսությամբ՝ Հայ գրականությունը հնագույն շրջանում թեմայով: Հաջորդ տարին այդ աշխատությունը տպագրվում է Թռուցիկ հայացք հայոց հին գրականության սկզբնավորումից մինչև XIII դարը վերնագրով: 1846-ին լույս է տեսնում այդ գրքի երկրորդ մասը Նոր տեսական հայացք հայ գրականության XIV դարից մինչև մեր օրերը վերնագրով: Հեղինակի նպատակն է ռուս հասարակությանը ներկայացնել հայ գրականության պատմական զարգացման միտումները, ցույց տալ նրա զարթոնքի հետ հառնող այն պահանջները, որոնք կապվում են ինչպես ռուս, այնպես էլ եվրոպական ժողովուրդների գրականությունների վերածնության միտումների հետ:

Օգտագործելով հայ գրականության փաստական նյութի պարբերացման



առաջին փորձերը՝ Նազարյանը մշակում է նոր հայացք այդ առարկայի ուսումնասիրության և նրա արդիական նշանակության վերաբերյալ: Ն. Մառը հայ գրականությանը նվիրված իր դասախոսություններում նշում է, որ հայկական հայրենասիրական ոգեշնչված զգացմունքն այդ ժամանակ կազմում էր Կազանի համալսարանի պրոֆեսորի գիտական տրամադրության հիմքը: Նա ձգտում էր արտացոլել,— ասում է Մառը,— ժամանակի ռուսահայ մտավոր շարժման հետ բարձրացող պահանջները:

Նազարյանն առաջինն է ուշադրություն դարձնում հայկական առասպելների և ժողովրդական բանահյուսության՝ մեզ հասած այլ նյութերի վրա: Անդրադառնալով V դարի հայ պատմագրության մեծարժեք գործերին՝ Նազարյանն այն դիտում է իբրև «լրացուցիչ մասունք համաշխարհային գործերի», որոնք, նրա կարծիքով, ճանապարհ էին բացում հայոց «գալոց օրերի համար»: Քանի որ միջնադարյան հայ տաղերգուների գոհարները, Վ. Բրյուսովի արտահայտությամբ, դեռևս հայտնաբերված չէին, Նազարյանը նկատում է միայն գրականության աշխարհականացման առանձին փորձերը: Սակայն, ինչպես նշում է նա, ահավոր պատերազմները, ավերումները, հայ պետականության վերջնական կործանումը, տնտեսական ու հոգևոր ուժերի մասնատումը զրկեցին հայերին բնականոն զարգացման և Եվրոպայի հետ հաղորդակցվելու հնարավորությունից: Իհարկե, այդ բոլորը չեն խանգարում ըմբռնելու մեր գրականության անցած օրերի դերն ու նշանակությունը նոր սերնդի ներքին ուժերի ճանաչման համար, հայտարարում է Նազարյանը:

Ռուսերեն երկրորդ աշխատության մեջ Նազարյանն ամփոփում է նախորդ դարերի հայ ազգային մշակույթին տված իր գնահատումները և, միաժամանակ, հարցնում. կարո՞ղ է նորաստեղծ հայ հասարակությունը սնվել միայն հնախոս գաղափարաբանությամբ: Ո՛չ, հայտարարում է նա: Փոխվել են ժամանակները, փոխվել է հայ մարդու մտածողությունը, ուստի, նա չի կարող իր այժմյան պահանջներն ու բաղձանքներն արտահայտել այն ձևերով և այն բովանդակությամբ, ինչ անցյալում էր:

Այդ միտքը հաստատելու համար նա անդրադառնում է XVIII դարից գործող Մխիթարյան միաբանության ստեղծած արժեքներին: Վերականգնելով հայկական հին լեզուն՝ Մխիթարյանները մեծ գործ կատարեցին լեզվի մշակման և հնագույն ձեռագիր գանձերի գիտական հրատարակության ասպարեզում: Բայց նրանք չկարողացան, կամ չկամեցան գերեզմանական խավարից դուրս հանելով հայկական մատենագրության հիշատակները, մոտեցնել նրանց ազգային կյանքին, իբրև «շարժառիթ ազգային լուսավորության, գալոց հայերի համար» (տե՛ս թարգմանությունը. Լեռ: Ստեփանոս Նազարյան, Թիֆլիս, 1902, I մ., էջ 139):

Ուրեմն Նազարյանը մերժում է «Հայկական գաղափարաբանության նշանակությունը ժողովրդի ազգային կազմավորման նոր շրջանում և հայտարարում, որ «հին ձևը, որ այլևս չի համապատասխանում նոր ծագած կեցության, որ խորթ լինելով ժողովրդական կյանքին և հասարակաց գործունեության, կորցրել է իր նշանակությունը, չի կարող կրթական գործիք դառնալ ներկայի զավակների համար» (նույն տեղը, էջ 146): Ռուս գրականության մեջ և մեզ մոտ Նազարյանը նկատում է գրական պրոցեսների պատմական զարգացման նույն օրինաչափությունները: Այժմ պահանջվում է «զարգացում մի նոր ազգային գրականության, որ համապատասխաներ մեր դարի պահանջներին», գրում է նա, «մեր ժողովրդական դպրության մեջ կյանք, միտք, բան, խորհուրդ, շարժողություն և առաջխաղացություն մտցնելու համար»: Կամ դեպի առաջ դարի հետ, կամ քաքացում և բարոյական մահ: Ուստի և բնական է, որ նա ամբողջ ձայնով կոչ է անում ականջ դնել «խորհրդավոր կերպով աղաղակող ժամանակի ձայնին»:

Տեսական ակնարկ հայ նոր գրականության... վերնագրով աշխատության մեջ, Նազարյանն անդրադառնում է 1841 թ. Մոսկվայում հրատարակված Ստրախանյան նոթեր վերնագրով ռուսերեն մի գրքույկի, ուր հեղինակը (Ռիբուշկին) հայերին համարում է «անգրասեր» և օժտված բացասական գծերով: Հայերը պատմության ճակատագրով դուրս են մնացել բնականոն զար-

գացումից, գրում է Նազարյանը, բայց նրանք ունեցել են և ունեն իրենց «ընտրյալները», որոնք արտահայտում են «ազգի հոգևոր» պատկերը: Ժողովուրդներին գնահատելիս պետք է հաշվի առնել «ծաղիկները» և ոչ թե «աղավաղյալ և կործանման դատապարտված ազդեցությունները, որոնք կտրված գեղեցիկ ամբողջից (ժողովրդից— Ռ. Ն.), մանրատվել և կորցրել են իրենց բնական կերպարանքը» (Обозрение гайканской писменности... стр. 112):

Անհրաժեշտ է ճանապարհ հարթել քաղաքակրթության ազատ զարգացման համար եվրոպական լուսավորության հիմունքներով, հայտարարում է հայ լուսավորիչը: «Մի ժողովրդի մեջ, որ հազիվ նոր է սկսել ազատ շունչ քաշել, մի ժողովրդի մեջ, որի պատմական բոլոր հիշողությունները, հոգևոր բարոյական ամբողջ գիտակցությունը բացի կրոնից և լոկ ֆիզիկական գոյությունից, խեղդված էին և պիտի խեղդվեին ասիական բռնապետության ճնշող լուծի տակ, այդպիսի մի ժողովրդի մեջ մենք իրավունք չունենք ենթադրելու մի րոպեական ծաղկման հնարավորություն»: Հայերին անհրաժեշտ է զարգացում, ավարտում է իր խոսքը Նազարյանը, իսկ ամեն մի նոր զարգացում ժամանակ է պահանջում և «այսպես ասած բարեբաստիկ հանգամանքների շունչ» (նույն տեղը, էջ 119—120):

Կարևոր նշանակություն տալով ինչպես եվրոպական, այնպես էլ ռուսական մտավոր շարժումների նվաճումներին, Նազարյանը կոչ է անում համախմբել առաջադիմական ուժերը ազգային գրականության ժողովրդական հիմքերն ամրապնդելու և, առաջին հերթին, ժողովրդական լեզուն գրական լեզու դարձնելու համար: «Ինչպե՞ս ժողովրդական գրականություն ծնվի մի տեղ, ուր դեռ ընդհանուր լեզու գոյություն չունի, ուր չկան հանրամատչելի խոսքեր գաղափար և զգացմունքներ արտահայտելու համար» գրում է նա նույն աշխատության մեջ: Լեզուն և գրականությունն իսկույն ծնունդ կառնեն, երբ հայ գրագետները կսկսեն գրել «կենդանի ներկայի համար» (նույն տեղը, էջ 155):

Նազարյանը ճիշտ էր. հրապարակի վրա չկար, իր խոսքերով ասած՝ «ժողովրդին ցավակից» և ժողովրդի «սրտից խոսող» Վերք Հայաստանի՝ իր «խորհրդավոր բովանդակությամբ»: Պաշտոնական լեզուն գրաբարն է, և քանի որ, գրում էր Նազարյանը նույն տեղում, «ամեն մի զգացմունք, ամեն մի մտապատկեր, ամեն մի գաղափար ազգային կեղևի մեջ գցվում էր պատանի հայի հոգու մեջ, կարող է և պարտավոր էր այնտեղ խոր արմատներ տարածել»: Աբովյանի հետ համարյա միաժամանակ Նազարյանը նույնպես առաջարկում է հայ նոր գրական լեզվի հիմքում դնել արարատյան բարբառը:

Նազարյանի տեսական հայացքների գործնական դրսևորումներին մենք ծանոթանում ենք 1840-ական թթ. հայ մտավոր շարժման տարբեր գործիչներին ուղղված նամակներից: «Ապրելով ժամանակի մեջ,— գրում է նա, 1843 թ. Լազարյաններին,— մենք պարտավոր ենք սովորել գոյություն ունենալ նրա հետ և նրա համար: Ժամանակը մշտապես փոխվում է. նրա ընդերքից բարձրանում են և՛ լավը, և՛ վատը, որոնց պատահականություններին ենթակա են ժողովուրդները, որոնց նրանք մասնակցում են կամա թե ակամա»: Հակադիր ուժերի այդ պայքարի մեջ Նազարյանը տեսնում է բարու սկզբունքի հաղթանակի ձգտումը: Մեր խնդիրն է, հայտարարում է նա, «Ծառայել ժամանակին ոչ կուրորեն, այլ իշխելով նրան» (Ստեփանոս Նազարյան, Նամականի, էջ 74):

Ինչպես ռուսերեն աշխատություններում, այնպես էլ նամակներում արտահայտած մտքերը և հայերին տված պատգամները, կրելով եվրոպական լուսավորական դարաշրջանի գլխավոր սկզբունքները, խորապես հագեցած են ռուսական հոգևոր կյանքում անընդհատ բարձրացող նոր գաղափարներից բխող շարժման պատմական միտումներով: Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել՝ ցույց տալու ռուս հրապարակագրության և գրական շարժման կոնկրետ ազդեցությունները Նազարյանի այդ շրջանում արտահայտած մտքերի զարգացման վրա:

Նազարյանը 1840-ական թթ. պատկանում էր եվրոպական առաջավոր գաղափարներ կրող այն ռուս «արևմտականների» շարքին, որոնք, ինչպես



Չերնիշևսկին է նշում, հանդես էին գալիս ոչ թե իբրև ընդօրինակողներ, այլ իբրև «ինքնուրույն շարժման առաջամարտիկներ»:

Կազանյան տարիներին Նազարյանն ուսումնասիրում է պարսկերեն, արաբերեն լեզուները ու գրականությունը: 1849 թ. նա պաշտպանում է դոկտորական դիսերտացիա պարսից պոեզիայի, Ֆիրդուսու Շահ-Նամեի մասին: Նույն թվականին հրատարակվում է այդ դիսերտացիայի առաջին մասը, իսկ 1851-ին՝ երկրորդը: Վերջին գրքում Նազարյանը ողջունում է ռուս բանաստեղծ Ժուկովսկուն Շահնամեից հանված մի հատվածի՝ «Ռոստամ և Զոհրաբ»-ի թարգմանությունը գերմաներենից: Ռուս գրականության առաջին ծանոթությունն էր այս իրանական պոեզիային:

«Անցել են այն ժամանակները,— ասում է նա,— երբ համաշխարհային պատմությունը մի կողմից նյութի ուսումնասիրության սահմանափակվածության և մյուս կողմից ինքնահավանությամբ իր տարեգրություններից դուրս էր նետում շատ ժողովուրդների: Մեր օրերին ահա համաշխարհային պատմությունը սկսում է հասկանալ իր կոչումը և բացում է «Արևելյան քաղաքացիության» բազմազան գույները»:

Մոտիկից ծանոթ լինելով փիրդուսագիտության իրանական և եվրոպական աղբյուրներին, Նազարյանը սեփական դիտարկումներով և եզրակացություններով բազում տեղեկություններ է հաղորդում Արևելքի մեծ բանաստեղծի կյանքի, նրա ստեղծագործության մասին, Ֆիրդուսու հետ ներկայացնում նրանից առաջ և նրանից հետո ապրած ու ստեղծագործած պարսից պոեզիայի մեծություններին: Գրքում հանդիպում ենք փոխադրություններ Գյոթեի Արևելյան Դիվանից, ինչպես և Նազարյանի կարծիքներին՝ մեծ բանաստեղծի մասին:

Սույն աշխատությունը կարևոր նշանակություն ունի և հայ արևելագիտության, ինչպես և հայ գրականության նոր բովանդակության հետ կապված հարցերի ուսումնասիրության համար: Նազարյանը գրում է նոր պոեզիայի ժողովրդայնության, նրա գեղագիտական կողմերի մասին, որոնք օգնում են նրան՝ արտահայտելու իր մտքերը արդի գրականության զարգացման պատմական նոր միտումների շուրջը:

1858 թ. Նազարյանը հրապարակում է պարսից բանաստեղծ Սաադիի Գուլիստան մանրապատումների ժողովածուն: «Գտնվելով Արևելքի շեմին,— գրում է Նազարյանն առաջաբանում,— Ռուսաստանը քիչ է ուսումնասիրում հարևան ժողովուրդների ավանդույթները, մշակույթը, նրանց մեծանշանակ պոեզիան»: Սաադին այն գրողներից է, գրում է Նազարյանը նույն տեղում, «որոնք իրենց գաղափարներով դուրս են գալիս ազգային նեղ շրջանակներից, նվիրվում հումանիզմի մեծ գաղափարին: Իբրև գրող և մտածող նա պատկանում է ոչ միայն իր ժողովրդին, այլև ամբողջ քաղաքակրթված մարդկությանը»: Նազարյանի առաջին աշխատությունը ժամանակին գնահատվել է:

* * *

Ճորտատիրական ռեֆորմի տարիներին, ինչպես ռուս լուսավորիչները, այնպես էլ Նազարյանը ներշնչվեցին այն տրամադրությամբ, թե թագավորական խոստումները կարող են փրկել Ռուսաստանը ճորտատիրական կապանքներից: Ն. Չերնիշևսկին կարճ ժամանակամիջոցում բացահայտեց այդ խաբկանքը և մերկացրեց «վերից» սպասվող «հեղափոխության» սնանկությունը: Բայց Նազարյանը բուրժուական լուսավորիչ էր, հետևապես չէր տեսնում և չէր կարող տեսնել ճորտատիրական կարգերից բխող հակասությունները: Չըմբռնելով «ներքևից» եկող հեղափոխության անհրաժեշտությունը՝ նա մինչև իր կյանքի վերջը մնաց թշնամի ֆեոդալիզմին: Ինչպես բոլոր լուսավորիչները, այնպես էլ Նազարյանը, երազում էին ժողովրդի ազատություն, ինքնավարություն, լուսավորության եվրոպական ձևերի յուրացում, և այդ ամենը բարենորոգումների միջոցով:

«Ռուսաստանը,— գրում է Նազարյանը,— գտնվում է արդեն մի խոր-

հըրդավոր վերածնելության ասպարեզի մեջ»: Նա բարձր է գնահատում
«Օգոստոսափառ կայսրի հոյակապ գաղափարը ազատել ռուս շինականը
դարավոր տմարդության ծառայության լծից և այսպես ճանապարհ բանալ
նորան դեպի բարոյական ազդեցությունք» («Հյուսիսափայլ», 1860, էջ 451):
Հայերի կոչումը մարդկության մեջ հոդվածում նա գոհունակությամբ նշում
է, որ հայերն այժմ կանգնած են իրենց «բախտի դարձակետի վերա, մի այն-
պիսի դրության մեջ, որ պիտո է փոխվի դեպի լավը»: Նա նկատում է մի
«հոգեղեն շարժողություն» և որ «նոցա մեջ զարթնել է մի անուրանալի ձգտո-
ղություն սեփականելու յուրյանց Եվրոպայի իմացական կրթությունը»: Այդ
«հոգեղեն շարժումը», ըստ Նազարյանի, կարող է ունենալ իր բեղմնավոր
հասունությունը, եթե Ռուսաստանը «յուր համաշխարհական մարդկության
մեջ կատարելի կոչումը ուղիղ հասկացել է, ապա վեհանձնությամբ շնորհե-
լու է հայերին այն բանը, որ հայոց բարեմիտ մասը միշտ ցանկացել է կարո-
տով ու փափագով, այսինքն իմացական կրթություն», մի կրթություն, որը
ինչպես բոլոր քաղաքակրթված ազգերի մոտ, այնպես էլ այստեղ «արմատից
դեպի վեր, և ազգային հիմքից գոյանար ու առաջ գնար» (Ստեփանոս Նա-
զարյան, Երկեր, էջ 94):
Լուսավորական աշխարհայացքի հիմքում ընկած նազարյանական լիբե-
րալիզմն այստեղ կապվում էր «բանական թագավորության» մասին եղած
հին լուսավորիչների պատրանքների հետ: Թագավորությունն է, որ իբրև
մարմնացած հոգի և զորություն, գործ է կատարում ազգի թե՛ նյութական և
թե՛ իմացական բախտավորության համար,— գրում է նա,— թագավորու-
թյունն է, որ ամենայն բան ազգի մեջ կարգ ու սահմանի տակ է պահում,
ցանուցիր զորությունքը ազգի միավորելով և բոլորելով մի ամբողջության
մեջ՝ «ուղեցուցանում մի հասարակաց նպատակ» (Նույն տեղը, էջ 90):
Քաղաքական ընկերության արմատական նյութերը վերնագրով հոդվա-
ծում Նազարյանը ներկայացնում է տարբեր տիպի պետական սիստեմներ,
քննադատում իշխանավոր պետությունների բռնակալական ձգտումները, ինչ-
պես և ճորտատիրական կարգերը փետիշացնող «գերմանական պատմական
դպրոցի» սկզբունքները, որի ռուսական արտահայտիչները հանդիսացան
Չիչերինը և Կավելինը:
«Բանական թագավորության» հիմքում Նազարյանը դնում է առաջին
հերթին մարդկայնության ու մարդասիրության գաղափարը: Պետք է հասնել
նրան, որ գոյություն չունենան «առանձնական» ազգեր, որ չիհնեն «ընտրյալք»
և չբռնադատեն իրենց ենթակա փոքրաքանակ ազգերի իրավունքները: «Մի
բանագետ թագավորություն աշխատում է ամենայն ջանադրությամբ մարդկայ-
նություն տարածել, բայց մի փոքրահոգի հիվանդոտ իշխանություն հարու-
ցանում է ազգային թշնամությունք» («Հյուսիսափայլ», 1862, էջ 182): «Մարդ-
կայնությունն այն չէ, որ բռնիշխանություն գործադրելով վերացնեինք ազգա-
յին սահմանները, այլ խոստովանեինք ամենայն մարդկային կարգ և շինու-
թյուն, ուր և դա հանդիպում է ազգային կերպարանքով»: Բարձր պահել ազ-
գային զգացմունքները,—գրում է Նազարյանը,—դա նշանակում է բարձր պա-
հել ազգային արժանապատվությունը և չդնել իրեն և ազգը «ստրկության
լծի տակ»:
Նազարյանի մտահոգության առարկան այս դեպքում իր սեփական հայ-
րենիքն է, որը դարեր առաջ կորցրել է իր ինքնուրույնությունը, տառապանք-
ների միջով հասել մեր օրերին և ձգտում է վերականգնել իր ազգային ընդ-
հանրությունն ու միասնությունը՝ Ռուսաստանի պետական սիստեմի վերա-
փոխման ճանապարհով: «Այժմ մենք ունենք մեր հայրենիքը,— գրում է նա,—
մինև լինելով ծնած և ապրած քաղաքում, կամ Ռուսաստանի կամ Տաճկաս-
տանի մեջ. և մենք ունեցել ենք մեր մանկության օրորոցը, որ պահում ենք
մեր սրտերի մեջ, այդ օրերի սիրելի հիշատակքը» («Հյուսիսափայլ», 1860, էջ
72): Իսկ այդ հայրենիքը, շարունակում է նա, այժմ մասնատված սեփական
հողի վրա, չի պատկանում իրեն, իսկ ժողովրդի մի մասն էլ ահա ապրում է
օտար երկնքի տակ և կարոտով է հիշում իր երկիրը:



«Հյուսիսափայլի» էջերում Նազարյանն զգուշորեն հետևում է ցարիզմի քաղաքականությանը, ինչպես սեփական երկրի կյանքի բարեփոխմանը նվիրած նրա խոստումներին, այնպես էլ ազգային քաղաքականության հարցերին: Ֆրանսիական հեղափոխության պատճառքը հոդվածում «Հյուսիսափայլի» խմբագիրը գրում էր. Եթե Լյուդովիկոսները և նրանց հետևորդները հասկանային իրենց դերը ժողովրդի և ազգային ժողովի նկատմամբ, ապա ոչ մի տեսակ հեղաշրջում չէր լինի Ֆրանսիայում: Բռնությունները և անիշխանությունը ծնեցին ֆրանսիական հեղափոխություն: Ուրիշ կերպ չէր էլ կարող լինել, ասում է Նազարյանը. ժողովրդի համբերության բաժակը լցվել էր: Ուրեմն, պետք էր լինել զգաստ ու «խորագետ»՝ ժամանակին կանխելու ժողովրդի ցասումը: Նազարյանը եթե կողմ է Կավուրի քաղաքականությանը, դրվատելով նրա իտալական պրովինցիաների միավորման ծրագիրը, կողմ է նաև Գարիբալդու ժողովրդական ապստամբությանը, համարելով այն «արդարության» լուծման միջոց: Հանդես նոր Հայախոսության երկհատորյակում նա խոսում է և Թոմաս Մյունցերի ապստամբության մասին, գտնում այն տեղին, քանի որ ազնվականներն իր ժամանակին չհասկացան ժողովրդի պահանջները:

Այս բոլորից եզրակացնում է. Պետական իշխանավորները և տերերը պետք է հասկանան, որ անհրաժեշտ է պահպանել մարդու և ազգության իրավունքները: Իսկ այդ գիտակցությունը կարող է ունենալ միայն «բանական իշխանությամբ» ղեկավարվող անհատը: Ահա Պետրոս I-ը՝ «ռուսաց ազգի նոր քաղաքական մեծության և վերանորոգության հեղինակը»: Նա «գործ դնելով իր ուժերը, կարողացավ թուլացնել ասիական կոպտությունը», «օրենք և արդարություն հաստատելու, բարքերն ազնվացնելու, արվեստ և գիտություններ երկիր բերելու համար» («Հյուսիսափայլ», 1859, էջ 129):

1859 թ. Նազարյանը «Մոսկովսկիե Վեդոմոստի» թերթից արտատպում է Նամակ առ հրատարակող վերնագրով մի հոդված: Իրկուտսկյան երկրամասից թղթակիցը հաղորդում է, որ նոր նվաճված երկրում վերջերս մտցվել է կապալային սիստեմ: «Փոխանակ ազատությունը անհի, զորանա ու ծաղկի,— գրում է թղթակիցը,— նրա վզին է փաթաթվում ճորտությունը: Մի՞թե այստեղ ևս պիտո է տնկել և սերմանել կապալական կարգը (Օտկուպնայա սիստեմա): Մի կարգ, որ «դուրս է ծծում ամենապատվական հյութերը ժողովրդի միջից, որ չորացնում ու հալ ու մաշ է անում այն աշխարհը, ուր թույլ են տալիս նրան արմատանալ»: Զարմանալի է, իր խոսքն ավարտում է թղթակիցը, «Մենք սովոր ենք հասկանալ, թե ավելի քան մյուս եվրոպական տերությունները, Ռուսաստանը Ասիայի մեջ ունի լուսավորչի քրիստոնեական և եվրոպական աշխարհաշինության տարածողի պաշտոնը»: Հոդվածի վերջում Նազարյանը Թ. Լալազարյանի անվան տակ, իբրև ծանոթություն գրում է. «Այս մի հասարակական ցավ է, ամենևին արժանի հայերի ընթերցանությանը»: Բացատրություններ այլևս պետք չեն: Նազարյանը քննադատաբար է վերաբերվում ցարական խոսքի և գործի հակասությանը:

Ալեքսանդրյան մանիֆեստի հրապարակումը բացահայտում է ցարական քաղաքականության իրական դեմքը: Ժողովրդական հուզումները, կառավարության նոր ճնշումները, գրաքննական կամայականությունները Նազարյանին հանգեցնում են նոր հուսախաբությունների: Քաղաքական ընկերության արմատական նյութերը հոդվածն արգասիք էր այդ քաղաքականության նկատմամբ Նազարյանի բացասական վերաբերմունքի: 1862 թ. «Հյուսիսափայլում» տպագրած Առաջարկություն հոդվածում Նազարյանն ուղիներ է որոնում հայերի ներքին կյանքի կազմակերպման համար: Առանց ֆեոդալական կապանքներից ազատագրվելու անհնար է «կրթություն, քաղաքական իրավունք և ազատություն» հայտարարում է նա: «Ժամանակն է հասկանալ, վերջապես, որ մենք այլապես կարող չենք առողջ և ուրախ լինել, եթե մեր մարմնի այս և այն անդամք հիվանդ ու ցավագար են, կարող չենք մեր անձը բախտավոր զգալ՝ միշտ և հանապազ մեր աչքի առջև ունենալով մի թշվառացած բարձի թողած ժողովրդական կացություն»:

Հաջորդ տարվա վերջին, վերահրատարակված «Հյուսիսափայլի» առաջին էջերում Նազարյանը դրսևորում է որոշակի վերաբերմունք՝ մանիֆեստից հետո կառավարության սահմանած նոր բռնությունների նկատմամբ: Այստեղ նա բացորոշ հայտարարում է, որ այլևս անհնար է հույսեր կապել իշխողների հետ, լինեն նրանք օգոստոսներ, թե մեկենասներ: «Մի ազգի գլխավոր ուժը և զորությունը հասարակի մեջ է»,— հայտարարում է նա: Կյանքի ստեղծարար ուժերը նա տեսնում է ժողովրդի մեջ: Դա բավական է, գրում է նա «...պարզ ու բացահայտ հասկացնելու հայոց հասարակին յուր իրավունքը, յուր կչիռը, յուր խորհրդավոր կոչումը ազգի մտավորական և բարոյական վերաշինության համար»:

Մինչև վերջ մնալով իր լուսավորական դիրքերում, Նազարյանը չկարողացավ խորանալ ո՛չ դասակարգային հարաբերությունների և ոչ էլ ազգային ազատագրական պայքարի արմատական պահանջների մեջ: Բայց նա, ինչպես 40-ական թվականներին, մնաց այն կարծիքին, որ «Ռուսաց սիստեման փաթեթ-փաթեթ է, հայերը քնի մեջ կորած»:

1864 թ. ղզլարաբնակ հայերին ուղղած պատասխան նամակում Նազարյանը շարունակում է քարոզել լուսավորություն և, իբրև «մատակարար աշխարհաշեն գաղափարների, իբրև վարող և մշակ ազգային և լուսավորության գործի», պարտավորվում է մտածել ժողովրդի մասին: Ինչպես այստեղ, այնպես էլ հաջորդ տարին Նալբանդյանին ուղղած նամակում, Նազարյանը զայրույթով է խոսում ռուս ռեակցիոներ Կատկովի՝ հայերին ուղղած մեղադրանքի մասին: Հայերն անդավաճան կապված են Ռուսաստանի հետ,— գրում է նա, — և աշխատում են, պահպանելով «ժողովրդական օգուտը ռուսական պետության սահմաններում, ամրապնդել դաստիարակության և կրթության բուն ազգային հիմքերը»: Բացասելով Կատկովի արտահայտած կարծիքները հայերի «ազգային սեպարատիստական» ձգտումների մասին, նա գրում է Նալբանդյանին. «Ցավալի է, որ մի Կատկովի պես Վեղոմոստագիր, պիտի յուր կարող ազդեցությամբ աղավաղի հասարակաց կարծիքը, տալով ժողովրդին, չգիտես որ տեսակ անճոռնի կարծիքներ և հայացք և, այո, այնպիսիներ, որ ավելի նախատինք էին մի զորավոր տերության, քան թե փառք» (Ստեփանոս Նազարյանի նամականի, էջ 474—475):

1870-ական թվականների երկրորդ կեսին հրապարակ եկած «հայոց հարցը» վտանգավոր բարդություններ ստեղծեց հայ կյանքի և նրա ապագայի համար: Նազարյանը հետևում էր ռուս-տաճկական պատերազմին և մեծ հույսեր կապում Ռուսաստանի հաղթանակի հետ: 1876 թ. հոկտեմբերի 25-ին, Հ. Ռոնճուկյանին ուղղած նամակում, նա շարադրում է իր կարծիքը ներկա պատերազմում հայերի ճակատագրի մասին: Նամակագիրը հարց է տալիս, թե ինչո՞ւ Եվրոպան անուշադրության է մատնում հայերի նկատմամբ տաճկական կառավարության խոշտանգումները, իսկ սլավոնական ազգերի նկատմամբ հանդես է բերում ուշադրություն և անհանգստություն: Ամբողջ կյանքն իր ժողովրդին նվիրած հայ գործիչը այդ բացատրում է ո՛չ միայն հայերի քաղաքական վիճակի առանձնահատկությամբ, այլև եվրոպական դիվանագիտության խարդախ քաղաքականությամբ: «Պոլիտիկայի մեջ չկա բարոյականություն,— գրում է նա,— այլ ամեն բան հաշվի համար է այդտեղ»: Ի՞նչ էր պետք հայերին իրենց իրավունքն ու շահը պաշտպանելու համար: Նախ և առաջ, հայտարարում է Նազարյանը «յուրեանց անձը հարգի և կշռավոր կացուցանել եվրոպացոց աչքում»: Բայց ե՞րբ կարող է այդ լինել. երբ հայերը դադարեն «քրիստոնեական մարդասիրություն» հայցել Եվրոպայից: «Քրիստոնեական մարդասիրություն չգիտե պոլիտիկան, այլ նա ուշադիր է միայն այնպիսի ազգերի, որ հասկանալով յուրեանց քաղաքական իրավունքը, ունին երկաթ և քաջություն, այդ իրավունքը զինվորված ձեռամբ պահանջելու: Ես այդպես եմ հասկանում մեր ազգի պատմությունը»:

1877 թ. դեկտեմբերին, Պլևնայի անկումից հետո, Մայսուրյանին ուղղած նամակում. Նազարյանը հաղթանակ է գուշակում սլավոնական ազգերին, բայց չի տեսնում «հայոց հարցի» լուծման հնարավոր ուղիները: Նա նորից



Ռուսաստանի հաղթանակի և «ցարական ողորմածության» հետ է կապում հայերի կյանքի բարելավման միջոցների իրականացումը, գոնե նրա իշխանության տակ ապրող հայերի համար:

Նազարյանի լուսավորական այդ պատրանքներն արդեն խորտակված էին և նրա մահվան նախօրեին նրան համակել էին հոգեկան ծանր տառապանքները: Նա չգտավ և չհասավ ազատագրման իրական ճանապարհների լուծման գաղափարին:

Կապված լինելով եվրոպական և, հատկապես, գերմանական լուսավորական շարժման ավանդույթների հետ, Նազարյանը միշտ էլ կարևոր տեղ է տվել հայերի կուլտուրական մերձեցմանը Ռուսաստանին: «Հայն իբրև Ռուսաստանի հպատակ, ուրեմն քաղաքանապես ռուս, առանց միտ դնելու նորա մասնավոր հարակցությանը դեպի յուր ազգը, կարող է մշակել յուր աստվածատուր քանքարը» (Ստեփանոս Նազարյան, Երկեր, էջ 67): Այս խոսքերը նա ասում է 1858 թ., երբ Նալբանդյանի հետ նրանք խորհում էին ժողովրդական կրթության ուղիների մասին: Նազարյանն անհրաժեշտ էր համարում օգտվել ռուսական համալսարաններից մասնագիտական կրթություն ստանալու, հայերի մտավոր ու նյութական կյանքի զարգացմանն օգնելու նպատակով: Այդ միտքը Նազարյանը կրկնում է և 1864 թ. «Հյուսիսափայլում» տպագրած Ազգային մտածությունք հոդվածում. «Մեր խոսքն այստեղ մի կույր հայրենասիրության վերա չէ, որ կամեր ամեն ամենայն ազգերից վեր դասել յուր սեփականը» (նույն տեղը, էջ 334): Նազարյանն այստեղ ենթադրում է, որ ցարական կառավարությունն իսկապես կարող է մի օր հասկանալ իր կոչումը և օգնել իր իշխանության տակ ապրող այլազգիներին, նրանց թվում և հայերին ցույց տալու «հայրենասիրական հովանավորություն»:

Անդրադառնալով ռուս գրականությանը՝ Նազարյանը գտնում է, որ այն այժմ արտացոլում է կյանքն իր բոլոր կողմերով: «Ամենայն խնդիր մարդկեղեն կյանքի քննության և բանասիրության տակ է ձգում մինչև տերության օրենքը, գիտնական վերլուծությամբ քրքրելով հարդը ցորենից, որոշելով ժողովրդի հին հայացքը այս և այն հասարակաց խնդրի վերա, լուսավորելով և ուղղելով այժմյան առաջադիմության չափովը»: Այդ գրականությունն է, ահա, որ կարող է և պետք է ներգործի հայկական կյանքի, նրա «մատենագրության ոճի վրա»:

«Կարելի չէ առանց մի քաղցր տպավորության նկատել,— գրում է «Հյուսիսափայլի» խմբագիրը 1860 թ.,— ռուսական ընկերությունների մեջ այն բուռն մարդկային ոգին, բուն մարդկային հայացքը և դատողությունը կյանքի խնդիրների վերա, որ անմիջապես առաջացել են ազատ մատենագրության ներգործությամբ: Մենք հույս ունինք, որ մեր սիրելին՝ հայրենական, յուր ավելի բարգավաճության և պարծանքի համար մի օր, թե հասարակությունը, թե մատենագիրք յուրյանց բարոյական մեծությամբ և առողջամիտ բանականությամբ յուրյանց անձը արժանի կացուցանեն այդ կայսերական շնորհին»: Եվ ո՛չ միայն կայսերական շնորհին, այլև «օրենքը, պիտի հառաջադեմ կացուցանէ իմ մարդկային բախտավորությունը, ոչ թե միայն իմ քաղաքացի կացությունը»:

1864 թ. «Հյուսիսափայլի» դեկտեմբերյան համարի էջերում Նազարյանը ցավ է հայտնում, որ մինչև այժմ քիչ է անդրադարձել ռուս գրականությանը: Հույս ունի լրացնել այդ բացը: Նույն տարում նա հրապարակում է Լերմոնտովի Դևը՝ Մ. Սաղաթյանի թարգմանությամբ և գրում առաջաբան, ուր արտահայտում է իր մտքերը ռուս բանաստեղծի այդ հոյակապ ստեղծագործության մասին:

Դեռևս Մ. Նալբանդյանը 1858 թ. «Հյուսիսափայլի» էջերում (№ 5—383) թարգմանել է Լերմոնտովի Մարգարե բանաստեղծությունից մի քառատող: Այդ բանաստեղծության կտորը բերվում է ցույց տալու համար, որ «մտածող մարդիկ վաղուց ահա փորձով իմացած են, որ ճշմարտությունը հալածվում է միշտ և պատճառ է լինում յուր պաշտոնեի հալածանքին. մի այդպիսի անբախտ պաշտոնեի համար ճշմարտությունը շատ անգամ ճանապարհ է բացել

դեպի գլխապարտության սյունը (էշաֆոդ), շատ անգամ հանել է նորան փայտանյույտի վերա»:

Ամսագրի վերջին տարվա վերջին համարում նրա խմբագրի տված բնութագիրը ռուս բանաստեղծին հանդիսանում է ժամանակի հայ գրականության քննադատական մտքի եզակի երևույթներից մեկը: Իր առաջաբանի սկզբում նա հայտարարում է, որ Լերմոնտովի մասին արտահայտած իր մտքերը կրցկրտուր են, քանի որ չեն ներկայացնում ռուս գրականության ողջ ընթացքը: Նա կամենում է նշել, որ այդ գրականությունն ունի նաև հասարակական կոչում մարդկային կյանքի վերափոխության գործում, որին կկամենար ցույց տալ իր ամսագրի էջերում: «Միքայել Լերմոնտովը յուր բոլոր բանաստեղծական ասպարեզի մեջ, հանդիսանում է մեր առջև իբրև Ալեքսանդր Պուշկինի հավասարակշիռ հաջորդը կամ թե մանավանդ իբրև նորա վաստակակիցը»: Նազարյանն ընդգծում է երկու պոետների ճակատագրերի ընդհանրությունը, նշելով, որ վերջինս աքսորվել է Կովկաս՝ Պուշկինի մասին գրած «վրեժխնդիր տաղերգության պատճառով, որ հնչեցուցել էր Պուշկինի գերեզմանի վերա»:

Հայ քննադատին Լերմոնտովը ներկայանում է իբրև «բանաստեղծ ճեղքած ու պատառած հակառակությունների»: Իբրև օրինակ տողատակին Նազարյանը բերում է ռուս բանաստեղծի Մարգարեի ամբողջական թարգմանությունը: Դա, նրա կարծիքով, «մի տեսակ սրտից դուրս խթած հառաչանք է այն համեմատության, որ կար մտավորական կատարելատիպի (իդեալի) և իրական ստույգ աշխարհի մեջ, այն առնչության վերա, որ մի հոգիազգաց մարդ ունի դեպի ընկերությունը— արդարև մի շատ վերին, հանճարեղ սրտից դուրս խթած հառաչանք» (նույն տեղը, էջ 421):

Համեմատելով Լերմոնտովին Բայրոնի հետ, Նազարյանն ընդհանրությունների հետ նույն տեղում ընդգծում է և լերմոնտովյան առանձնահատկությունները: «Լերմոնտովի բանաստեղծական պաշտոնը էր մի ազատ, առանձնավոր, բարձրագահ հոգու պատերազմ ընդդեմ մի անողոքելի ինքնակալության, որ կամեր մեծ ու փոքր հավասարել միմյանց և անտարակույս, այս ազատազգաց ռուսի հուսահատությունը դեմ-հանդիման յուր աշխարհի որպիսությանը»: Նազարյանն այս տողերը գրում էր ցարական նոր ռեակցիայի նախօրեին և, ինչպես նշում է Ա. Ինճիկյանն իր Լերմոնտովը և հայ վաթսունականները հոդվածում, դրանով «հայ հասարակական քաղաքական միտքը և նրա մարտական օրգան «Հյուսիսափայլը» բարձրացնում էր ռուսական ռևոլյուցիոն դեմոկրատական մտքի այն աստիճանին, որի վրա կանգնած էին Բելինսկին, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը» (Տեղեկագիր Հայկ. ՍՍՌ ԳԱ— 1946, №8, էջ 66): Բելինսկու հայտնի քննադատական հոդվածի տողերն են հիշեցնում ռուս բանաստեղծի «Ցար Իվան Վասիլևիչի, նորա մանուկ թիկնապահ Կիրիբեևիչի և հանդուգն վաճառական Կալաշնիկովի մասին» գրված նազարյանական տողերը, որոնցով նա փորձում էր հաստատել լերմոնտովյան «դեմոնականության», (այն է բունտարականության) ցասումնալից բողոքը նորտատիրական իրականության դեմ:

Ինչպես տեսնում ենք, Նազարյանի ազգային լուսավորական գործունեությունն իր հիմնական գծերով կապված է եղել ռուսական ազատամտական լուսավորական շարժման հետ: Ուստի և Ստ. Նազարյանը և Ռուսաստանը թեման դեռևս կարիք ունի ընդարձակման և հանգամանալից ուսումնասիրության:

---

# ՄԱՐԴԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԳԵԼՈՑՆԵՐՆ ՈՒ ԱՐԳԵԼԱՎԱՅՐԵՐԸ

Գ. Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

Տասնիններորդ դարի վերջերին ռուս խոշորագույն բնախույզ Վ. Վ. Դոկուչաևը իր Ռուսական սևահողերի մասին մեծարժեք աշխատությունում, առաջին անգամ գիտականորեն հիմնավորեց տարրերի ու երևույթների փոխկապվածության և փոխազդեցությունների առկայությունը բնության մեջ: Ապացուցվեց, որ բնական բաղադրամասերից մեկի որակական ու քանակական փոփոխությունը, շղթայական ռեակցիայի ձևով, մնացած տարրերում ևս փոփոխություն է հարուցում:

Ինչ խոսք, բնությունն օժտված է իր խախտված հավասարակշռությունը վերականգնելու, որոշ սպառված տարրեր ավելացնելու կամ վերարտադրելու որոշակի ունակությամբ: Սակայն այդ հնարավոր է միայն այն ժամանակ, քանի դեռ մարդիկ բնությունը չեն ենթարկել խոշոր փոփոխությունների:

Մարդկային հասարակության պատմության մեջ հայտնի են շատ դեպքեր, երբ մարդկանց ներգործությամբ, երկրագնդի տարբեր մասերում, տեղի են ունեցել բնության անդառնալի փոփոխություններ: Այսպես, անտառների համատարած հատումների պատճառով Մերձավոր Արևելքի երկրներում, Փոքր Ասիայում, Հունաստանում և այլուր առաջացել է համատարած էրոզիա, չորացել է կլիման, անհետացել են անտառային կենդանատեսակները, պակասել են ջրերը և այլն: Մարդկանց անխնա վերաբերմունքի պատճառով միայն վերջին երկու դարերում վերացել են ավելի քան 70 տեսակ խոշոր կաթնասուններ և 140 տեսակ թռչուններ: Այժմ ոչնչացման և անհետացման վտանգի տակ են ևս 600 տեսակ կենդանիներ: Մեր հանրապետության տարածքից վերջին հարյուրամյակում վերացել են որսարդյունագործական մի շարք կենդանատեսակներ՝ ազնվացեղ եղջերու, համույր, արոս, փասիան և այլն, իսկ հազարավոր հեկտար տարածություններ զրկվել են անտառածածկից:

Եթե հնագույն երկրաբանական ժամանակաշրջաններում կենսական տարրերի փոփոխությունները պայմանավորված էին բացառապես բնական պայմանների փոփոխմամբ (կլիմա, հրաբխականություն, սառցապատում, տեկտոնիկա), ապա երկրաբանական զարգացման ներկա փուլում կենսական տարրերի մեծ մասի անհետացումը մարդկանց գործունեության հետևանք է: Որոշ գծերով անտրոպոգենեզի արդյունք են նաև ժամանակակից բուսակենդանական աշխարհի տեսակակազմն ու խմբավորումների բաշխվածությունը: Հենց այս նկատի ուներ Վ. Ի. Վերնադսկին՝ մարդկային գործունեությունը համարելով երկրաբանական ուժ: Այնուհանդերձ, մարդկությունը, դեռ վաղ դարերից, կամա թե ակամա, հոգացել է նաև բնության որոշ տարրերի՝ տնային կենդանիների, գյուղատնտեսական կուլտուրաների, վերջիններս արհավիրքից պաշտպանող վայրի թռչունների և այլնի պահպանման մասին, ելնելով հենց իր՝ մարդու շահերից:

Բնության տարրերի (հատկապես կենսածին) պահպանությունը, որպես հասարակական պրոբլեմ, ձևավորվեց XX դարում, երբ տեխնիկայի և գիտության զարգացումն ու առաջընթացը հնարավորություն ընձեռեցին մարդուն՝ իշխելու բնության վրա, ամենուր և ամեն ժամ բնության երևույթներում հարուցելու անդառնալի փոփոխություններ: Քսաներորդ դարում իսկ, առաջավոր մտածողների ջանքերով, ձեռնարկվեցին միջոցներ՝ երկրագնդի տարբեր անկյուններում անհետացող կենսաձևերի պահպանման համար: Սկսեցին կազմակերպվել բնապահպանման օջախներ— արգելավայրեր ու արգելոցներ: Այժմ երկրագնդի վրա չկա մի երկիր, որի սահմաններում չգործեն բնապահպանման օջախներ— արգելավայրեր, արգելոցներ, ազգային զբոսայգիներ... Առավել

հանրահայտ են Աֆրիկա աշխարհամասում գործող արգելոցները, ԱՄՆ-ի, Կանադայի, Ավստրալիայի ազգային զբոսայգիները, Չեխոսլովակիայի արգելավայրերը և այլն:

Սովետական Միությունում ևս այս գործը բավարար հիմքերի վրա է դրված: Մեր երկրում կա 85 արգելոց՝ մոտ 7 մլն հեկտար տարածությամբ, իսկ արգելավայրերը հարյուրավոր են: Արժե նշել, որ բնության բարիքների պահպանությունը սկզբից իսկ եղել է մեր կուսակցության ու կառավարության ուշադրության կենտրոնում:

Սկսած 1918 թվականից Լենինի ղեկավարությամբ հրապարակվում են դեկրետներ բնական կարևոր ռեսուրսների պահպանման, ռացիոնալ օգտագործման, վերարտադրման վերաբերյալ: Դրանցից առաջինը Անտառների մասին դեկրետն էր՝ հրապարակված 1918 թ. մայիսի 27-ին:

1921 թ. Վ. Ի. Լենինն ստորագրեց դեկրետ Բնական հուշարձանների, այգիների ու պուրակների պահպանության մասին, որը համարվում է բնության պահպանության վերաբերյալ առաջին ընդհանուր օրենքը մեր հայրենիքում: Բնական հարստությունների պահպանությունը Լենինը սերտորեն կապում էր դրանց օգտագործման հետ. մեր հումքի աղբյուրները պահպանելու համար,— գրում է Լենինը,— պետք է ձգտենք կատարել ու կիրառել գիտա-տեխնիկական կանոնները:

Դեռ Լենինի կենդանության օրոք և նրա անմիջական մասնակցությամբ բնության պահպանության խնդիրներն իրենց տեղը գտան մեր կուսակցության հիմնական փաստաթղթում՝ ծրագրում: Այդ 1919 թվականի մարտին էր, ՌԿ(բ)Պ VIII համագումարում: Հետագայում բնության պահպանության հարցերը քննարկվել են կուսակցության XIX, XX, XXII առավելապես, XXIV համագումարներում:

Բնության պահպանությունը կուսակցական կարևոր գործ համարելը մի անգամ ևս վկայում է այդ պրոբլեմի խոշորագույն դերի մասին: Իլյիչը միշտ հիշեցնում էր, որ բնական հարստություններն ամեն մի հասարակության կյանքի նյութական միջոցների ստեղծման հիմքըն են:

Դեռ 1918 թվականին Լենինի նախաձեռնությամբ մեզ մոտ առաջին անգամ կազմակերպվեց Աստրախանի պետական արգելոցը՝ պահպանելու համար Վոլգայի գետաբերանի կենդանական աշխարհը: Այդ տարիներին նորաստեղծ Սովետական Ռուսաստանը տառապում էր սովի ճիրաններում, իսկ օտարերկրյա ինտերվենտները, ներքին թշնամիների հետ մեկտեղ, ելել էին մեր երկրի դեմ: Այդ տարիներին սկսեցին գործել նաև Բարգուզինի, Բելովեժյան թավուտի, Պեչորա-Իլմենյան, Կովկասյան և այլ արգելոցները:

Մեր երկրում բնապահպանման լայն ցանցի ստեղծումը նպաստեց անհետացումից ու ոչնչացումից փրկելու մի շարք խոշոր կաթնասուն կենդանատեսակներ— վայրի ձի (Պրժեվալսկու), կուլան, ուսուրական վագր, սպիտակ արջ, որմզդեղ, սայգակ, ջրակուղբ, սամույր, ջրափիղ, զուբր և այլն: Զարգացնելով բնության հարստությունների օգտագործման նըկատմամբ լենինյան գաղափարները, սովետական գիտնականներն այժմ մշակել են բնության պահպանության ընդհանուր գիտական սկզբունքները, որով և իրենց գործնական աշխատանքներում ղեկավարվում են Սովետական Միությունում բնության պահպանությամբ զբաղվող բոլոր կազմակերպությունները:

Բնապահպանման գործի հիմնական նպատակն է՝ նպաստել բույսերի և կենդանիների անման ու զարգացմանը՝ ստանալու համար մեծաքանակ կենսազանգված, ստեղծել բնական լիարժեք միջավայր մարդկանց առողջության և աշխատանքային գործունեության համար, պահպանել բնական այնպիսի համալիրներ, որոնք բազմակողմանիորեն բավարարեն մարդկանց հոգևոր ու էսթետիկական պահանջները. բնապահպանությունը կազմակերպելիս ելնել գիտության զարգացման շահերից. այնպես անել, որ պահպանվեն բնության մեջ եղած բոլոր կենսաձևերը: Այդ հնարավորություն կընձեռի ուսումնասիրելու բնությունն իր զարգացման մեջ և ավելի մանրակրկիտ հետազոտելու ապագայում— գիտության զարգացման բարձր աստիճաններում: Այդ միաժամանակ անհրաժեշտ է նաև այն առումով, որ հասարակության ու տեխնիկայի զարգացմանը զուգընթաց երևան են գալիս նոր պահանջներ, բնական հարստությունների օգտագործման նոր հնարավորություններ և, ամենայն հավանականությամբ, այժմ չօգտագործվող բնական տարրերը, բույսերն ու կենդանիներն ապագայում կդառնան ամենակարևոր հումքը:

Բնության պահպանությունը մեզ մոտ պետական ու հասարակական միջոցառումների լայն սիստեմ է, որն ընդգրկում է բնական հարստությունների նպատակահարմար օգտագործումը, պահպանումն ու վերարտադրումը՝ հանուն ներկա և ապագա սերունդների շահերի:

Ինչպես նշատակեցինք, մեր երկրում բնապահպանման կազմակերպման ամենահնագույն ձևերից են արգելավայրերն ու արգելոցները: Ժամանակակից պայմաններում որոշ չափով



փոխվել են բնապահպանման այդ ձևերի առաջնային նպատակները. դրանք դարձել են գիտահետազոտական փորձարարական աշխատանքների կենտրոններ: Այժմ արգելոցներում և արգելավայրերում պահպանվում են ոչ թե բնության մեկ տարրը, ինչպես նախահեղափոխական ժամանակաշրջանում, այլ ողջ բընական համալիրը, լանդշաֆտի բոլոր բաղադրամասերը իրենց լծորդված հավասարակշռությամբ:

Մեր երկրում արգելոցներ ու արգելավայրեր են կազմակերպված բնատարածքային այնպիսի համալիրների հատվածում, որոնք գիտականորեն շատ կարևոր են, ուր կան թանկարժեք բուսա-կենդանատեսակներ, անցյալ դարաշրջաններից մնացած կենդանի ու բրածո կենսաձևեր, երկրաբանական փուլերը ներկայացնող ապարաշերտերի մերկացումներ և բնական այլ հուշարձաններ:

Համաձայն արգելոցների ու արգելավայրերի վերաբերյալ ընդունված պետական օրենքի, այդ տեղամասերը չեն օգտագործվում ժողովրդական տնտեսության կողմից: Վերջիններիս սահմաններում թույլատրվում է միայն նանաչողական տուրիզմը, այն էլ կազմակերպված և որոշակի ժամանակներում:

Արգելոցները համարվում են գիտա-հետազոտական հիմնարկություններ՝ բնական լաբորատորիաներ բաց երկնքի տակ, ուր հանգամանորեն հետազոտվում են բնական բոլոր տարրերը, դիտարկվում բնական երևույթներն ու պրոցեսները, ինչպես նաև կլիմայավարժեցվում են բուսակենդանական նոր տեսակներ:

Այժմ համառոտակի քննարկենք բնապահպանության դրվածքը Հայկական ՍՍՀ-ում:

Հայկական լեռնաշխարհն ունի հարուստ, բազմազան բնություն: Հազարամյակներ շարունակ հանդիսանալով մարդու եռանդուն աշխատանքային գործունեության ասպարեզ, դրա ազդեցությամբ այն նոր տեսք է ստացել. հիմնականում փոխվել են բնական ռեսուրսների մեծ մասի տեսքը, կազմն ու բաշխվածությունը: Դարերի ընթացքում, մեծապես տուժել են Հայաստանի անտառները: Ճիշտ է, դեռ վաղ ժամանակներից հայերը հոգ են տարել իրենց երկիրը անտառապատելու մասին, բայց դրանց պահպանման համար պատշաճ հսկողություն չի եղել և չէր էլ կարող լինել, քանի որ հայերը վաղ են կորցրել պետականությունը, իսկ օտարազգի նվաճողներն, ավերելով երկիրը, հրի ու սրի են մատնել նրա ժողովրդին ու հարստությունները:

Մեզ մոտ բնապահպանական աշխատանքներ սկսվեցին միայն Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո: Դեռ 1923 թ. ՀՍԽՀ Ժողկոմխորհի հրամանով կազմակերպվեցին Հայաստանի առաջին արգելավայրերը, իսկ 1958 թ., Մինիստրների սովետի որոշմամբ, կազմակերպվեցին երկու արգելոցներ և տասնմեկ արգելավայրեր: Դրանք ընդգրկում են բնական տարբեր համալիրներ ու հուշարձաններ: Ծանոթանանք դրանցից մի քանիսին:

Գառնիի արգելոցը (մոտ 27.000 հեկտար տարածությամբ). զբաղեցնում է Արաքսի ձախափնյա վտակների՝ Խոսրով և Ազատ գետերի վերին հոսանքների ավազանները, ուր կան չոր մերձարևադարձային բուսականություն, նոսր թփուտային անտառներ, խոտաթփուտային կիսաանապատներ, որոշ հատվածներում՝ լեռնային տափաստաններ: Այս արգելոցը չափազանց հարուստ է բուսական աշխարհի տեսակակազմով: Կան մոտ 1540 տեսակ բարձրակարգ բույսեր, որոնց 80-ից ավելին հատուկ է այս վայրին: Աշխարհում հանդիպող մոտ 50 տեսակի վայրի տանձենիներից 25-ը Հայաստանում են, դրանցից 10-ից ավելին՝ Գառնիի արգելոցում— տեսակառաջացման այդ կարևոր օջախներից մեկում: Անտառակազմով Գառնիի արգելոցի տարածքը լիովին տարբերվում է հյուսիս-արևելյան շրջաններից (Փոքր Կովկաս), մտնելով Իրանահայկական բուսական մարզի մեջ:

Բուսաշխարհին զուգընթաց կենդանական աշխարհը ևս հարուստ է՝ թե՛ տեսակակազմով և թե քանակապես: Այստեղ բնակվում են բազմաթիվ էնդեմիկ (հատուկ) ու հազվադեպ կենդանատեսակներ՝ հայկական ոչխար (մուֆլոն), բեզոարյան այծ, ընձառյուծ, արջ, լուսան, շնագայլ (չախկալ), վայրի կատուների մի քանի տեսակներ, վայրի խոզ, կզաքիս, գայլ, աղվես, փորսուղ և այլն: Մի քանի տասնամյակ է (1954 թվականից), ինչ ընտելացվել է ուսուրական բծավոր եղջերուն: Չափազանց հարուստ է թռչնաշխարհը, այն էլ հազվադեպ և անհետացող տեսակներով (հատկապես խոշոր գիշատիչներով): Գառնիի արգելոցի սահմաններում բնադրվում են սպիտակագլուխ անգղը, սև ցինը, գառնանգղը, արծիվ բերկուտը, մորուքավոր արծիվը և այլ խոշոր թռչնատեսակներ:

Այս արգելոցում հաշվառվում են բուսական ու կենդանական տեսակները, ուսումնասիրվում կենսապայմանները, հարստացվում, վերականգնվում է բուսակենդանական աշխարհը:

Դիլիջանի արգելոցը (24000 հեկտար տարածությամբ). զբաղեցնում է Աղստև գետի վերին ու միջին հոսանքների շրջանում գտնվող Արեգունի լեռնաշղթայի հյուսիսային, Հալաբի

արևելյան ու հարավ-արևելյան, Փամբակի հյուսիս-արևելյան, Միափորի հարավ-արևմտյան, մասամբ էլ Իջևանի լեռնաշղթայի հարավային լանջերի անտառապատ տարածությունները: Այն համարվում է անտառարգելոց և կոչված է պահպանելու հայկական լեռնաշխարհը եզրավորող Փոքր Կովկասյան լեռների բնորոշ կաղնուտա-հաճարուտային խառը անտառների ստվար զանգվածը, որն ունի կլիմայակարգավորիչ, հողաջրապաշտպան, առողջարարական, արդյունագործական ու գիտական նշանակություն:

Այստեղ հանդիպում են բնական բազմաթիվ հուշարձաններ՝ անցյալի բուսա-կենդանատեսակների մնացորդներ, կուսական անտառամասեր: Առավել հանրահայտ են երրորդական դարաշրջանի մի բուսատեսակի՝ կարմրածառի (կենի կամ մահիկ) պուրակները, մաքուր կաղնուտները, վայրի պտղատու ծառատեսակների այգիները, սոճու բնական խոշոր պուրակները, ընկուզենու և թանկարժեք այլ ծառերի անտառները: Այստեղ, արևելյան հատվածում, Միափորի լեռնաշղթայի Ծաղկոտ կոչվող լեռնաբազուկի հյուսիսային սարավանդաձև լանջերին է գտնվում Անդրկովկասում հանդիպող կարմրածառի ամենամեծ բնական պուրակը՝ 25 հեկտար տարածությամբ: Բնության անկրկնելի գեղեցկություններից են՝ Հաղարծին պատմական ձորը, Պարզ լճի շրջակայքը, Գոշի ձորը՝ Տզրկա լճով, Ծունքարի բարձրաբերձ ջրվեժները, Բլդանի ակունքները և այլն: Հարուստ է նաև կենդանական աշխարհը: Կճղակավորներից տարածված է այծյամը, գիշատիչներից՝ գորշ և սիրիական արջերը, լուսանը, հանդիպում են նաև անտառային կատու, քարի կզաքիս, պարսկական սկյուռ, աքիս, այգու քնամող և շատ այլ կենդանատեսակներ: 1970 թվականից Հաղարծնի ձորում օդընտելացվում են ուսուրական բծավոր եղջերուն ն վայրի խոզը, իսկ 1971 թ.՝ կովկասյան ազնվացեղ եղջերուն: Մի ժամանակ դրանք վխտում էին Հայաստանի անտառներում. հետագայում, մարդկանց անխոհեմ վերաբերմունքի հետևանքով, անհետացան: Նշված արգելոցներում պետք է երկարատև ու գիտականորեն ուսումնասիրվեն բուսա-կենդանական աշխարհի ներկայացուցիչների կենսաբանությունն ու էկոլոգիան, ինչպես նաև դրանց առաջացրած համակեցությունների զարգացումը, շարժունակությունը, նոր տեսակների կլիմայավարժեցման և բազմաթիվ այլ հարցեր: Սակայն, մեր արգելոցներում գիտական հետազոտությունները դեռևս պատշաճ բարձրության վրա չեն. գիտությունների ակադեմիայի համապատասխան ինստիտուտները պետք է, ինչպես հարկն է, ղեկավարեն արգելոցներում կատարվող գիտահետազոտական աշխատանքները:

Արգելոցներում գիտական աշխատանքները բարելավելու, դրանք գիտահետազոտական կատարյալ կենտրոններ դարձնելու գործում պետք է ներգրավել գիտելիքներով հարուստ և գիտական աշխատանքի փորձ ունեցող մասնագետների: Այս առումով գործերն առավելապես վատ են Դիլիջանի արգելոցում:

Հանրապետության արգելոցները պետք է նաև համալրել գիտական նոր հաստիքներով, ինչպես և ստեղծել այնպիսի պայմաններ, որ գիտական աստիճան ունեցող կադրերը ևս կարողանան աշխատել այդ հաստատություններում:

Մեր կարծիքով, հարկ է բարձրացնել արգելոցներում կատարվող գիտական աշխատանքների որակը, դարձնել դրանք բնապահպանման գործի համալիր ուսումնասիրման գիտական կենտրոններ: Այդ նպատակով, թերևս, ճիշտ կլինի արգելոցներն ընդգրկել հանրապետության գիտությունների ակադեմիայի սիստեմում՝ բնության պահպանության խորհրդի իրավասության ներքո: Հանրապետությունում բնապահպանման առումով շնորհակալ գործ կլիներ Շիկահողի արգելոցի վերակազմավորումը Զանգեզուրում: Վերջինս ունի բնության առավել հազվագյուտ ու էնդեմիկ կողմեր, ինչպես նաև լիովին արտացոլում է Հայկական լեռնաշխարհի հարավ-արևելյան հատվածի բնության յուրօրինակությունը:

Մեր հանրապետությունում գործող մոտ մեկ տասնյակ պետական արգելավայրերից առավել հիշարժան են Ծավ գետի ավազանում գտնվող սոսիի բնական պուրակը՝ միակը ողջ Կովկասում (Ղափանի շրջան), Կովկասյան մրտավարդենիների (ռոդո-դենդրոն— երրորդական դարաշրջանի բույս) բնական թփուտային պուրակները Փամբակի լեռնաշղթայի հյուսիսային լանջերին, անապատներին հատուկ սորուն ավազաթմբերը՝ Գորովանի ավազուտները Արարատի շրջանում, որոնք ընդգրկում են մոտ 200 հեկտար տարածություն (այս ավազաթմբերի ծագումը դեռևս չի պարզաբանված), Արագածի հարավային գագաթամերձ լանջի 300 հեկտար տարածությամբ ալպյան մարգագետինները: Արգելավայրեր են նաև հանրապետության առողջարաններ՝ Ջերմուկի, Ստեփանավանի շրջակա անտառամասերը (ուր անտառներն առաջին կարգի են, ունեն ջրապաշտպան, հողապաշտպան, կլիմայակարգավորիչ և առողջարար նշանակություն), Սևանա լճի ջրերից ազատված տեղանքը (որն անտառատնկվելու է), ինչպես նաև Արեգունու լեռնաշղթայի հարավ-արևմտյան



լանջերի անտառակները, Ծաղկաձորի մոտ գտնվող բանքսա-սոճու պուրակը և այլն: Վերջերս՝ 1973 թ. մարտին, ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրամանով արգելավայրեր համարվեցին նաև Համզաչիմանի (Գուգարքի շրջան), Գետիկի (Կրասնոսելսկի շրջան), Արզականի (Հրազդանի շրջան) և Տանձավերի (Գորիսի շրջան) անտառտնտեսությունները:

Մեր կարծիքով, հարկ է արգելավայրային ռեժիմ սահմանել նաև Մարմարիկի ողջ հովտում, Աչանան գետի հովտում ու Վաչագանի ձորում (Ղափանի շրջան), Այրի գետի վերին հոսանքներում գտնվող մնացորդային անտառամասերի, Արագիլջուր գետակի միջին ավազանում հանդիպող նոսր խառն անտառակների (Սիսիանի շրջան), Վայրի նռնիների պուրակի (Գորիսի շրջան), Օձունի հաճարուտների պուրակի, երրորդական դարաշրջանից եկող գիհու անտառակների (Իջևանի շրջան), Արագածի լանջերի բարձր լեռնային անտառների և այլ տարածքներում:

Հայաստանը վայրի ցորենի տեսակառաջացման հիմնական կենտրոններից (օջախներից) մեկն է, ուստի և գիտական մեծ նշանակություն կարող է ունենալ հազացգի վայրի կուլտուրաների սպեցիֆիկ արգելավայրի հիմնումը Արարատյան գոգավորության չոր-տափաստանային գոտու սահմաններում, Ողջաբերդի լեռնաշղթայի փեշերին: Արգելավայրային ռեժիմը հարկ է պահպանել նաև երկրաբանական հազվադեպ գոյացումների վայրերում (Գորիսի բրգաշարը, Խնձորեսկի քարայրների խումբը՝ հնագույն բնակավայրերի հետ միասին, Փերչինգիլի քարակարկառները Որոտան գետի վերին ավազանում և այլն):

Մեր կարծիքով, լեռնային երկրներում արգելավայրեր պետք է կազմակերպել բոլոր բնական գոտիների սահմաններում, պահպանելով ո՛չ միայն այս կամ այն հազվադեպ բնական տարրը, այլև տվյալ բնական լանդշաֆտները:

Օդերևութաբանական կայանների նման արգելավայրերը ևս պետք է ընդգրկեն հանրապետության սահմաններում բնական համալիրների բոլոր տիպերը: Գիտահետազոտական հիմնարկների համար դրանք կհանդիսանան ստացիոնար գիտական կայաններ, որոնց միջոցով հնարավոր կլինի բացահայտել երևույթների ու պրոցեսների ընթացքը բնական, չփոփոխված լանդշաֆտներում, մշակել բնական ռեսուրսների բազմացման ռացիոնալ օգտագործման և մարդու ու բնության փոխհարաբերությունների կարգավորման նորանոր ուղիներ:

Հայկական հանրապետության տարածքը հարուստ է ինչպես բնական, նույնպես և պատմական հուշարձաններով: Այդ բոլորը պետք է ծառայեցնել աշխատավորության հանգստի կազմակերպմանը, երիտասարդության ուսուցմանն ու հայրենասիրական դաստիարակությանը: Միաժամանակ դրանց շրջակա բնության համալիրները պետք է անաղարտ պահպանել գալիք սերունդների համար:

Ցանկալի է մեր հանրապետությունում ևս կազմակերպել բնական զբոսայգիներ, օգտագործելով բնական որոշակի ռեսուրսները (առավելապես հանգստի կազմակերպման համար), պահպանելով բնական ու ճարտարապետական համալիրների ընդհանուր տեսքը, կառուցվածքը, հազվադեպ տարրերը, այն հարստացնելով նոր, բնությանը ներդաշնակ արհեստական կառույցներով: Այդ զբոսայգիներում կարող են լինել առանձին արգելավայրեր, անգամ արգելոցներ, իսկ նրանց շրջակայքում «փակ» և «բաց» գոտիներ: Բոլոր տեսակի կառույցները (տուրիստական կետեր, հանգստյան տներ, առողջարաններ, ամառային ճամբարներ և այլն) կկատարվեն բաց գոտիներում: Բնական հանգստավայրի նախատիպ կարող է հանդիսանալ Որոտանի հովիտը՝ Տաթևի պատմական հուշարձանների, Տանձավերի արգելավայրի, հին Շինուհայր բնակատեղի և Տաթև ՀԷԿ-ի կառույցների հետ միասին: Բնական զբոսայգի կարելի է կազմակերպել նաև Դիլիջան—Կիրովականի հատվածում, ներգրավելով Դիլիջանի արգելոցը, Համզաչիմանի ու Գետիկի արգելավայրերը, ինչպես նաև Կիրովական քաղաքի շրջակա անտառային տարածքն ու Գայլաձորի կիրճը: Բնական հանգստավայր է Մարմարիկի հովիտը, Սևանա լիճն իր ափամերձ տարածքներով, կառուցվող ու կառուցվելիք շինություններով:

Հանրապետությունում արգելոցների ու արգելավայրերի և, առհասարակ, բնական հուշարձանների պահպանությունը դեռևս անմխիթար վիճակում է: Դրանցում ամենուրեք արածում են անասունների հոտեր, հազվադեպ չեն որսագողությունն ու անտառահատումները, անհարկի օգտագործվում են ռեսուրսները, աղտոտում, փչացնում տեղանքը: Այդ ամենը հետևանք է նաև միասնական պատասխանատու իրավական օրգանի բացակայության:

Ժամանակն է, այլ հանրապետությունների օրինակով, մեզ մոտ ևս Մինիստրների սովետին կից ստեղծել բնության պահպանության կոմիտե՝ իր գիտահետազոտական և ստուգիչ-տեսչական մասնաճյուղերով: Առավել կարևորը ժողովրդի՝ երիտասարդության հոգում հայրենի բնության հարստությունների, թանկարժեք հուշարձանների նկատմամբ սիրո, հոգատարության դաստիարակումն է:

## ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

# ԳԼԽԱՎՈՐԵԼ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՏԵՐՄԻՆԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ

Ռ. Ս. ՀԱՄԲԱՐՅԱՆ

Մի առիթով մասնակցեցի Հայաստանի ֆիզիոլոգների ընկերության հերթական նիստին: Մինչև նրա գնահատելի նախաձեռնության մասին խոսելը, կցանկանայինք շոշափել մի շատ կարևոր հարց, որն այսօր հրամայական լուծում է պահանջում:

Գիտության և տեխնիկայի բուռն վերելքը լեզվաբաններից, հատկապես բառարանագետներից ու տերմինաբաններից պահանջում է լարված, ճկուն աշխատանք: Նոր բառը ներառնելիս լեզուն չի հապաղում: Եթե այն դանդաղում է, լեզուն կրողը՝ ժողովուրդը, անմիջապես թելադրում է իրենը, հաճախ մեխանիկորեն վերցնելով օտար բառը: Իհարկե, լեզուն հիմնականում հարստանում է ժողովրդի ստեղծած, քընքնած, ընդունած բառաձևերով: Բայց երբ խոսքը գիտական տերմինի մասին է, այսինքն՝ բառը դիտվում է ոչ թե իբրև սոսկ ֆիզիկական միավոր, այլ՝ հասկացություն, որը թարգմանվելու, ճշգրտվելու կարիք ունի տվյալ լեզվի օրենքներին համապատասխան, ապա գիտակ մասնագետները և լեզվաբանները ուշանալու իրավունք չունեն:

Մինչդեռ ստացվել է այնպիսի վիճակ, երբ շատ դեպքերում գիտատեխնիկական տերմինի ստեղծմամբ, իրենց աշխատանքի անհետաձգելիության բերումով, զբաղվում են մամուլի օրգանները: Նրանք սպասելու, նույնն է թե՝ մտածելու, համադրելու, ընտրելու ժամանակ չունեն: Եվ այստեղ շատ բան պայմանավորված է նրանց բառարանային զինվածության աստիճանով, նրանով, թե ովքեր են զբաղվում այդ գործով և, ամենակարևորը, ովքեր են գլխավորում այն: Վերջին հանգամանքը բնորոշ է: Թո՛ղ որ ստեղծագործ, լեզվագետ և լեզվասեր է թարգմանիչը, բազմահմուտ ու փորձառու, միևնույն է, նրա ասածն ու արածը զտվում, խմբագրվում են հիմնարկության մաուշտաբով, ղեկավար բարձունքում: Թարգմանիչը, որ հանգամանքների բերումով գիտատեխնիկական տերմինի առաջին ստեղծողն է, իր բառազավակը քննության է հանձնում այդ ղեկավարին: Սա էլ, օգտվելով տերմինաբանական կոմիտեի լեթարգիական քնից և գիտամասնագիտական բառարանների բացակայությունից, թելադրում է իրենը՝ իր գիտցածի չափով: Չենք բացառում, նման ղեկավարների շարքում ևս սրտացավ, ստեղծագործ, որոնմների ունակ մարդիկ կան ճիշտ այնպես, ինչպես թարգմանիչների շրջանում ևս՝ բանիմացներ ու անորակներ, ստեղծագործողներ և քարամիտներ: Բայց քիչ չեն նաև ռոբոտային սահմանափակությամբ տառապող այնպիսի խմբագրողներն ու վերախմբագրողները, որոնք իրենց գիտելիքների պակասը լրացնում են իշխանությամբ, ստիպելով մյուսներին կասկածի չենթարկել բառին կյանք տալու իրենց մենաշնորհը: Ցավալին այն է, որ հաճախ նրանց հետ վիճելու հնարավորություն չկա, կախյալ վիճակում ես. բացի այդ, ձեռքիդ տակ մասնագիտական բառարան չկա, ասել է թե զենք չկա: Եվ նման ղեկավարները կարողանում են տոնել լեզվի օրենքների ու օրինաչափությունների անտեսման, ոտնահարման գործում իրենց տարած հաղթանակը:

Գիտական նոր տերմինների ստեղծմանն ու



թարգմանությանը, խմբագրություններից զատ, մասնակցում են տասնյակ գիտահետազոտական ինստիտուտների լրատվական ծառայություններ ու այլ հիմնարկություններ՝ խորացնելով այդ գործում եղած քաոսը: Այս ասպարեզում նրանց հարկադրյալ ինքնագործունեությունը, թելադրված ամենօրյա աշխատանքով, դուրս է մնացել պետական ու համազգային հսկողությունից: Եվ ամեն մի օջախ, ստեղծելով իր բառը, նախանձելի համառությամբ կիրառում է այն, ուշադրության իսկ չառնելով հարևանին, եթե նույնիսկ բառակազմության ասպարեզում նա ավելի լուրջ հաջողության հասած լինի: Այսպես, մի քանի տարի առաջ Երևանի փողոցներում տեղադրվեցին ռուսերեն односторонное движение բառերի ինքնակամ թարգմանությամբ ցուցատախտակներ— **Միակողմանի երթևեկություն:** Բազում փորձեր եղան համոզելու, ապացուցելու, որ «միակողմանի» բառը հայերենում ունի բացասական իմաստ, նշանակում է սահմանափակ, կողմնակալ, աչառու: Պետք է լինի «միակողմ», որը և՛ կարճ է, և՛ ճիշտ: Նույնիսկ խորհուրդ տըրվեց, թե ինչպես առանց մեծ ծախսերի ազատվել աղաղակող սխալից— ջնջել «անի» վերջավորությունը և վերջ: Բայց երևում է պետավտոտեսչությունում թանկ են գնահատում իրենց հեղինակային իրավունքը՝ երթևեկության խառնաշփոթությունը թարգմանաբար փոխադրելով հայոց լեզվի բնագավառը: Մինչև օրս էլ հանդիպում ենք նման «միակողմանի» ցուցատախտակների:

Ահա թե ինչու այս ընդհանուր ֆոնի վրա ուսանդրող երանգ են առնում ֆիզիոլոգների և գիտության մի քանի այլ ճյուղերի մասնագետների առաջին քայլերը: Ֆիզիոլոգների ձեռնարկումը հանկարծահաս պոռթկում չէր: Նրանք դժվարությունների հետ առնչվեցին, երբ ծագեց ակադեմիկոս Լևոն Օրբելու ընտիր դասախոսությունները թարգմանելու անհրաժեշտությունը: Կենսաբանական գիտությունների դոկտոր Ռաֆայել Հարությունյանի վկայությամբ, թարգմանիչներն ստիպված էին հայացնել 300-ից ավելի ֆիզիոլոգիական տերմին: Հաջողությամբ ավարտված այդ աշխատանքն էլ գիտնականներին հուշեց լրացնել բառարանային բացը: Երկու տարվա համար, քրտնաջան նախապատրաստական աշխատանքից հետո ֆիզիոլոգների հանրապետական ընկերությունը Հայաստանի գիտությունների ակադեմիայի նախագահության առաջ հարց է հարուցել՝ հրատարակելու ֆիզիոլոգիական տերմինների բառարան և ստացել է նրա հավանությունը: 15 հազար բառից բաղկացած ռուսհայերեն այդ բառարանը կազմելու համար ստեղծվել է խմբագրական հանձնաժողով: Ֆիզիոլոգները մտադիր են վերլուծական քննության ենթարկել մեր հին բառարանների՝ իրենց ճյուղին վերաբերող ողջ բառապաշարը: Նրանք նույնիսկ կասկածով են վերաբերվում մի այնպիսի քաջածանոթ բառի, ինչպիսին է **զարկերակը,** գտնելով, թե այն մասնագիտական կողմը ճիշտ չի արտացոլում: Առաջարկվում է «անոթազարկ» տարբերակը:

Ուզում ենք շեշտել, որ քաղաքացիական իրավունք նվաճած բառերի նկատմամբ հարկ է ավելի քան ուշադիր, հոգածու վերաբերմունք, ակնածանք: Պետք է նկատի ունենալ, որ մեր օրերում բազում հասկացողություններ կորցրել են իրենց նախնական նշանակությունը: Գիտության արդի տվյալները բառաձևի մեջ խտացված իմաստին կամ երևույթին այլ մեկնաբանություն են տալիս. երևան են եկել նոր օրինաչափություններ: **Ատոմ** ասելով մի ժամանակ հասկացել են անբաժանելի մասնիկ, մինչդեռ հիմա քաջ հայտնի է, թե նրա արդեն ճեղքված միջուկը ինչպիսի՜ հեռանկար է բացում մարդկության առաջ: Եվ, այնուամենայնիվ, ոչ ոքի մտքով չի անցնում վերանայել «ատոմ» անվանումը, առավել ևս «ատոմային էներգիա» ասելով հասկանալ «անբաժանելի էներգիա»:

Այս առումով նկատելի է երկու միտում. ոմանք հակված են թարգմանել, հայերենի վերածել, շտկել ու վերախմբագրել գիտատեխնիկական բոլոր տերմինները՝ ինչպես եղածները, այնպես և նորերը: Ահա նրանց ջանքերի մի երկու նմուշ. ֆիզիոլոգիան թարգմանվում է բնախոսություն, իսկ անատոմիան՝ կազմախոսություն: Գուցե այստեղ սարսափելի ոչինչ չկա, բայց գիտությամբ հրապուրված պատանին չգիտե՝ ո՛ր բառաձևին նախապատվություն տալ: Պատկառելի պրոֆեսորն ասում է ֆիզիոլոգիա, իսկ մի որևէ պարբերականում գրվում է բնախոսություն: Ո՞րն է ճիշտը: Ո՞ւմ դիմել ընդհանուր հայտարարի գալու համար:

Երկրորդ հոսանքի ներկայացուցիչները պարզապես վերցնում են բառը և այն մեխանիկորեն ենթարկում հայոց լեզվի կանոններին: Մասնագետները դեռ կարգին չէին բացատրել և մինչև հիմա էլ շատերին լրիվ հասկանալի չէ «էսկալացիա» բառի իմաստը, բայց արդեն ամենուր հանդիպում ենք «էսկալացում», «էսկալացնել» ձևերին: Եվ այս ամենի պատճառը ուժեղ, հեղինակավոր միավորիչ կենտրոն չունենալն է: Տերմինաբանական կարգապահությունը պարտադիր չհամարելը մի յուրօրինակ գերդեմոկրատիա է ստեղծել, որն արտահայտվում է սեփական տեսությունն անմիջապես ու

անարգել իրագործելու մեջ: Տարբեր մասնագետներ ամենայն լրջությամբ գրում են բառեր ու արտահայտություններ, որոնք քարուքանդ են անում տասնհինգ տարվա սովորածը դըպրոցում և բարձրագույն ուսումնական հաստատությունում: Հանրապետության գիտությունների ակադեմիայի մեքենաշինության տեխնոլոգիայի հանձնաժողովի նախագահ, տեխնիկական գիտությունների թեկնածու Ալիս Մարջանյանը տեխնիկական հասկացությունները շաղկապելու եզակի փորձեր է անում: Կոմպրեսորների գործարանը նրա մոտ հնչում է որպես «ճնշակ գործարան»: Սա չէ ամենաանհանգըստացնողը: «Ձեռնարկության» փոխարեն նա ասում է «ձեռնարկ». այս դեռ ինչ-որ չափով հասկանալի է (միայն թե «գործարան-ձեռնարկը» չպետք է շփոթել լայնորեն հայտնի «գիրք-ձեռնարկ»-ի հետ...): Բայց ո՞վ կհասկանա, որ նրա «թողի ծավալ» բառերն արտահայտում են «արտադրանքի թողարկման ծավալ» միտքը, կամ. «մարդու սպառող պահանջը» նշանակում է հենց «սպառման պահանջմունքներ». չէ՛ որ **պահանջը սպառող** չի կարող լինել, այլ **սպառողը** կարող է պահանջ ունենալ: Շփոթված են անձն ու իրը, վերաբերությունը: Ահա մարջանյանական մի ամբողջ նախադասություն. «Երբ տնտեսականն ու տեխնիկ զարգացումը առաջ են ընկնում մարդու սպառող պահանջից...»: Փորձեցեք վերծանել նաև հետևյալ բառաշարը. «...լավում են եռի և զոդի եղանակները» (լրացուցիչ բացատրությունից պարզվեց, որ դա նշանակում է «բարելավում են եռակցման և զոդման եղանակները»): Մարջանյանը լեզուն այնպես է շրջել, որ առանցքակալները ոչ թե ջերմություն ունեն, այլ ջերմում են՝ «առանցքակալի ջերմը»:

Մարջանյանի հետ ունեցած մեր կարճատև զրույցից պարզվեց, որ նա հետապնդում է գիտատեխնիկական տերմինաբանությունը պարզեցնելու, համառոտ դարձնելու առաքինի նըպատակ: Մեր համոզմամբ այդ խնդիրը չպետք է լուծվի բառի սոսկական, այնպիսի կրճատմամբ, որից այն դառնա անճանաչելի (անհանդուրժելի է **կրճատում հանուն կրճատման** ձևական մոտեցումը):

Բառաստեղծումը պետք է վերածվի մի որոշակի պրոցեսի՝ չբացառելով գիտական բանավեճը և կարծիքների լայն փոխանակությունը: Դրա համար անհրաժեշտ են մասնագետի և ժողովրդի լայն շփումներ. առաջինները հասարակության դատին են ներկայացնում բառը, երկրորդը քննում է այն և որոշ ժամանակ անց կայացնում է իր վճիռը՝ ընդունե՞լ, թե՞ մերժել նորամուծությունը: Այդպես է վարվում ռուսական մամուլը. գիտատեխնիկական և մասնագիտական պարբերականներն ու հանդեսները մշտապես հրապարակում են զրույցներ գիտատեխնիկական տերմինաբանության հարցերի շուրջը, զետեղում նոր բառերն ու կապակցությունները, մեկնաբանում դրանք. խորհուրդներ տալիս, խորհրդակցում: Ինչո՞ւ նույնը չանել մեզ մոտ՝ «Գիտություն և տեխնիկա» ամսագրի էջերում, ռադիոյով, երբեմն նաև՝ հեռուստատեսությամբ: Վատ չէր լինի, եթե այդ գործին լծվեին երիտասարդական մամուլը և «Երեկոյան Երևան» քաղաքային թերթը:

Մտահոգիչ է նաև որոշ գիտնականների այն պնդումը, թե բառարան կազմելիս, առհասարակ, պետք է հրաժարվել լեզվաբանների ծառայությունից: Օրինակ, երկրաբանները, որոնք նույնպես ձեռնամուխ են եղել բառարանաստեղծմանը, իրենց դժգոհությունը հիմնավորում են փաստերով: Երկրաբանական-հանքաբանական գիտությունների դոկտոր Արմենակ Քոչարյանը՝ «Պոլիտեխնիկական բառարանի» երկրաբանությանը վերաբերող բաժնի հեղինակակիցներից մեկը, բողոքում է, որ բառարանի խմբագրական հանձնաժողովն իրենց մասնակից չդարձրեց տերմինների վերջնական մշակմանը, որի հետևանքով զգալի խեղաթյուրումներ կան այնտեղ: Նա պնդում է, թե այդ բառարանի երկրաբանական մասը լեզվաբանների քմահաճ վերաբերմունքի պատճառով խիստ անհաջող է: Անտարակույս, մասնագետ-գիտնական և լեզվաբան-գիտնական համագործակցությամբ միայն կարող է ծնվել արժեքավոր բառարան: Առաջինները պետք է տան հասկացության սպառիչ սահմանումը, կազմեն բառը ու գիտատեխնիկական տերմինը, իսկ երկրորդները հավաստեն կամ մերժեն դրա ճշգրտությունը, օգնեն՝ մշակելու լիարժեք տարբերակը՝ ելնելով լեզվի ներքին օրենքներից և այն բանից, թե տվյալ տերմինը որքանով է մատչելի, դյուրըմբռնելի և բարեհունչ: Այս սկզբունքին որդեգրվելն առանձնապես օգտակար կլիներ երկրաբանների համար, որոնք մտադրվել են կազմել բացատրական բառարան, թարգմանելուց զատ տալ տերմինի սահմանումը և որոշ տեղեկություններ՝ տվյալ հասկացության վերաբերյալ: Այսպես, գտնելով ռուսերեն «գրանատ» բառի հայերեն համարժեքը՝ «նռնաքար», պետք է հակիրճ նկարագրեն, պարզաբանեն, թե ի՞նչ է ներկայացնում այն՝ գիտաերկրաբանական առումով:

Այս ամենը, սակայն, դեռ ծրագրեր են, նախաձեռնություններ, որ լավագույն դեպքում կիրականանան 3—4 տարի անց. առանձին գիտնականների կամ կոլեկտիվների սրտացավությամբ, եռանդով ու ոգևորությամբ թելադրըված նման մասնակի միջոցառումները չափազանց քիչ են հագեցնելու գիտա-տեխնիկական բառարանների սովը. նկատի ունենք, հատկապես, ռուս-հայերեն բառարանները: Այսօր իսկ գրչի մարդկանց համար անելանելի վիճակ է ստեղծվել տիեզերագիտության, էլեկտրոնիկայի, բիոնիկայի, գենային ինժեներիայի և գիտության նոր ու նորագույն բազմաթիվ այլ ճյուղերի տերմինները հայացնելիս: Հայերեն ինչպիսի՞ տերմիններով փոխարինել, ասենք **ստրես, աքսելերացիա, օկտոիշ, կոմունիկաբելնոստ, օբրազիվ, պալմետնի** և տասնյակ ու հարյուրավոր այլ բառաձևեր:

Միութենական շատ հանրապետություններում այս գործը գիտականորեն է կազմակերպված: Այսպես՝ միայն Մոսկվայում տերմինների մշակությամբ զբաղվում է ավելի քան 200 հաստատություն, բայց ոչ միմյանցից անկախ և միմյանցից անջատ: Նրանց աշխատանքը կոորդինացնում են երկու շատ հեղինակավոր մարմիններ— Ստանդարտների պետական կոմիտեն, որն ունի իր գլխավոր տերմինաբանական խորհուրդը և ՍՍՀՄ ԳԱ գիտատեխնիկական տերմինաբանության կոմիտեն: Տերմինաբանության մեթոդիկայի վերաբերյալ ստեղծվել է ստվար գրականություն: Այս ամենն իր նյութական միջոցներով ու պատշաճ կազմակերպվածությամբ վիթխարի չափերով խթանում է այս խիստ հրատապ, պատասխանատու գործը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը դեռ 1971 թվականի փետրվարին իրենց «Ստանդարտացումը և որակը» որոշման մեջ հատկապես նշել են, որ ՀՍՍՀ գիտությունների ակադեմիան և ստանդարտացման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Հայաստանի բաժանմունքը 1971—1974 թվականներին պետք է ապահովեն գիտատեխնիկական տերմինաբանությամբ հանրապետական ստանդարտների մշակումը հայերեն: Սակայն այս հանձնարարությունը չի կատարվում: Մի քանի հանգամանքներ պարզաբանման կարիք ունեն:

Նախ նշենք, որ որոշման մեջ հիշատակվող բաժանմունքը լուծարվել է. գիտությունների ակադեմիայում այդ գործով կարող էին զբաղվել լեզվի ինստիտուտը և ակադեմիայի նախագահությանը կից գիտատեխնիկական տերմինաբանության խորհուրդը: Լեզվաբանները համեստորեն խոստովանեցին, որ իրենք այդ խնդրին անդրադառնում են առիթից-առիթ: Ինստիտուտի տերմինաբանության և խոսքի մշակույթի բաժինը, որը հասարակական հիմունքներով ղեկավարում է ակադեմիկոս Գուրգեն Սևակը, հիմնականում զբաղված է հասարակագիտական տերմիններով. հաստիքային աշխատակիցներից մեկն զբաղված է գրականագիտական տերմիններով, մյուսը՝ լեզվագիտական, երրորդը՝ խոսքի մշակույթի հարցերով: Ինստիտուտի ժամանակակից հայոց լեզվի բաժինը գիտատեխնիկական տերմինաբանությունն ամենևին իր գործը չի համարում: Մեր լեզուն դարեր շարունակ նրբագույն ըզգացմունքների թարգմանը լինելու հետ մեկտեղ միշտ քայլել է գիտական առաջադիմության համընթաց, լրացել, հարստացել նրա ընձեռածով: Սակայն այսօր առնվազն տարօրինակ է, որ լեզվի ինստիտուտը գիտատեխնիկական տերմինների մասին հոգալը իր գործը չի համարում: Գիտատեխնիկական այս բուռն հեղափոխության ժամանակաշրջանում, երբ գիտությունը թափանցում է կյանքի բոլոր ասպարեզները՝ թելադրելով մտքերն ու իրավիճակներն ավելի սպառիչ ու ճիշտ բացահայտող բառեր, հասկացություններ ու կապակցություններ, որպիսիք հետզհետե առավել բանիմացությամբ են օգտագործվում գիտա-ֆանտաստիկ գրականության ոլորտում, մամուլում, հատուկ ժողովածուներում զետեղվող գրախոսություններում, առավել հրատապ է դառնում գիտատեխնիկական տերմինաբանությամբ ինչպես հարկն է զբաղվելու հարցը:

Ակադեմիայի գիտատեխնիկական տերմինաբանության խորհրդի նախագահը նույնպես Գուրգեն Սևակն է, դարձյալ հասարակական հիմունքներով: Նա ունի երկու տեղակալ, որոնք նույնպես աշխատում են հասարակական հիմունքներով: Դեռ երեք տարի առաջ նրանց հանձնարարել են կազմել մի նախագիծ, որով ակադեմիայի նախագահությունը որոշելու էր խորհրդի անձնակազմը և խնդիրները: Ստեղծվեց շատ գործնական, խոստումնալից նախագիծ: Խորհուրդը պետք է ունենար ընդամենը երեք վճարովի հաստիք և իր հասարակական հանձնաժողովները՝ գիտահետազոտական բոլոր ինստիտուտներում և օջախներում: Նա պարտավորվում էր ամենամյա հրատարակության պատրաստել գիտատեխնիկական տերմինների բառարաններ (30—40-ական մամուլի չափով): Ցավոք, այդ նախագիծը մնում է նախագիծ և հայտնի չէ, թե ակադեմիայի նախագահությունը ե՞րբ է ձեռնարկելու դրա կենսագործումը: Սակայն, ի պատիվ խորհրդի և նրա նախագահի, պետք է ասել, որ առ այսօր կազմված և խմբագրված են մասնագիտական 7 տերմինարաններ (5—6 լեզվով՝ ռուսերեն, հայերեն, անգլերեն, ֆրանսերեն, գերմաներեն), այդ թվում՝ Հայաստանի շինաքարերի, հիդրոմեխանիկայի, կատալիզի և կատալիզատորների, ջերմափոխանակման և այլ ճյուղերի

վերաբերյալ: Բառարանագիտության վերջին խոսքով կազմված տերմինարանները ունեն նաև բառահինդեքս, որի միջոցով ճշտությամբ կարելի է գտնել ուզած բառի թարգմանությունը ցանկացած լեզվով:

Հիմա էլ դրանց տպագրության հեռանկարն է անհայտ և ո՛չ միայն դրանց: Վաղուց պատրաստ են և տպագրության են սպասում «Տընտեսագիտական տերմինների բառարանը» և «Քիմիական տերմինների լիակատար բառարանը»: Մինչդեռ գիտությունների ակադեմիայի հրատարակչական պլանում առաջիկա 2 տարում ոչ մի բառարան չի նախատեսված:

Վաղուց ժամանակն է, որ հանրապետությունում գործնական ասպարեզ իջնի գիտատեխնիկական տերմինաբանությամբ զբաղվող մի ուժեղ և կենսունակ մարմին, որը կարողանա կարգավորել ու ղեկավարել, գիտական լուրջ հիմքերի վրա դնել այդ պատասխանատու, անհետաձգելի գործը: Նա պետք է լինի մշտարթուն հսկիչ աչք, ժողովի, ի մի բերի, մշակի և ժողովրդին հանձնի այն ողջ լավը, ինչ ստեղծվում է գիտատեխնիկական տերմինաբանության բնագավառում: Այն պետք է ունենա ինչպես բարոյական, այնպես էլ նյութական ու այլ բնույթի լիարժեք իրավունքներ: Միայն այս կերպ հնարավոր կլիներ վերջ տալ քաոսին, հաստատել տերմինաբանական կարգապահություն և լայն մասսաների շրջանում հաջողությամբ պրոպագանդել գիտությունն ու տեխնիկան, որոնք մարդկային առաջադիմության հզորագույն խթանն են մեր օրերում:

ՌԱՖԱՅԵԼ ՀԱՄԲԱՐՅԱՆ

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Այժմ արդեն անհերքելի է, որ հայերեն տեխնիկական տերմինների ու բառապաշարի մշակման գործն ավելի քան հրատապ է: Տեխնիկական ինֆորմացիայի վիթխարի ծավալն ու բազմազանությունը լիովին բացառում են ինքնահոսն ու տնայնագործությունն այդ բնագավառում: Խոստովանենք, որ այդ գործը անհատների կարողությանն ու կամեցողությանը թողնելը վնասակար է: Այսօր չի կարելի պատկերացնել սովետական սոցիալիստական որևէ ազգի կուլտուրայի ծաղկումը, առանց առաջավոր տեխնիկայի բարգավաճման, հետևաբար և՝ տեխնիկական լեզվի զարգացման:**

**Տպագրվող այս դիտողությունները, հավակնություն չունենալով լիակատար ու վերջնական համարվելու, վկայում են մի բան. ժամանակն է, որպեսզի խնդիրը լուծվի համապետական մասշտաբով: Ուստի, անհրաժեշտ է, որ Հայաստանի գիտությունների ակադեմիան, ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեն, գիտահասարակական հաստատությունների ու կազմակերպությունների համագործակցությամբ, նորմալ հունով վարեն տեխնիկական բառարանների ստեղծման ու հրատարկման գործը: Մի գործ, որը հնարավոր է գլուխ բերել միայն համահավաք և կոլեկտիվ ուժերով, պետական բարձր մակարդակով:**



Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 05510 Պատվեր 367 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ՝ 14.300 Գինը 25 կ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/III-1974 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆ: Կենսագրություն: *Թարգմ. ռուսերեն 5-րդ հրատարակությունից: Հեղինակային կոլեկտիվ՝ Պոսպելով Պ. Ն. (ղեկավար), Վ. Ե. Եվդոքով, Վ. Յա. Զևին, Լ. Ֆ. Իլյիչով, Ֆ. Վ. Կոնստանդինով, Ա. Պ. Կոսուլնիկով, Զ. Ա. Լյովինա, Գ. Դ. Օբիչկին, Պ. Ն. Ֆեդոսեև: «Հայաստան» հրատ., 1973:*

ՄՈՍԿԱԼԵՆԿՈ Ի. Մ.— ԿՎՀ-ն հանուն կուսակցական շարքերի միասնության և անաղարտության: *Մ.,* «Политиздат», *1973:*

*Փաստական առատ նյութի հիման վրա գրքում լուսաբանված է Վ. Ի. Լենինի դերը ԿՎՀ ստեղծման, նրա խնդիրների ու անելիքների սահմանման գործում: Գիրքը նախատեսված է պրոպագանդիստների, կուսակցական ակտիվի, դասախոսների, ուսանողների և, ընդհանրապես, ՍՄԿԿ պատմությամբ հետաքրքրվողների համար:*

Պատմվածքներ կուսակցության մասին: *Առաջին գիրք (ՌՍԴԲԿ II համագումարը): Երկրորդ գիրք (ՍՄԿԿ XXIV համագումարը): Մ.,* «Политиздат», *1973:*

*Գեղարվեստա-փաստագրական ստեղծագործությունների այս երկհատորյակում ամփոփված են սովետական ականավոր գրողների ու հրապարակախոսների պատմվածքները՝ նվիրված ՍՄԿԿ-ին:*

ՍՈԿՈԼՈՎ Ա., ՇԱՏՈՒՆՈՎՍԿԻ Ի.— Հին հասցեներով: *Պատմում են* «Правда»-*ի էջերը: Մ.,* «Политиздат», *1973:*

*Օգտագործելով լրագրի՝ տարբեր տարիների նյութերը՝ ժուռնալիստ հեղինակները պատմում են սովետական իշխանության տարիներին կատարված վիթխարի տեղաշարժերի մասին: Ընթերցող լայն մասսաները գրքում ամփոփված ցայտուն օրինակների միջոցով կծանոթանան մեր հայրենիքի պատմության հիմնական փուլերին:*

ՏՈՒՐՉԵՆԿՈ Վ. Ն.— Գիտա-տեխնիկական հեղափոխությունը և հեղափոխությունը կրթության սիստեմում: *Մ.,* «Политиздат», *1973:*

*Հեղինակն ուսումնասիրել է կրթության սիստեմի հեղափոխության հիմնական հասարակական եղանակները— ուսուցող մեքենաների ներդրում, կրթություն՝ ավելի վաղ հասակից, ուսման և արտադրական աշխատանքի համադրում, «անընդմեջ» կրթություն և այլն:*

*Գիտնականների, մանկավարժների, պրոպագանդիստների, ագիտատորների, կրթության հարցերով զբաղվողների համար նախատեսված այս գրքում օգտագործված է վիճակագրական հարուստ նյութ: Ուսումնասիրությունը նվիրված է սովետական և արտասահմանյան սոցիոլոգիական ու գրական հետազոտությունների վրա:*

ՄԵԴՎԵԴԵՎ ԴՄ. ՆԻԿ.— Հզոր ուժեղները: *«Հայաստան» հրատ., 1973:*

*Այս գրքում զետեղված են հեղինակի հուշերը Հայրենական մեծ պատերազմի, պարտիզանական շարժման մասին:*

ԹՈՒՐՍՈՒՆՈՎ Ա.— Առասպելից գիտություն *(Տիեզերագիտության էվոլյուցիան): «Պատանեկության փիլիսոփայական գրադարան», Մ.,* «Политиздат», *1973:*

*Տաջիկական ՍՍՀ ԳԱ ավագ գիտական աշխատող, փիլիսոփայական գիտությունների թեկնածու հեղինակը պատմում է տիեզերագիտական մտքի զարգացման, հիմնական նվաճումների մասին:*

ՊՈՂՈՍՅԱՆ Ա. Մ.— Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմը: *(Մասն 3-րդ): Եր., Խ. Աբովյանի անվ. մանկ. ինստ. հրատ., 1973:*

ՏՈԿԱՐՍԿԻ Ն. Մ.— Հայկական ճարտարապետության պատմության էջերից: *«Հայաստան» հրատ., 1973:*

*Հայ ճարտարապետության խոր գիտակն այստեղ պատմում է Անիի (1911) ճարտարապետական կոթողների մասին:*

Հայ ազգագրություն և բանահյուսություն: *Նյութեր և ուսումնասիրություններ: Ե., ԳԱ հրատ., 1973:*

*Այս 4-րդ ժողովածուում արտացոլված են՝ Վ. Գ. Սվազլյանի, Սարգիս Հայկունու կյանքն ու գիտական գործունեությունը, ինչպես և Ա. Ա. Սարյան-Հարությունյանի՝ հայ քաղաքային ժողովրդական երգարվեստին նվիրված աշխատությունը:*

ՎԱՐԴԱՆՅԱՆ Հ. Գ.— Հայ ժողովրդի ազգային վերածնունդը: *Օգնություն դասախոսին: Ե., «Գիտելիք» ընկ. հրատ., 1973:*

Գինը՝ 25 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԲԵՌՆԱԿԻՐՆԵՐ ՉԵՆ ՊԱՀԱՆՋՎԻ

*ՍՍՀՄ գեոլոգիայի մինիստրության հատուկ կոնստրուկտորական բյուրոն և Ակտյուբինսկի գեոլոգա-նորոգման գործարանը պատրաստել են ավտոմեքենա-ինքնաբեռնիչ AC—20: Այն նախատեսված է հորատման սարքերի ծանր, անբաժանելի հանգույցների, ինչպես նաև 20 տոննանոց սարքավորումների կամ նյութի ինքնաբեռնման, փոխադրման և ինքնաթափման համար:*

*Նորույթը ավտոգնացք է, կազմված քարշիչից, կիսակցիչից և բեռնիչ-բեռնաթափիչ հարմարանքից: Դրանք կփոխարինեն ավտոմոբիլային և տրակտորային գնացքներին, որոնց թափման ու բեռնաթափման համար օգտագործվում են դեֆիցիտային ու թանկարժեք կռունկներ:*

*Մեկ ավտոմեքենա-ինքնաբեռնիչի կիրառման տարեկան տնտեսական արդյունավետությունը 8500 ռուբլի է:*

### ԱՆՏԻԲԻՈՏԻԿՆԵՐԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Վերջերս անասունների հիվանդությունները կանխելու նպատակով սկսել են լայնորեն կիրառել անտիբիոտիկներ: Այնպիսի դեղամիջոցներ, ինչպիսիք են՝ տուրեօմիցինը, սինտոմիցինը և գրեզինը գործնականում վերացրել են խոճկորների, հորթերի, ընտանի թռչունների մահացությունը՝ ստամոքսա-աղիքային հիվանդություններից: Անտիբիոտիկները կարող են կիրառվել նաև որպես անասունների աճը խթանող միջոց:*

*Բացահայտվել է անտիբիոտիկների մի նոր հատկություն ևս: Պարզվել է դրանց արդյունավետությունը բույսերի հիվանդությունների դեմ մղվող պայքարում: Ստացվել են պտղատու տնկիների, ծառատեսակների ու թփուտների, բանջարեղենի, հացահատիկային, տեխնիկական և այլ կուլտուրաների զանազան հիվանդությունները բուժող և պրոֆիլակտիկ դեղամիջոցներ: Անտիբիոտիկները օգտագործվում են նաև սննդամթերքների մեջ միկրոբների զարգացումը կանխելու համար: Դրանք ո՛չ միայն կասեցնում, այլև մսի և ձկան, բանջարեղենի և կաթնամթերքների մեջ ոչնչացնում են հիվանդածին բակտերիաների առանձին տեսակներ:*

### ՔԻՄԻԱԿԱՆ ԼԱՄՊԵՐ

*Շվեյցարիայում, Ամերիկայում և Անգլիայում փորձում են ստեղծել ինքնատիպ, մի անգամ օգտագործվող լամպեր: Դրանք թեթև և էժան են, անվտանգ ու հարմար, կարող են օգտագործել նորոգողները, տուրիստները (հատկապես ալպինիստները), վարորդները գիշերային անակնկալների ժամանակ: Նոր լամպով կարելի է առանց վախենալու զննել նույնիսկ բենզինի բաքը: Այն հիմնված է սառը ճառագայթման վրա, որի տևողությունը մոտ 3 ժամ է: Դա լրիվ բավական է ճանապարհին ծակված ավտոդողը հանելու և փոխելու համար,*

### ՔՆԱԲԵՐ ՇԱՊԻԿ

*Ճապոնիայում ստեղծվել է մի նոր միջոց անքնության դեմ: Դա գիշերային շապիկ է, ներծծված հատուկ քիմիական նյութով, որի հոտն ազդում է գլխուղեղի քնաբեր կենտրոնների վրա և առաջացնում քուն: Այդ «քնաբերների» առաջին պարտիան արդեն երևացել է Ճապոնիայի մայրաքաղաքի խանութներում: Այդ արտասովոր հագուստ ստեղծողները հավաստիացնում են, որ դա նախատեսված է երկար ժամանակվա համար, լվանալիս չի կորցնում «քնաբեր» հատկությունները:*

### ԴՅՈՒՐԱԿԻՐ ԷԼԵԿՏՐԱԳԵՆԵՐԱՏՈՐ

*Ամերիկյան մի ֆիրմա մշակել է 17,7 կիլոգրամանոց դյուրակիր մի էլեկտրագեներատոր, որը նախատեսված է մարդատար ու բեռնատար ավտոմեքենաների, տրակտորների, ինչպես և ինքնաթիռների ակումուլյատորների լիցքավորման համար: Այն ապահովվում է կապարե կամ նիկելա-կադմիական ակումուլյատորների լիցքավորման 6—30 վոլտ նոմինալ աշխատանքային լարումով: Էլեկտրագեներատորները բանում են բենզինի շարժիչի միջոցով: Լիցքավորումը տևում է 10 րոպե:*